268

# ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

## ՏԵՍԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾՆԱԿԱՆ

(ՆՈՐ ԴՐՈՒԹԻՒՆ)

ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

## ՈՃ

ՀԱՆԴԵՐՁ ԲԱՌԱԳԻՏԱԿԱՆ ԵՒ ՄՏԱՄԱՐԶԱԿԱՆ
ՎԱՐԺՈՒԹԵԱՄԲՔ

ՀԱՏՈՐ Ա.

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՒ ՄԱՍՆԱՒՈՐ ՅԱՏԿՈՒԹԻՒՆՔ ՈՃՈՅ

Յանձնարարեալ յՈւսումն. Խորհրդոյ Ազգ. Կեդր. Վարչութեան

ՅՕՐԻՆԵԱՑ
ՄԻՀՐԱՆ Պ. ԱՍՔԱՆԱԶԵԱՆ
Ուսուցիչ
ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵԶՈՒԻ ԵՒ ԳՐԱԳԻՏՈՒԹԵԱՆ

« Զգոյշ լեր հաւատալու զի իմաստն է ամէն ինչ եւ բառը սակաւ ինչ։ Ես կ'ըսեմ թէ, աւելի ոճով է թերեւս քան իմաստով, զի մատեանք կ'ապրին, թէ յոռի գրուած մատեան մի երկ մի է որոյ ստոյգ է մահն։»

ՏԻԻՐԱՆԼՈՒ

Կ. ՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՊԱՂՏԱՍԼԵԱՆ
(ԱՐԱՄԵԱՆ)

1884

ԱՌ

## ՏԷՐ ՌԷԹԷՈՍ Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

ԲԱԶՄԵՐԱԽՏ ՈՒՍՈՒՑԻՉ ԻՒՐ

# ՁՕՆ

ԵՐԱԽՏԱԳԷՏ ՍՐՏԻ

ԶՈՐ

ՄԱՏՈՒՑԱՆԷ ՍԱՆ ԻՒՐ

Մ. Գ. Ա.

Տէր ,

Երանութիւն մեծ եղաւ ինձ Ձեր վաստակոց լինել պտուղ նախընծայ. փառք մեծ պիտի լինի նաեւ ինձ՝ թէ թոյլ տայք զի Ձեզ ձօնեմ՝ ուսումնաջան իմ վաստակոց սոյն այս պտուղ նախընծայ :

Ձեր աջը կը համբուրէ

1884 Սեպտեմբեր 20
Ի Գատըգիւղ

Ձեր երախտագէտ ծառան
ՄԻՀՐԱՆ Գ. ԱՍՖԱՆԱԶԵԱՆ

Առ

Մեծապատիւ Տէր Ռեթէոս Յ. Պէրպէրեան

24 *Սեպտեմբեր* 1884, ԻՒՍԿԻՒՏԱՐ.

*Ազնիւ Սաֆանազեան,*

Առաջին երկիդ վերջին թերթն այն ինչ դուրս ելած Արամեան մամուլէն, կը փութաս ինձ մատուցանել եւ ինձ ձօնել նախկին պտուղն ուսումնասէր վաստակոցդ :

Ձօնդ ուրախութիւն ինձ եւ հպարտութիւն միանգամայն կ'առթէ :

Ուսուցչական ասպարիզին մէջ առաջին քայլերս կ'առնուի եւ դու ինձ աշակերտեցար Գատըգիւղի Համազասպեան թաղային վարժարանին մէջ. աղքատիկ բայց ուշիմ եւ աշխատասէր ուսանող, կը խոստանայիր արդիւնալից ապագայ, եւ այն ատենէն՝ յառաջադէմ փայլուն աշակերտս՝ դաստիարակիդ սիրտն բերկրութեամբ կը լնուիր ու պարծանք մ'էիր իրեն: Այդ բերկրութիւնն ու այդ պարծանք աւելցան տակաւ, երբ՝ յետ ուսանողական կենաց՝ թեւակոխեցիր ուսուցչական ասպարիզին մէջ, եւ ընդհուպ՝ իբրեւ հայկական լեզուի ու գրագիտութեան քաջահմուտ եւ ժիր ուսուցիչ՝ սակաւուց սահմանեալ պատուաւոր տեղ մը գրաւեցիր եւ ազգային վարժարանաց ցանկալի կացուցիր զքեզ :

Իսկ այսօր որքան առաւել է խնդութիւնս եւ որչափ քաղցր գոհունակութեամբ կը զեղու սիրտս երբ հրատարակութեան ասպարէզը կ'իջնես՝ ձեռքիդ մէջ ամէնօգտակար մատեան մը, արգասիք լուրջ եւ յամառ աշխատութեան, ապացոյց հայագիտութեանդ ու գրական ազնիւ ճաշակիդ, եւ կը նուիրես զայն վարժապետիդ :

Պատուական նուէր, անգնահատելի, ուսուցչի մը համար իր աշակերտին գրական աշխատութեան նուէրն. այդ նուէր ի՜նչ վայելումներ կու տայ դաստիարակին. ի՜նչ մրցանակ է նորա համար, ի՜նչ վարձք. որքան զգուելի, որքան սիրելի է նորա սրտին : Ո՛հ, աշխարհի վրայ եթէ երջանկութիւն եւ փառք ունայն բառեր չեն, եթէ կան առիթներ

ուր մարդկային սրտին ներելի է ճաշակել այդ երկու հեշտութիւններն, ի նոցանէ մին ալ անտարակոյս այս պարագային է, եւ շնորհակալ եմ քեզ , Ասքանազ , որ քեզմով կը ներկայանայ ինձ եւ այն :

Սոյն ներքին երանաւէտ զգացումն՝ զոր կը պատճառէ ինձ ձօնդ՝ չպիտի լինէր, սակայն, ա՛յնքան խորին ու բուռն եթէ գործդ ինքնին չլինէր ընտիր ու կարող պատիւ բերելու ո՛ եւ է գրագիտի , եթէ թանկագին ընծայ մը չլինէր այն Հայ ուսուցչութեան , թանկագին գործի մը հայկազն մանկտւոյն գրական ճաշակն յղկելու քաջայարմար, պատուական դասագիրք մ՚որ՝ կարելի է վստահութեամբ ըսել՝ իւր բազմադիմի առաւելութիւններովն ու նորութիւններով կը գերազանցէ իւր տեսակին մէջ ամէն հին եւ նոր հրատարակութիւններն եւ որ պիտի ընձեռէ մեծ դիւրութիւն գրելու արուեստին մեր վարժարանաց մէջ մշակման ։

Արդարեւ փափաքելի էր որ ամէն դասագիրք յօրինող իւր աշխատութեան մէջ ա՛յնքան խնամք եւ հոգածութիւն, ա՛յնքան փորձ հմտութիւն եւ ա՛յնքան գործնական ոգի դնէր որչափ դու դրեր ես քու հատորներուդ մէջ ։

Ուստի կը շնորհաւորեմ զքեզ սրտագին , ազնիւ Ասքանազեան , առաջին երկիդ համար ուր փայլեցուցած ես ա՛յնքան տաղանդ եւ ընտիր յատկութիւններ , եւ կը մաղթեմ նորանոր յաջողութիւններ այն ճամբուն մէջ ուր մտար ա՛յսքան փառաւոր կերպով ։

Կը համբուրեմ ճակատդ որ սիրեց միշտ կքիլ՝ խոհուն՝ մատեանց վրայ։

Ռ. Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ

ՊԱՏՐԻԱՐՔԱՐԱՆ ՀԱՅՈՑ

ԴԻՒԱՆ

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՑ

ԱԶԳ. ԿԵԴՐ. ՎԱՐԺՈՒԹԵԱՆ

Թիւ 266

Կ. պոլիս 13/25 Սեպտ. 1884

*Ազգային Ուսումնական խորհուրդն, ի քննին առնլով Հայ լեզուի եւ գրագիտութեան ուսուցիչ Մեծապատիւ Միհրան էֆէնտի Ասքանազեանի պատրաստած «Տեսական եւ գործնական գրագիտութեան» դասագիրքն, գոհութեամբ կը յայտարարէ որ մեծ խնամով եւ հմտութեամբ յօրինուած գործ մ'է, որ պատիւ կը բերէ հեղինակին ու կրնայ նկատուիլ իրաւամբ իբրեւ գնահատելի ծառայութիւն մը դպրութեանց ուսման. հետեւապէս շնորհաւորելով զԱսքանազեան էֆէնտին իւր այս կարեւոր երկասիրութեան համար՝ կը յանձնարարէ ջերմութեամբ նորա գործածութիւնն ազգային վարժարանաց, դասատուաց ու Հոգաբարձութեանց։*

Ազգային Կեդր. Վարժութեան Ուսումնական Խորհրդոյ

| Ատենադպիր | Ատենապետ |
| --- | --- |
| Ռ. Յ. ՊԷՐՊԷՐԵԱՆ | Մ. Ս. ՄԷՋՊՈՒՐԵԱՆ |

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ամէն գործ ունի իւր գործիչն՝ որոյ արդիւնքն է այն գործն, եւ, նաեւ, իւր գործածութեան եղանակն յորմէ կախեալ է նոյն գործոյն օգտակարութիւնն. ուստի, ընդաբոյս բերմամբ, մարդ, ի տեսիլ գործոյ իրիք, հետաքնին կը լինի եւ կը հարցունէ «Զի՞նչ այդ ԳՈՐԾ, ո՞ դորա ԳՈՐԾԻՉ, եւ զի՞նչ դորին ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ»:

Ընթերցող բարեկամն իրաւունք ունի, ներկայ դասագրոյս առթիւ, սպասել յինէն պատասխաններն սոյն երեք հարցմանց։ Փութամ կատարել իմ պարտաւորութիւնն, սկիզբն առնլով նախ յերկրորդ հարցմանէն:

## ԳՈՐԾԻՉՆ

1872։ Դեռ ուսանող էի:

Ի Գատըգիւղ, ուր աչերս բացուեցան ի լոյս, կ'աշակերտէի Համազասպեան* թաղային վարժարանին մէջ, ուր միտքս ապա բացուեցաւ ի լոյս: Աղքատիկ էր վարժարանն, զի աղքատիկ էր յայնժամ թաղն: Ուսմանց համեստ ծրագիր մի մատնանիշ կ'ընէր Համազասպեան սանուց զայն ուղին ուսումնական զոր պարտ էր նոցա երթալ: Սոյն ծրագիրն աղքատ էր եւ ճոխ միանգամայն. աղքատ էր, զի նման ուսմանց ծրագրոց՝ զորս այժմու բազմաթիւ թաղային աղքատ վարժարանք ունին, չէր պարունակեր գիտութեանց եւ լեզուաց երկայնածիգ ցանկ *միայն*, եւ ճոխ, զի մայրենի լեզուն եւ գրականութիւնն իւրեանց համայն գանձերովն կը պարզէր ուսանողին առջեւ:

Սահակ, Մեսրովպ եւ Մխիթար, սրբազան երրորդութիւն Հայկական մատենագրութեան, հոլաթեւ կեցած

(*) Այսօր Արամեան կը կոչուի սոյն վարժարանն:

էին այն փոքրիկ եւ անձուկ վարժարանին վերայ որ կը հանգչէր յայնժամ Ս. Թագաւոր եկեղեցւոյն երկնահայեաց քառաթեւ խաչին ստուերին տակ, եւ որ այսօր, վերը, բարձրը, լայնանիստ, հոյաշէն, հոյակառոյց, վեհափառ ճակատ կը պարզէ երկնից կապուտին առջեւ: Մայրենի լեզուի հրալեզու ուսուցիչն, որոյ փառաւոր անունը կը փառազօծէ դասագրոյս ճակատն, Համազասպեան սանուց առջեւ կը քրքրէր Հայկական լեզուին բովն եւ նորա ոսկեծոր երակներն ի տեսիլ կ'ածէր նոցա աչաց: Իւր ձայնն գոգցես արձագանգն էր ձայնից մեծին Սահակայ եւ մեծին Մեսրոպայ որ պատռելով Հայ մատենագրութեան արծաթի, պղնձի, երկաթի եւ խեցեղէն դարերն եւ Հանդրին ափանց վերայ վայրիկ մի զկայ առնլով կը խառնուէր Մեծին Մխիթարայ ձայնին հետ, եւ կուգար կը գոռար նոյն վարժարանին նեղ դասարանաց մէջ:

Հայկաբանութեան դասն բոլոր վերին կարգաց ուսանողաց նախասիրական դասն էր, որպէս պատշաճ էր լինել: Առ յայս առնել թէ քանիօն հրապոյր եւ ազդական զօրութիւն ունեցած էր այս դասն ուսանողաց վերայ եւ որչափ գերած նոցա սիրտն, աւելորդ չեմ համարիր ի մէջ բերել աստ բարձրագոյն կարգի ուսանող պատանւոյ մի եռանդն, մայրենի լեզուի համար, իւր դպրոցական վերջին ամաց մէջ:

Կիւրակէ է. երբ տեսնուէր նա յեկեղեցւոջ, մի մատենիկ ունէր ի ձեռին զոր կը կարդար այնքան մտամփոփ որքան չկարդար բարեպաշտ ոք իւր աղօթամատեանն. այս մատենիկն Եզնիկ մի էր, գոհարիկ Հայ մատենագրութեան: Պատանին թէեւ Կողբացւոյն նման չէր հաւատար արեւուն շարժական եւ երկրիս անշարժական լինելուն բայց կը հաւատար թէ Հայ լեզուին զարգացման համար Եզնկայ ընթերցման կայ տակաւին պէտք,

եւ ոչ թէ քմազարդ քմակարկատ նորոգութեան :

Մի զբօսավայր է․ ամէն ոք կ'զբօսնու․ հոն է եւ այդ պատանին․ կ'զբօսնու… ընթեռնլով․ Ի՞նչ․ — *Նկարագիր ուսմանց*․ երբ Վիեննայի Մխիթարեան վանուց մամուլն կը պատրաստուէր այս չքնաղ մատեանն ի լոյս ընծայել, անշուշտ հայ մատենագրութիւնն ի մեծի երկունս էր «*Երկնէր երկին եւ երկիր*»։ *Նկարագիր ուսմանցն*, երկ իմ պատուական հոգեւոր հաւուն, մեծին Ա․ Գարագաշեանի, մինչ նա կը տքնէր դեռ Վիեննայի Մխիթարեան վանուց գմբէթին տակ, մի չնաշխարհիկ եւ խորհրդաւոր մատեան է․ չնաշխարհիկ․ զի ոսկեղէն դարու լեզուն իւր իսկատիպ գեղովն կը կենդանանայ անդրէն այս հրաշարուեստ մատենին անմահ էջերուն մէջ․ եւ խորհրդաւոր, զի հոյակապ հեղինակն զոգցես մի գործնական պատասխան տալ ուզած է նոցա՝ որք կ'ըսեն թէ հինգերորդ դարու լեզուն անթեքելի եւ անկքելի է նոր գաղափարաց արտայայտման հարկին առջեւ։ Թէ հնար լինէր Եզնկայ յառնել իւր դարաւոր աճիւնէն եւ յօրինել մի *Նկարագիր ուսմանց*, ոչ ինչ լաւագոյն քան զԳարագաշեան պիտի յօրինէր։ Այնքա՛ն լի է ոսկեդարով այս մատեան որ միութեան գիծ մի մարթի համարուիլ ընդ հինգերորդ դար եւ ընդ իննեւտասներորդ դար։

Գատըգիւղի հարաւային ծովափին վերայ, Մօտայի սարաւանդին կատարը, մի տնակ կայ զետեղուած․ անդր կը վերադառնայ այդ պատանին երբ կը հնչէ երեկոյեան արձակուրդի ժամուն զանգակն։ Գիշեր է․ ձմեռն իւր բուքերով եւ ձիւներով կը պաշարէ զայդ տնակն․ ամէն ոք ի քուն կան անդ․ ինքն՝ ի լոյս առկայծեալ պատրուգի կաւակերտ մի կանթեղի ուր աղքատութեան ժլատ ձեռն հազիւ մի քանի կաթիլ իւղոյ դողդողալով է լեցուցած, կը լափէ անյագ Մխիթարեան դիւցազն հայա-

գիտին դիւցազնական վէպին դիւցազնաշունչ տողերն : Ո՛հ, երջանիկ կեանք, ուսանողի՛ կեանք : Կ'անցնին օրեր, կը սահին շաբաթներ, եւ կը բոլորին ամիսներ :

Մրցանակաբաշխութեան օր մի է : Յետ հանդիսին ծնողք, թաղական խորհուրդ եւ Հոգաբարձութիւն դպրոցին շրջապատած են մի խարտեաշ ուսուցիչ . վարժարանին Հայկաբանն է այն . շնորհակալութեան եւ երախտագիտութեան բանք, շնորհաւորութիւնք, ժպիտք եւ խինդք կը մրմնջէին, կը սլուրլային, կը թեւածէին, կը շողային ուսուցչին շուրջն որ՝ արտասուախառն խնդութեամբ, զմայլանաց Եդեմին մէջ նոյն պահուն, կը մոռանայր ամէն խոնջութիւն եւ իւր վաստակաբեկ հոգին կը կազդուրէր եւ կը հրճուէր խնդապատար : Անդ, սակաւ ինչ հեռի, ի զնին այս հոգեզուարճ տեսարանին, ուսուցչին մի սանը կը յուզուէր : Բան մի կը լինէր յինքեան, այլ ինքն ալ չէր գիտեր թէ ինչ կը լինէր . բռնկած էր, այլ չգիտէր թէ ինչ էր որ կ'այրէր, իւր բոլոր մարմնովն եւ հոգւովն կը ցնցուէր . եկած հասած էր այն հուսկ վերջին վայրկեանն յորում պատանւոյն ճակատագիրը պիտի խօսէր, իւր կոչումն ի յայտ պիտի գայր այլ եւս . վայրկեա՛ն խորհրդաւոր որ տարիներու կը հրամայէ, եւ որ պիտի հրամայէր դարերու իսկ եթէ հնար լինէր մարդոյ ապրիլ դարերով այս աշխարհի վերայ . վայրկեա՛ն, որ մարդկային էակին առջեւ կը բանայ մեծութեան կամ գձձութեան դռներն . վայրկեա՛ն, որ կը պարունակէ ոճիր կամ առաքինութիւն, ոչնչութիւն կամ անմահութիւն, հրէշ կամ հրեշտակ: Մի այսպիսի վայրկենի մէջ կը տագնապէր սանն, կը տանջուէր, խօսք մի՝ բառ մի կը թրթռար իւր շրթանց վերայ, ըսէ՞, չըսէ՞, կը տատամսի, կը թոթովի, վերջապէս կը գոչէ « *Ես եւս ուսուցիչ եմ* » «Anch'io son pittore!» :

Եւ ... 72 ի ուսանողն 74 ին ուսուցիչ եղաւ առանց

դադրելու սակայն միշտ ուսանող լինելէ. ուսանող՝ ցայժմ եւ այսօր իսկ իր մատենից առջեւ, ուսուցիչ՝ իր աշակերտաց առջեւ. զի այն օրն յորում ուսուցիչ մի կը դադրի ուսանող լինելէ, կը դադրի նաեւ ուսուցիչ լինելէ :

## ԳՈՐԾ

Անբացատրելի եռանդեամբ ընդգրկեցի ուսուցչութեան արուեստը. նոյն եռանդն դեռ կը վառէ զիս. կը սիրեմ իմ արուեստն որպէս կը սիրեմ զվարդն, որոյ փուշերն թէպէտ կը խայթեն մերթ իմ մատներն : Կ'զգամ զի պաշտօնն զոր կը վարեմ, բարձրագոյնն եւ վսեմագոյնն է ի պաշտօնս, պիտի ըսէի նաեւ աստուածայինն, զի Աստուած իսկ մի օր եղաւ ուսուցիչ, Ադամ՝ աշակերտ եւ Եդեմ՝ վարժարան. կ'զգամ զի գագաթն ուր կը գտնուիմ, սրբազան է եւ երկնաքերձ. սրբազան իբրեւ զՔորէբ եւ երկնաքերձ իբրեւ զՏաւալակիրի. եւ թէ ոք շարժիլ ուզէ այս գագաթան վերայ, այլ եւս իջնելու համար է եւ ոչ թէ բարձրանալու : Ուսուցիչը մի գործ ունի, յառաջդիմութիւնն է այն. մի գործի ունի, մատեանն է այն. մի գործարան ունի, դպրոցն է այն : Մարդկութիւնն առանց այդ գործոյն, առանց այդ գործւոյն, առանց այդ գործարանին չկարէ ապրիլ : Թագաւորք կ'իշխեն մարդկային ազգին վերայ, այլ ուսուցիչը կ'իշխէ մարդկային ազգին ճակատագրին վերայ :

Թէ ո՛վ է ուսուցիչն, հասու եղանք : Բաւ է : Անցնիմք :

Չէ ինձ սիրելի այն յառաջդիմութիւնն, զոր կ'ընէ ոք արշաւակի, հեւ ի հեւ եւ մի ճանապարհէ զոր արդէն գծած է այլ ոք. մի յառաջդիմութիւն է այն շոգեկառքի որ կը սուրայ, կը վարգէ, կը թռչի մաքուր եւ

հարթ, կոկ եւ ողորկ պատրաստուած ուղիէ: Լուրջ, հանդարտ եւ խոհուն աջ ու ձախ ակնարկել, բրիչ ի ձեռին մի նոր ուղի հատանել, փուշեր եւ տատասկներ տակակոտր արմատախիլ խլել, մացառներ կտրատել, ապառաժներ խորտակել, խարակներ փշրել, սարեր մագլցել, ոտներն արիւնել, ահա յառաջադիմութիւնը զոր կը սիրեմ: Մի նոր ուղի բանալ յառաջդիմութեան դաշտին մէջ զոր արդէն բիւրաւոր ուղիք ակօսաբեկ կ'ընեն. մի գործի ձուլել, նորակերտ, նորանշան, կոփել, կռել զայն եւ յանձնել յառաջդիմութեան որ ի տես նորին գոչէ *«արդարեւ կը պակասէր այս իմ ձեռաց մէջ»*:

Այս նորասիրութեան կամ նորակերտութեան ոգին զոր ունեցայ յորէ անտի յորում մտայ յասպարէզ ուսուցչութեան, տիրած է բոլոր այն դասական երկոցս մէջ զորս տասնամեայ ժամանակ անդուլ զբաղած եմ պատրաստելու: Ժամանելով յամբոկ մի քանի երկոցս՝ կը յանդըգնիմ եւ ես, զի բաւական յանդգնութիւն մի է դեռ գիրք հրատարակել մեր ազգին մէջ, ճռնչեցունել հայ մամուլն եւ ընծայել զայնս ի լոյս: Կ'ընկսիմ նախ տալ ի լոյս ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ ՏԵՍԱԿԱՆ եւ ԳՈՐԾՆԱԿԱՆ երկս: Վեց տարի առաջ երբ ձեռն արկի յայս երկ երկու ինչ գլխաւորապէս առարկայ եղած էին մտածմանցս. *Լեզու եւ Դրութիւն* (Méthode):

Երեսուն եւ քերեւս աւելի ամաց հետէ Հայ լեզուին խնդիրը ազգային բանասիրաց եւ գրագիտաց ուշը գրաւած է, եւ, իբրեւ Ոգի մի կագազարթոյց եւ մարտածնոյց, վիճման եւ պայքարի հուրը միշտ վառ կը պահէ նոցա մէջ: Յարդ այնչափ շատ խօսուեցաւ եւ գրուեցաւ գրաբար եւ աշխարհաբար լեզուաց նախընտրութեան վերայ լրագրաց էջերու, մատեաններու, խօսարաններու, լսարաններու, վարժարաններու, ընտանեկան ակումբներու մէջ իսկ՝ զի պահ մի երկիւղ կը

զգամ թէ մի զուցէ երբ խօսիլ ուզեմ, խօսիմ ինչ որ արդէն խօսուած ու լսուած է: Ցառաջաբանի մի անձուկ սահմանը չներեր արդէն ինձ երկար խօսիլ սոյն խնդրոյն վերայ: Թէ այլեւս Հայ մատենագրութիւնը Աշխարհաբար լեզուի առանցքին վերայ կը դառնայ, այն՝ այնքան յայտ է որքան ուշադիր ակնարկ մի նետէ ոք այն աշխարհաբար անհուն երկասիրութեանց վերայ որք վերջին ժամանակաց մէջ սկսած են ողողել հայ մատենագրութեան դաշտը, եւ այժմու աշխարհաբարն ի կշիռ ածէ ընդ աշխարհաբարին որ յիսուն տարի առաջ կը գրուէր: Այս երեւոյթն ազդաւէր եւ յառաջդիմաւէր գրագիտին համար, որքան եւ սիրող լինի ինքն գրաբար լեզուին հիանալի գեղեցկութեանց եւ նրբութեանց, ուրախարար բան մի պարտի ունենալ. զի նշան է թէ գրականութիւնը իջած է ի ծոց անոր ժողովրդեան ուր առաւել քան այլուր մարթ է նմա զօրանալ, ուռճանալ եւ առուգանալ կենսախայտ. զի՝ պիտի գայ մի բաղձալի օր յորում հայ մանուկն որորանին մէջ ուսած լեզուն կատարելագործելու համար չպիտի ստիպուի գրաբար ուսանել, զի՝ պիտի հասնի այն երանաւէտ օրն յորում հայ գործաւորն այնքան մաքուր պիտի խօսի որքան մաքուր պիտի գրէ հայ մատենագիրն, այն օրն՝ յորում ամէն վիճակի հայեր, միաւորքն եւ համալեզու, պիտի հնչեցունեն միահամուռ մի բարբառ ստուգապէս ժողովրդական որ գրաբարին բոլոր նրբութեամբն, եւ կորովութեամբն ու աշխարհաբարին համայն նոր գաղափարներովն ու ճապուկ ձեւերովն ծանրաբեռնեալ, պիտի աւետէ մեզ հայ մատենագրութեան ուրիշ նոր ու պանծալի ոսկեդար մի. ոսկեդար մի՝ որ ինչպէս իւր լեզուաւ նոյնպէս իւր մատենագրութեան իմաստասիրական, բանաստեղծական եւ գիտական լիապատար առատութեամբն ու նրբութեամբն ստուերածս ածէ հինգերորդ



ոսկեղէն դարու վերայ : Աշխարհաբար լեզուին այն զարգացումը՝ զոր կը տեսնեմք այսօր , չէ սակայն բոլորովին արդիւնք գաղափարաց յառաջդիմութեան , այլ մանաւանդ գրաբար լեզուին յորմէ անընդհատ , իբր անհատահոս աղբերէ կը հոսին , աշխարհաբար լեզուի մէջ , հայկական կոռովի ձեւեր , ոճեր , բացատրութիւններ : Զայս չկարէ ուրանալ ամենէն մոլեռանդ աշխարհաբարեանն իսկ : Զի եթէ աշխարհաբար մատենագրութիւնն կը զարգացունէ օր քան զօր աշխարհիկ լեզուն , ո՛ր աշխարհաբարեան մատենագիր ամէն օր , ամէն ժամ , ամէն վայրկեան չմխեր իւր գրիչն գրաբարով . եւ ո՛ր հոյակապ աշխարհաբարեան , առանց գրաբար լեզուի օգնութեան , կրցած է հրապուրիչ , կոռովի ու վայելուչ գործել իւր լեզուն : Ոմանք կարծեցին հասած լինել այն ժամն ուր աշխարհաբարն կարող է ուրոյն լեզու մի համարուիլ եւ առանձինն գնալ , բայց իւրեանց փոփոխութիւններն զորս մուծանել կ'ուզէին աշխարհաբարին մէջ , ածելու համար զայն ի յարդ , ի զարդ եւ ի կերպարանս , կ'ապացուցանէին թէ չէ հասած այն ժամն : Լեզուն , պտղոյ նման , ժամանակաւ եւ մշակութեամբ կը հասուննայ . ժամանակը կանխել , եւ լեզուն յանկարծ կասեցունել իւր ընթացքէն ու բռնադատել զայն կամածին եւ քմածին քերականութեան մի հպատակելու , կը նմանի արուեստական ջերմութեամբ պտուղ հասունցունելու . պտուղն արդարեւ կը հասուննայ , բայց ո՛ւր է այն համը , ո՛ւր է այն հոտը , ո՛ւր է այն գոյնը զորս պիտի ունենար երբ տակաւ առ տակաւ եփէր արեւուն կենդանարար ճառագայթներուն տակ : Ոմանք եւս ուզեցին ջնջել աշխարհաբարի գոյութիւնն եւ ժողովրդեան լեզուն լոկ գրաբարն է ըսին . սոքա եւս ընդհուպ պարտաւորեցան գիտնալ թէ բնութեան օրինաց դէմ կ'ստամբակին եւ հոսանքին դէմ կը թիավարեն : Զբաժնել դեռ

իրարմէ գրաբարն եւ աշխարհաբարն, աւանդել զերկոսեանն մեր ուսանողաց ; Նախ զաշխարհաբարն եւ յետոյ զգրաբարն, այս է բանաւորն եւ օգտակար արդի մատենագրութեան : Թէ չկարեմք այլեւս զաշխարհաբարն համարել մի մանկիկ կաթնկեր կախեալ ի ծուծ ոտեանց գրաբարի, քաջ քաջ տակաւին կարեմք համարել զայն պատանի անչափահաս որոյ դեռ խնամակալ եւ սնուցիչ է գրաբարն : Երբ զայ ժամանակն՝ յորում պատանին կարող լինի ինքնին ապրելու, խնամակալն արդէն պիտի հրաժարի իւր պաշտօնէն . Էր անապարել, եւ տարաժամ բաժանմամբ վնաս մանաւանդ քան օգուտ հասուցանել պատանւոյն : Սպասել զի ժամանակն եւս տայ իւր վճիռն . ահա, կը կրկնեմք եւ աստ, բանաւորն եւ օգտակարն :

Եւ սակայն փութով ազատելու համար լեզուի այս երկճիւղ ուղղութենէն, ազգային մատենագրաց քով չը տեսնուիր միակամ եւ համախորհուրդ ճիգ մի . իւրաքանչիւրն, ինչպէս իւր ոճն, նոյնպէս կ'ուզէ ունենալ իւր լեզուն ու քերականութիւնը * : Յոր կոյս դիմէ ժողովուրդն : Թէպէտեւ ժողովուրդն է միշտ լեզուի մի կառքը ձգողն, այլ գրագէտք եւ մատենագիրք են այդ կառքին կառավարներն . ո՞չ ապաքէն կառքն այնքան ուղիղ եւ արագ կ'ընթանայ եւ այնքան փութով կը լինի ժամանն ի վայրն դէմ եղեալ, որքան կառավարք միաձայն կամօք եւ համաձայնութեամբ վարեն զայն :

(*) Ցաւալի է տեսնել զի անիշխանութիւնը դեռ կ'իշխէ մեր արդի մատենագրութեան մէջ, Հայ լեզուին ընդաբոյս նկարագրին ալ կ'ուզեն ձեռնամերձ լինել, եւ ոմանք՝ որոց ականջք կարի փափկալուր լինել կը թուին, կ'ուզեն դաշնակութեան աստուածոյհւոյն զոհել Խ, Ղ, Ց եւ այլ մի քանի տառեր որք շատ փափկահնչիւն չեն թուիր : Պանդո՞յրք. պարտաւոր չէ՞ն միթէ գիտնալ թէ Հայկական նկարագրէն է որ հայախօս շրթունք երբ բացուին, զօռ եւ խռոխտ շեշտեր պէտք է որ հնչեն եւ ոչ թէ լեզուածայր փստածաղիկ ծեքեւեքեն :

Ուստի, առանց քմածին նորութիւն մի ընելու, դասագրոյս լեզուն, ըստ կարի իմում, աշխատած եմ կանոնաւոր եւ մաքուր պահել, միշտ նկրտելով ի գրաբարն, առանց սակայն աշխարհաբար լինելէ դադրելու: Աւելի գործնական քան տեսական գործ մի շինելու ըղձակերտ լինելով՝ աւելի աշխարհաբար օրինակներ յառաջ բերած եմ քան գրաբար, եւ այսու, մասամբ իւիք, ցուցած նաեւ, թէ աշխարհաբար մատենագրութիւնն ալ տակաւ առ տակաւ դասական լեզուի մի կարգն անցնելու կարող կը լինի, բաւական է որ ներհուն, ճարտար եւ ճաշակաւոր գրիչներ արօրադիր առնեն եւ արգաւանդ գործեն զայն:

Իսկ գործոյս դրութիւնը ոչ այնքան հետեւողութիւն որքան փորձառութիւն կ'ընծայէ, ինչպէս որ պիտի տեսնէ ով որ երբէք մանրախուզիւ յակն արկանէ թէ սոյն Ոճոյ մասն եւ թէ այն մասերն որք պիտի հետեւին սմա: Սակայն ձեռնտու օգնական եղած են ինձ գաղիական ծովածաւալ մատենագրութեան հոյակապ հեղինակաց գործերն, որպիսիք են. Condillac, Marmontel, La Harpe, Girard, Maunoury, L. Lemercier, Guérard, Leclair, Emil Lefranc, L'abbé Drioux, P. Larousse, A. Thery, de Bonald եւ ուրիշ ոչ սակաւ հեղինակներ: Ես խնամով ի զնին արկանելոյ սոցա գործերն փոյթ ունեցած եմ նոցա գեղեցկութեանց եւ առաւելութեանց նմանող նախանձաւոր լինել: Թէ ով մանր ի քնին արկանէ իմ Տեսական եւ Գործնական գրագիտութեան սոյն Առաջին մասն, բազում իւիք տարբեր եւ գերազանց պիտի գտնէ վերոգրեալ հեղինակաց շատին գործերէն: Նախ իբր տեսական, պիտի գտնէ ամփոփ եւ կոկիկ կերպով բացատրուած բոլոր այն օրէնքներն ու կանոններն որք յայլ դասագիրս երկայնաձիգ եւ ճապաղ ոճով մի բացատրուած են: Թէ քանիցն անպէտ, ձանձրացուցիչ եւ

հետեւաբար ապարդիւն են ոճոյ օրէնքներն լայնագոյնս եւ պարարտագոյնս սահմանել , այն՝ յայտ է փորձառու եւ ուշադիր ուսուցչաց : Զուր ջան , անօգուտ վաստակ չէ՞ միթէ նստիլ երկայն ճառեր յօրինել ուսուցանելու համար աշակերտին յստակ կամ ճիշդ ոճով գրել , կամ ըմբռնել տալու համար բուն վսեմին տեսակները կամ վարժեցունելու համար ճարտարութեամբ ի կիր արկանել բառից կամ իմաստից այս ինչ ձեւն . երկու հրահանգներ առաւել բան պիտի ուսուցանեն աշակերտին քան երկոտասան էջեր բացատրութեան եւ սահմանի :

Իսկ գալով գործնականին , այնքան առաւելութիւն ունի սա իւր նմանեաց վերայ զի աւելորդ իսկ է բաղդատութեան մտնել : Բոլոր այն օրինակներն զորս ցարդ թէ ազգային եւ թէ օտարազգի հեղինակներ , Բանիւրձի խաչանց նման , իրարու հետեւելով միօրինակ կերպով մուծած են իւրեանց դասագրոց մէջ , ի բաց յապաւուած եւ նոցա տեղ նոր , ընտիր եւ աւելի գեղեցիկ օրինակներ յառաջ բերուած են :

Այն առաջին մասը երկու հատորէ կը բաղկանայ . Ա. հատորն կը բովանդակէ Ոճոյ Ընդհանուր եւ Մասնաւոր յատկութիւններն : Ընդհանուր յատկութեանց իւրաքանչիւրն այլ եւ այլ բառագիտական եւ մտամարզական հրահանգներ կը պարունակէ որք մասնաւոր խնամոք պատրաստուած են : Հրահանգներն լի են խրատական եւ բարոյական ասացուածովք որք ուսանողին մտաց եւ սրտին վերայ մեծ ազդեցութիւն պիտի ընեն երբ ուսուցիչը միշտ նոցա իմաստը քաջ ըմբռնել տալու փոյթը չխնայէ , զի լաւագոյն եւ օգտակար դրութիւնք այնոքիկ են յորս ուսանողին միտքն որչափ որ կարելի է շատ կ'աշխատի :

Իսկ Մասնաւոր յատկութեանց իւրաքանչիւր տեսակը իւր նոր եւ գեղեցիկ օրինակներն առանձին ունենայէ

զատ, ունի նաեւ փոքրիկ հաւաքածոյ մի նոյն ոճոյ պատկանող ընտիր հատուածներու : Թէ ինչ բանի պիտի ծառայեն սոյն հատուածները, պիտի ըսեմ յաջորդ ԳՈՐԾԱԾՈՒԹԵԱՆ գլխոյն մէջ :

Երկրորդ հատորն կը բովանդակէ Ձեւաւոր ոճ այսինքն *Բառից* եւ *Իմաստից* ձեւերն : Ոչինչ խնայուած է այս հատորոյն մէջ ձեւոց կատարելութեան ու ճոխութեան համար : Բոլոր *Բառից* ձեւերն ունին իւրեանց հրահանգները, ինչպէս նաեւ *Իմաստից* այն ձեւերն միայն որք մեծ կարեւորութիւն մի ունին իմաստները զօրացունելու եւ զանոնք ընդլայնելու համար : Իմաստից ձեւերուն մէջ ուսանողը պիտի գտնէ այնպիսի ձեւեր, որք, թէեւ կարեւոր, այլ զանց առնուած են ուրիշ դասագրոց մէջ, մինչ աստ հրահանգներով իսկ են զետեղուած : Սոյն հատորոյս վերջն ալ կցեցինք փոքրիկ հաւաքածոյ մի ծաղկաքաղ հատուածներու, քաջ գիտելով զի ընտիր հատուածոց ընթերցումը այն միակ միջոցն է որով ուսանող մի կարէ իւր ճաշակը կրթել եւ ոճը յղկել : Լաւագոյն մատենագիրները ստէպ ընթեռնուլ, զանոնք քաջ հասկընալ եւ նոցա յատկութեանց խորը թափանցել, ահա ընտիր ոճ մի կազմելու գաղտնիքը :

ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆ

Երբ Վոլթէր կ'ըսէ «Յոռի մատեան չկայ», ես անշուշտ կարեմ ըսել «Յոռի դասագիր չկայ». ուսուցիչն է որ յոռի կամ ընտիր կ'ընէ զդասագիրն : Զի՞նչ օգուտ թէ սուսերն է սայրասուր ու պողպատեայ՝ երբ բազուկն է անարի. այլ քանիճն ահարկու է սուսերն իսկ բութ ու գօսլ՝ երբ բազուկն է քաջարի : Տուր աշակերտին ձեռքն մի դասագիր որում հեղինակն ագահած է իւր խնամքն, իսկոյն մի լաւագոյն դասագիր պիտի դառնայ այն շնոր-

հիւ ճարտար մի ուսուցչի․ տուր նաեւ աշակերտին ձեռքն մի դասագիր որոյ մէջ մի էջն հեղինակին քրտանց կա-թիլներովն է թուրմ ու տամուկ եւ ուր ելեւել կ՚ընեն մի զմիով հմտութիւն ու փորձառութիւն, առժամայն պիտի դառնայ մի գործի անպէտ, շնորհիւ... որո՛յ․ — մի ապիկար ուսուցչի :

Ներկայ դասագրոյս հեղինակը չունենալով բնաւ ամէն մասամբ կատարեալ գործ մի շինած լինելու յաւակնութիւնն, մեծարոյ ուսուցչաց ճարտարութենէն կը սպասէ իւր գործոյն պիտանի եւ օգտակար լինելն :

Սակայն նախ քան զինքեանս վեց տարիներէ հետէ գործածած լինելով զայն եւ փայլեալ նորա արդիւնքներն, կը փութայ աստ յանդիման առնել այն եղանակը զոր ի գործ դրած է ցարդ ինքն օգտակարապէս, վստահ լինելով ներողամտութեան այն ուսուցչաց որք անշուշտ յաւագոյն քան զայն գիտեն եղանակ ի գործ դնելու եւ որոց շնորհապարտ պիտի լինի եթէ հաղորդեն զայն եւ առ ինքն :

Արդ՝ նախ հարկ կը համարիմ ըսել թէ գրագիտութեան ուսումը պէտք չէ բարձրագոյն կարգին վերապահել, որպէս կ՚ընեն մեր ոչ սակաւ վարժարանաց մէջ : Որպէս զի աշակերտն կարող լինի սկիզբն առնել գրագիտութեան ուսմանն, չէ հարկ զի այնքան հմուտ եւ տեղեակ լինի իւր մայրենի գրաբար լեզուին․ բաւ է թէ կարող լինի նա ի միտ առնուլ զոր ինչ կ՚ընթեռնու աշխարհիկ լեզուաւ եւ տեղեակ լինել նախադասութեանց մէջ բառից կատարած պաշտօններուն : Հարկ է սակայն սկսած լինել գրաբար լեզուի քերականութեան եւ զոյգ ընդ գրագիտութեան շարունակել : Այսպէս Գրագիտութեան ուսումն, մեր վարժարանաց մէջ, իւր դժուարամատչելի կայանէն կ՚իջնէ յայնժամ եւ կը լինի նախնական դասուց աւանդելի ախորժ եւ օգտակար ուսում մի : Եր

երբեմն զի Քերականութեան ուսումն եւս մեր վարժարանաց մէջ մի անառիկ դիրք ունէր․ մի Ոսկեգեղմ էր այն զոր յափշտակելու համար ճրքան սակաւ Յասոններ յառաջ կը խիզախէին․ այլ այսօր, շնորհիւ յառաջդիմութեան մեր կրթական ծրագրոց (ոչ ամենուրեք սակայն), հասարակ ընթերցանութեան հետ մանկան աւանդելի ուսում մի եղած է եւ այն Քերականութիւնը որ երբեմն ուսումնարանաց բարձրագոյն դասարաններուն մէջ բարձրագահ կը բազմէր, այսօր նախակրթարաններու խոնարհ նստարաններուն վերայ կը բազմի։ Է՞ր այսպէս չլինի նաեւ Գրագիտութիւնն, մանաւանդ Ոճոյ մասն․ միթէ սորա կանոններն քան զՔերականութեանն նուազ ցամաք եւ վերացեալ չե՞ն, միթէ սորա ուսումը քան զՔերականութեանն առաւել հրապուրիչ չէ՞։ Բայց, պիտի ըսեն, ամէն բան ժամանակաւ կը լինի․ — ժամանակը եկած հասած եւ անցած իսկ է․ բայց, պիտի ըսեն, յարմար դասագիր կը պակասէր․— ահա այդ պակասութիւնը լեցնելու համար է զի կը հրատարակեմ ներկայ աշխատութիւնս, ի սրտէ փափագող լինելով որ ուրիշ ճարտարագոյն գրիչներ լաւագոյնը եւ յարմարագոյնը յօրինեն։

Անցնիմք բացատրելու այժմ զայն եղանակն որոյ գործադրութիւնը թուի ինձ թէ անօգուտ չլինիր․

1. Նախ մի կամ երկու աշակերտաց հարցունել աւանդեալ դասին կանոնները, զորոց իմաստն աւելի հարկ է պահանջել քան բառական ճշդութիւնը։

2. Ուրիշ մի քանի աշակերտաց նոյն հարցումները կրկնել տարբեր ձեւով սակայն, եւ պատասխանները պահանջել ի նոցանէ տարբեր բացատրութեամբ․ աշակերտաց կարողութեան համեմատ աստ պարտ է ուսուցչին խստապահանջ կամ թոյլատու լինել։

3. Հրահանգները ուղղագրել, բարոյական ասացուա-

ծոց իմաստը մեկնելով եւ քաջ ըմբռնել տալով նոցա :

4 . Առ մէն մի երկու կամ երեք դաս՝ աշխարհաբար հատուած մի տալ հետեւեալ վարժութեանց :

*Ա. Ի բերան ուսանել զայն.*

*Բ. Նախընթաց դասերուն նկատմամբ դիտողութիւն ընել տալ, եթէ կան դիտողութեան կէտեր։*

*Գ. Բառից կազմութիւնը որոշել տալ (արմատ, բարդ, ածանցեալ)։*

*Դ. Բառից սահմանները պահանջել բերանացի կամ գրաւոր։*

*Ե. Բառից սահմանները տալ եւ բառերը պահանջել գրաւոր.*

*Զ. Հատուածն ինչ ոճով գրուած է. պա՛րզ, միջա՛կ, վսե՞մ։*

*Է. Տրամաբանօրէն լուծել նախադասութիւնները (եթէ աշակերտք սկսած են տրամաբանական լուծման)։*

*Ը. Արդիւնքն ըսել, աշակերտէն պատճառը պահանջել։*

*Թ. Պատճառն ըսել, աշակերտէն արդիւնքը պահանջել։*

*Ժ. Հատուածը քննադատել եւ ի վեր հանել տալ նորա լաւ կամ յոռի յատկութիւնները։*

*ԺԱ. Բառագիտական այլեւայլ վարժութիւն (ածականը գոյական ընել եւ փոխադարձաբար, գոյականը բայ ընել եւ փոխադարձաբար, բայէն՝ ածական եւ գոյական շինել. յատկացուցիչը ածականի վերածել եւ փոխադարձաբար եւն)։*

*ԺԲ. Բառից ձեւերը որոշել։*

*ԺԳ. Իմաստից ձեւերը որոշել։*

*ԺԴ. Հատուածը համառօտել՝ ի բաց հատանելով երկրորդական գաղափարները եւ միայն գլխաւորները առնլով։*

*ԺԵ. Յետոյ համառօտեալ հատուածը եւ բնագիրն բաղդատել տալով՝ ըմբռնել տալ աշակերտին ընդլայնման օրէնքները։*

Աւելորդ է ըսել զի այս փորձութեանց ամէնքն ամէն հատուածի վերայ հարկ չէ պահանջել ուսանողէն, այլ մի քանին եւ եթ։ Ուսանողն այս կերպով պատրաստելով զհատուածն ոչ թէ միայն գրագիտական օգտակար դաս մի ըրած պիտի լինի այլ նաեւ իւրաքանչիւր հատուածին պարունակած գաղափարներն յինքն սեպհականելով որ քան զոր պիտի զարգանայ մտաւորական յառաջդիմութեամբ։

Ահաւասիկ դասագիր մի որ, հակառակ վեցամեայ տքնաջան աշխատութեանս եւ տասնամեայ ուսուցչական փորձառութեանս, գիտեմ քաջ, չէ զերծ ի թերութեանց։ Այլ յուսալից եմ զի այդ թերութիւնք ազնուախոհ ուսուցչաց ներող ակնարկութեան պիտի հանդիպին։ Ու եւ իցէ դիտողութեան կամ քննադատութեան, թէ առանձինն եւ թէ հրապարակաւ, միշտ ախորժ յօժարութեամբ ունկնդիր պիտի լինիմ, բաւական է որ առողջ մտաց եւ անկեղծ ոգւոյ բարբառ լինի այն։ Իսկ օձաքիմ եւ սլաքալեզու գրչակներու, որք հանոյք կ'զգան բիծ կարկատելէ եւ որոց համար քննադատութիւն եւ խծբիծ բացարձակապէս հոմանիշ են, կանխաւ կը զեկուցանեմ զի իւրեանց պոռոտախօս կառաչներուն միշտ ունկնախից լսելափակ պիտի մնամ, սուղ ժամերս վատնելու համար այն նորանոր աշխատութեանց միայն որոց ահա կը ձեռնարկեմ։ Կ'իջնեմ յասպարէզ ոգւով լի վստահութեամբ թէ պիտի քաջալերէ զիս իմ սիրելի ազգս որոյ մատաղ որդւոց համար ցարդ տքնեցայ, դեռ կը տքնիմ, եւ պիտի տքնիմ ոգւով յար անվհատ։

Մ. Պ. Ա.

# ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ

# ՏԵՍԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾՆԱԿԱՆ

---

## ՆԱԽՆԱԿԱՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ

1. *Հ. Ո՞րք են Գեղեցիկ դպրութիւնք* (Belles-Lettres).

*Պ. Գեղեցիկ դպրութիւնք կը կոչուին Քերականութիւն, Բանաստեղծութիւն եւ Պերճախօսութիւն:*

2դ. *Հ. Ի՞նչ է Գրագիտութիւնն* (Littérature).

*Պ. Գրագիտութիւնն է ծանօթութիւն Գեղեցիկ դպրութեանց կամ ուսումն հին և նոր հոյակապ մատենագրութեանց:*

3դ. *Հ. Գրագիտութիւնը կը պարունակէ՞ նաեւ Քերականութիւն.*

*Պ. Թէպէտ եւ Քերականութիւնն հիմն է Գրագիտութեան, զի առանց Քերականութեան ոչ մաքրութիւն եւ ոչ ուղղութիւն կարեն ունենալ թէ արձակ և թէ ոտանաւոր դրուածներն, սակայն Գրագիտութիւնն, արդէն ծանօթ ենթա-*

դրելով քերականական օրէնքներն, մանաւորապէս կ'ուսուցանէ գեղեցկին կանոններն եւ կը թեքէ զմիտն ի շարադրել։

4դ. Հ. Գեղեցիկ դպրութեանց ուսումն ի՞մ իմիք կը ծառայէ.

Պ. Գեղեցիկ դպրութեանց ուսումը կը ծառայէ միտքը մշակելու, յիշողութիւնը զարդարելու, երեւակայութիւնը ճոխացունելու, ճաշակը մաքրելու, սիրտը ազնուացունելու եւ բոլոր մտաւորական կարողութիւնները զարգացունելու։

5դ. Հ. Գրագիտութիւնը քանի՞ մասերու կը բաժնուի.

Պ. Գրագիտութիւնն երեք մասերու կը բաժնուի, 1. ՈՃ (le Style), 2. ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ (La Poétique) և 3. ՊԵՐՃԱԽՕՍՈՒԹԻՒՆ (l'Eloquence)։



# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

# ՈՃ

## (STYLE)



## ԳԼՈՒԽ Ա.

### ՍԱՀՄԱՆ ԵՒ ՅԱՏԿՈՒԹԻՒՆՔ ՈՃՈՅ



1. Հ. Ի՞նչ է ոճն.

Պ. Ոճն է եղանակ բացատրելու մեր գաղափարներն ու զգացումներն. կամ այն արտաքին ձեւն որով զգալի կ'ըլլան մեր գաղափարներն ու զգացումներն։

2ր. Հ. Քանի՞ տեսակ ոճ կայ.

Պ. Ոճը գրողին նկարագրին (բնաւորութեան) բացատրութիւնն է. արդ որովհետեւ իւրաքանչիւր ոք իրեն յատուկ նկարագիր մի ունի, հետեւաբար իրեն յատուկ ոճն ունի. ուստի որքան մարդիկ կան, այնքան ալ ոճ կայ. բայց Գրագիտութիւնն ոճերու այս բազմակերպ զանազանութեան մէջ գլխաւոր երկու տեսակ ոճ կ'որոշէ. լաւ եւ յոռի։

3ր. Հ. Ո՞րն է լաւ ոճն եւ ո՞րն է յոռին.

Պ. Լաւ ոճն այն է յորում կը տեսնուին ոճոյ յատկութիւնքն եւ նորա ձեւոց պատշաճ ու վայելուչ գործածութիւնն. այս հանգամանքներէն զուրկ եղող ոճն յոռի է։ Լաւ ոճ ունենալ կը նշանակէ բարւոք գրել։

4դ. Հ. Բարւոք գրելն ի՞նչ է.

Պ. Բարւոք գրելն՝ բարւոք խորհիլ, բարւոք զգալ եւ բարւոք բացատրել է. «Բարւոք գրելն, կ'ըսէ Պիւֆոն (*), միանգամայն միտք, հոգի եւ ճաշակ ունենալ է. ոճն իմացական բոլոր կարողութեանց միաւորութիւնն է եւ կիրառութիւնը կ'ենթադրէ»։

5դ. Հ. Ոճը քանի՞ տեսակ յատկութիւն ունի.

Պ. Ոճն երկու տեսակ յատկութիւն ունի, ԸՆԴՀԱՆՈՒՐ եւ ՄԱՍՆԱՒՈՐ։

6դ. Հ. Ո՞րք են ընդհանուր եւ ո՞րք մասնաւոր յատկութիւնք.

Պ. Ընդհանուր յատկութիւնք՝ ոճոյ էական յատկութիւնքն են, եւ հետեւաբար անփոփոխելի և անհրաժեշտ ամէն գրագիտական գրուածոց. իսկ մասնաւոր յատկութիւնք նիւթոց տեսակին համեմատ կը զանազանին։

---

(*) Պիւֆոն, նշանաւոր մատենագիր գաղիացի, (1707-1788)։ Ծառ ընդունելութեան ի գաղիական կաճառն :

# ԳԼՈՒԽ Բ.

## ԸՆԴՀԱՆՈՒՐ ՅԱՏԿՈՒԹԻՒՆՔ ՈՃՈՅ

*Հ. Ոճոյ ընդհանուր յատկութիւնք քանի՞ են.*

*Պ. Ոճոյ ընդհանուր յատկութիւնք ութ են* 1. ՄԱՔՐՈՒԹԻՒՆ (la Pureté) 2դ. ՅՍՏԱԿՈՒԹԻՒՆ (la Clarté) 3դ. ՃՇԴՈՒԹԻՒՆ (la Précision) 4դ. ԲՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ (le Naturel), 5դ. ԱԶՆՈՒՈՒԹԻՒՆ (la Noblesse) 6դ. ԶԱՆԱԶԱՆՈՒԹԻՒՆ. (la Variété), 7դ. ՊԱՏՇԱՃՈՒԹԻՒՆ (la Convenance) *եւ* 8դ. ԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ (l'Harmonie)։

## I. ՄԱՔՐՈՒԹԻՒՆ.

1. *Հ. Յորո՞ւմ կը կայանայ ոճոյ մաքրութիւնն.*

*Պ. Ոճոյ մաքրութիւնն յայնմ կը կայանայ զի գրողն այն բառերն ու ասացուածները միայն գործածէ զորս բարւոք սովորութիւնը կը ներէ, եւ խօսից մէջ իւրաքանչիւր բառին, Քերականութեան օրինաց համաձայն, իւր պատշած տեղն ու ձեւը տայ.*

2դ. *Հ. Ոճոյ մաքրութեան դէմ ինչ թերութիւնք տեղի կ'ունենան.*

*Պ. Ոճոյ մաքրութեան դէմ երեք տեսակ թերութիւնք տեղի կունենան,* 1. ԽԺԱԲԱՆՈՒԹԻՒՆ (Bar-

barisme) , 2. ՔԵՐԱԿԱՆԱԿԱՆ ՎՐԷՊ (Solécisme) և 3. ՆՈՐԱԲԱՆՈՒԹԻՒՆ (Néologisme)։

Յդ. Հ. *Ի՞նչ է խժաբանութիւնն.*

*Պ. Խժաբանութիւն կ'ըսուի քերականութեան բառագիտական մասին դէմ գործուած սխալին. ուստի խժաբանութիւն է՝*

*Ա. Օտար լեզուի բառ գործածել. զոր օրինակ,*

*Տունկ չոգած (դրած) կ'աղօթէր։ Բոլոր դրամս խարճեցի (ծախսեցի)։ Դուռը մեօհրեցին (կնքեցին) եւ մեկնեցան։ Շատ աղաչեցի, սակայն խեր (օգուտ) չըրաւ։ Խեղ մը (ոչ սակաւ) մարդիկ այսպէս կ'ըսեն։ Սրինգ չալել (ածել, հարկանել) չգիտեմ։ Ոչ ոք կրնայ Աստուածային բարկութենէն խալսիլ (ազատիլ, զերծանիլ)։ Քու խաթերդ (սիրոյդ) համար կատարեցի այս գործն։ Յուդա Յիսուսը խամզեց (մատնեց) եւն։*

*Բ. Օտար բառեր ու ածանցումներ գործածել. զոր օրինակ,*

*Մայտերը (կալուածատէրը) չհաւանեցաւ։ Մանուկն հավազարկ (օդառ) է եղեր։ Հացսըզ ջուրսըզ (առանց հացի եւ ջրոյ) հոն չկարեմ երթալ։ Հիմանուկ (ընդհուպ) կուգամ։ Ախտար (այսչափ) սուտկն ի՞նչ պիտի ընես։ Թշուառ մայրը ճնկաչոզ (ծնրադրած) կ'աղօթէր իւր որդւոյն կենաց փրկութեան համար։ Հացէն կտոր-ճիկ (կտորիկ) մի խածաւ։ Բան մի չտեսածտան (դեռ չտեսած) վրան դիտողութիւն մի ըներ. եւն։*

*Գ. Խորթ ու ռամկական բառեր գործածել, որուն կ'ըսուի Ռամկաբանութիւն կամ Վաղըն-ջաբանութիւն* (Archaïsme). *զոր օրինակ,*

*Ճորով (դժուարաւ) բերինք, գալ չէր ուզեր։ Տղի-ֆեն (վզէն) կապեցին ու ծովը նետեցին։ Ճիւերը (ոտ-*

ներն) լուաց։ Ինչուան (մինչեւ) երեկոյ հոն մնացինք։ Մարդու պէս կեր, մի ղղրճեր (ծանծաղեր)։ Ճիտէն (պարանոցէն) քար մի կախեցին եւ այլն։

Դ. Աղաւաղ կամ խանգարեալ հնչում ունեցող բառեր գործածել. զոր օրինակ,

Ջորձերս վլացի (լուացի)։ Այսօր արգեւ (անձրեւ) պիտի գայ։ Աղբարներս եւ քուրերս (եղբայրներս եւ քոյրերս) տեսայ։ Ծառքէն (ձեռքէն) բռնեցի։ Օխտը (եօթն) հոգի էինք։ Գիշեր ցորեկ (ցերեկ) կը մտածէ։ Գէորգս Մաղքոսին ականը (ականջը) կտրեց։ Ասօր (այսօր) ծուն (ձիւն) կու գայ, վաղը ախպուրին (աղբիւրին) ճուրը (ջուրը) պիտի սառի։ Ես տուռը (դուռը) կոցեցի (գոցեցի) դուն ինչո՞ւ պացիր (բացիր)։ Մեր էգիին (այգիին) մէջ հայրուր (հարիւր) իծուն (յիսուն) թզենի կայ։ Կլօխս (գլուխս) կը ցաւի։ Նամակդ ունդունեցայ (ընդունեցայ)։

4դ. Հ. Ի՞նչ է քերականական վրէպն.

Պ. Քերականական վրէպ կ'ըսուի երբոր նախադասութեան մէջ բառի մի այնպիսի տեղ մի, պաշտօն մի կամ ձեւ մի տամք որ հակառակ է քերականութեան կանոնաց. զոր օրինակ երբ ըսեմք

Կռւոյ մէջ զարնուեցաւ. կռիւ բառը սխալ հոլոված կ'ըլլամք. պէտք է գրել կռուոյ մէջ եւլն։ Նոյնպէս

Եղբայրիս եւ մայրիս նուէրներ տուի. փոխանակ ըսելու՝ Եղբօրս եւ մօրս եւլն։ Նոյնպէս

Այս լիճին մէջ նաւ մի ընկղմեցաւ. փոխանակ ըսելու՝ Այս լճին մէջ եւլն։

Հետեւեալք եւս քերականական վրէպի օրինակներ են.

Ամէն ոք պարտաւոր է օգնել իւր ընկերն (ընկերին)։

Այն մարդն ինձ (զիս) ճանչցաւ, բայց ես զայն չճանչցայ։

Այս դրամն իմ աշխատութենէս (աշխատութեանս) չահեցայ։

Քերականական վրէպ է նաև՝

Ծաղկապով սկսուած նախադասութիւն մի անբերեւոյթ բայով վերջացնելն. զոր օրինակ,

Հարուստ վաճառական մի փափագեցաւ որ մահուընէ առաջ իւր ժառանգութիւնն որդւոցը բաժնել։

Պէտք է ըսել

Հարուստ վաճառական մի փափագեցաւ որ մահուընէ առաջ իւր ժառանգութիւնն որդւոցը բաժնէ։ Նոյնպէս

Մօտեցայ որ անոր ով ըլլալն հասկնալու համար։

Պէտք է ըսել

Մօտեցայ որ անոր ով ըլլալն հասկնամ։

5դ. Հ. Ի՞նչ է Նորաբանութիւնն.

Պ. Նորաբանութիւն կ'ըսուի երբոր լեզուին մէջ նոր բառ մի կամ արդէն ծանօթ բառ մի նոր կամ օտար իմաստով գործածուի. մի թերութիւն է սա յոյժ վնասաբեր զի կ'այլայլէ լեզուի մի նկարագիրն և կ'եղծանէ նորա ընդարոյս յատկութիւններն. ուստի չէ պարտ բնաւ ըսել

Անձնասպանել փոխանակ ըսելու ինքզինքը սպաննել
Անձնասիրել » » իւր անձը սիրել
Սրճել » » սուրճ խմել՝

Նորաբանութիւնք՝ յորս օտար ու անսովոր իմաստով բառեր գործածուած են. զոր օրինակ,

Այս գործն ո՞րչափ երկար քշեց (տեւեց)։ Այս

կօշկակարէն երեք զոյգ կօշիկ առինք (գնեցինք)։ Շատ տառապանք քաշեցի (կրեցի)։ Հայրս գիրք կը կոխէ (կը տպագրէ)։ Գազաններն անոր որդին փարաստեցին (պատառեցին, գիշատեցին)։ Այս տղան մէկէ մի չը-քաշուիր (չակնածիր)։ Թագաւորն իւր գանձէն անոր ռոճիկ կապեց (կարգեց, հաստատեց)։ Բարեկամէ մի եղայ (բարեկամ մի կորուսի)։ Եւրոպացիք տեսակ տե-սակ բաներ կը հանեն (կը հնարեն) եւ մեր ստակները կ՚առնուն եւն։

Նորաբանութիւնք յորս օտար եւ անսովոր ի-մաստով ասացուածներ գործածուած են. զոր օ-րինակ,

Այս մարդուն կռնակէն (շնորհիւ) շատ դրամ շա-հեցայ։ Առջի բերան (նախ, առաջինն) հաւանեցաւ, բայց յետոյ մերժեց։ Ճաշի տակ (ճաշի ժամանակ) ի-րերաց հետ կը կռուէին։ Եթէ ձեռքէս գար (կարե-նայի) պիտի կատարէի։ Ո՛րչափ տաս ձեռք կուտայ (կը բաւէ) չ՚ըսեր։ Խօսքն անցուկ (բանկայ) մարդ է։ Ա-նիծեալ ըլլայ այն րոպէն որ զիս զաւկներէս ըրաւ (անզաւակեց)։ Պատանին գլխէն ելաւ (մոլորեցաւ, զա-ռածաւ)։ Ձեր գլխէն անցած (ձեզ պատահած) չէ որ գիտնաք։ Ձեր վիշտը կը բաժնեմ (ձեզ կը վշտակցիմ)։

Բազում են սոյնպիսի Նորաբանութիւնք որովք լի է մեր աշխարհիկ լեզուն եւ յորոց պարտի զգուշանալ ճաշակի տէր գրող մի եթէ չուզեր խժաբանիկ լեզուով անհրապոյր գործել իւր ա-սացուածներն, խաթարել հայկական լեզուին բնա-ծին վայելչութիւնն ու ջլատել նորա կորովն։

6դ. Հ. Ներելի չէ՞ բնաւ Նորաբանութիւն ընել.

Պ. Ներելի է, բայց յայնժամ յորժամ մի բա-

ցարձակ հարկ կ'ստիպէ զմեզ: Սակայն եւ այնպէս կիրթ ճաշակ եւ զօրաւոր դատողութիւն պէտք է՝ լեզուին ոգւոյն ու կազմութեան հակառակ բառ մը չստեղծելու համար. հարկ է նաեւ քաջահմուտ ըլլալ լեզուին, զի մի դուցէ արդէն գոյութիւն ունեցող բառի մը տեղ, ուրիշ բառ մը ստեղծել յանդգնինք առ տգիտութեան (*):

## 2. ՅՍՏԱԿՈՒԹԻՒՆ

1. Հ. Ի՞նչ է ոճոյ յստակութիւնն.

Պ. Յստակութիւնն ոճոյ հիմնական յատկութիւնն է: Եթէ մարդ իւր գաղափարներն ու զգացումներն այլում հաղորդելու համար միայն կը խօսի կամ կը դրէ, ապա պէտք է որ այնպէս

---

(*) Հ. Արսէն Բագրատունի նորաբանութեան մասին այսպէս կ'ըսէ Սուաւէի Արուեստ բանականին տեղեկութեանց մէջ:

«Եթէ արդարեւ նոր իրք եւ գաղափարք իցեն, և նորոց բառից պէտք, փոյթ լիցի այնուհետեւ ըստ կարի հանել յարմարոյ լեզուին, և յերիւրել ըստ բնութեան և յատկութեան նորա, կամ ի գաւառական խօսից աշխարհին: Իսկ և ի սոցա պակասել, եթէ յօտար բարբառոյ առնուլ ինչ ոք ստիպեսցի, լաւ համարիմք Հայոյն, զի զմերս առասցուք, արտաքոյ Հայերէն խօսից ի Պարսից առնուլ կամ ի Հելլենականէն. զի Պարսկայինն դրացի է մերումս և առաւ արեան, և Հելլէնն առ այնու զի վասն բառիցն բարդութեան դիւրաթարգմանելի է ի մերս, նա և յարուեստս և ի գիտութիւնս արդէն իսկ յաճախեալ է: Ոչ կամիմք արգելուլ իսպառ, եթէ հարկն տագնապեսցէ, եւ յարդի լեզուաց առնուլ. բայց և զգոյշ լինել՝ մի առ հեղգութենէ ինչ, անհմտաբար և ստամբակերէն նորասիրութեամբ, առ նորաձեւութեան և ստրկաբար նմանողութեամբ կամ հետեւողութեամբ խթել և խծկել ինչ և բռնազբօսել ի բարբառս մեր առանց հարկի, զի մի ազգասէր լեզուասիրացն և ի հարկին կապեսցին ձեռք առ զգուշութեան»:

յստակ ու պայծառ բացատրէ զանոնք զի լսողը կամ ընթերցողը իսկոյն եւ առանց ճգան ըմբռնէ։ Գրուած մի ոչքան օգտակար կամ ճոխ ու զարդարուն լինի, եթէ չունի յստակութիւն, կը յոգնեցունէ մեր միտքն ու հաճելի չըլլար մեզ։ Խոտելի է այն հեղինակն՝ որոյ պարբերութեանց իմաստն, կրկին եւ երեքկին կարդալէ յետոյ, հազիւ կ'ըմբռնեմք. իսկ ընդհակառակն սիրելի է այն հեղինակն՝ որոյ դիւրըմբռնելի են պարբերութիւնք եւ ոճը կը հոսի որպէս վտակ յստակաջուր որոյ յատակը միշտ ակներեւ կը փայլի։

Յդ. Հ. Յստակ ոճ ունենալու համար ի՞նչ պէտք է ընել.

Պ. Յստակ ոճ ունենալու համար պէտք է քաջ ըմբռնել իւր գաղափարներն իւրեանց բոլոր ընդարձակութեամբն։ Գրելէ յառաջ պէտք է քաջ խորհիլ իւր նիւթին վերայ եւ զայն իւր բոլոր կողմերէն դիտել. յետոյ կարգ մը դնել իւր գաղափարաց եւ այնպէս չղթայաշար տողել զանոնք զի անճիգն եւ անջան իբրամէ ծնած թուին։ Պուալոյ իւր Արուեստ Քերթողականին (Art Poétique) մէջ կ'ըսէ,

« Մեր գաղափարաց յստակութեան կամ մթութեան համեմատ մեր բացատրութիւնք ալ յստակ կամ մթին կ'ըլլան։ Մարդ ինչ որ քաջ կ'ըմբռնէ զայն լուսաւոր կերպիւ կը բացատրէ, եւ բառերը դիւրաւ կը հասնին զայն ըսելու համար »։

Յդ. Հ. Ի՞նչ է Խրթնութիւն (Obscurité).

Պ. Խրթնութիւն ոճոյ յստակութեան հա-

կառուակ թերութիւն մի է որ յառաջ կու գայ ինչ ինչ պատճառներէ, որպիսիք են. 1) Իւր նիւթն լաւ ու լուսաւոր կերպիւ չըմբռնել, որոյ միակ դարման լռութիւնն է. 2) Անյատուկ կամ երկդիմի բառերու գործածութիւն. 3) Հոմ չարադասութիւն. 4) Բռնազբօսիկ յեղաշրջութիւնք. 5) Պատ ի պատ եւ յոյժ երկայն պարբերութիւնք 6) Եւ ընդհանրապէս քերականական վըրիպակք։

4դ. Հ. Ուրիշ ի՞նչ բանէ յառաջ կու գայ խըրթնութիւնն.

Պ. Խրթնութիւնն յաճախ յառաջ կու գայ նաեւ նրբամիտ, փափուկ, խորիմաստ եւ խորհրդաւոր երեւնալու փափաքէն. ոմանք կը կարծեն այսու սքանչացունել զռամիկն որ յաճախ տրամադիր է զարմանալ ընդ որ չհասկնար. այլք եւս այնքան պաճուճազարդ կը յօրինեն իւրեանց ոճը մինչեւ լինել դժուարիմաց կամ անիմաց։

5դ. Հ. Ոճոյ յստակութեան համար ի՞նչ բաներու պէտք է նաեւ ուշ դնել.

Պ. Ոճոյ յստակութեան համար պէտք է նաեւ ուշ դնել. 1) *Բառից պատշաճութեան* (La propriété des mots). 2) *Առնչութեան ի մէջ բառից* (La corrélation entre les mots). 3) *Գաղափարաց կարգին* (L'ordre des idées). 4) *Հոմանիշ բառերու* (Les synonymes)։

## ՊԱՏՇԱՃՈՒԹԻՒՆ ԲԱՌԻՑ

**1.** *Հ. Ի՞նչ կը պահանջէ բառից պատշաճութիւնն.*

*Պ. Բառից պատշաճութիւնն կը պահանջէ զի իւրաքանչիւր գաղափար իւր յատուկ բառովը բացատրուի. ինչպէս որ մարդ մի իւրեան յատուկ ու սեպհական անուամբը կ'որոշուի յայլ մարդոյ, նոյնպէս գաղափար մի իւրեան յատուկ ու սեպհական բառովը կ'որոշուի յայլ գաղափարէ. ուստի պէտք է բառից բուն եւ ստոյգ նշանակութիւնը քաջ գիտնալ, գաղափարներն իւրեանց պատշաճ բացումն եւ յստակութեամբ ներկայացունելու համար ։ Զոր օրինակ,*

*Եթէ ըսեմք «Երբոր ողորմութիւն կուտային, չէին գիտեր թէ թշուառութի՞ւնը կը սնուցանէին թէ անգործութիւնը կ'սփոփէին» այս պարբերութեամբ անշուշտ ըսել ուզած եմք որ ողորմութիւնը դատարկապորտ մարդիկը կ'սփոփէ, եւ թշուառութիւնը մշտնջենաւորող պատճառներէն մին է. բայց բնական է որ մեր դիտաւորութիւնն էր սփոփանաց գաղափարը թշուառութեանց պատշաճեցնել եւ սնուցանելու գաղափարն անգործութեան. քանզի թշուառութիւնը մոլութիւն մի չէ որ սնանի, ոչ ալ անգործութիւնը չարիք մի որ սփոփուի. ուստի պէտք է ըսել «Երբոր ողորմութիւն կ'ուտային, չէին գիտեր թէ թշուառութի՞ւնը կ'սփոփէին թէ անգործութիւնը կը սնուցանէին»։*

*Նոյնպէս եթէ ըսեմք «Աստուած ձեռնտու կ'ըլլայ*

*նոցա որք կ'իյնան, եւ կը կանգնեն զանոնք որք կը դանդաչեն » ուղիղ բանի դէմ խօսած կ'ըլլանք. զի ամէն մարդ գիտէ որ պէտք է* **ձեռնտու ըլլալ** *նոցա որք կը դանդաչեն եւ կանգնել զանոնք որք կ'իյնան։*

*Նոյնպէս. «Միտքը կը զարգանայ յաճախ ի վնաս սրտին. ինչ որ միտքը կը շահի* **բարութեան** *մէջ, սիրտը զայն կը կորսնցնէ* **նրբամտութեան** *մէջ»։ Հարկ չէ շատ խորհրդածել համոզուելու համար թէ* **նրբամտութիւնը** *մտաց յատկութիւն մ'է եւ* **բարութիւնը** *սրտի. ուստի պէտք է ըսել «Միտքը կը զարգանայ յաճախ ի վնաս սրտին. ինչ որ միտքը կը շահի* **նրբամտութեան** *մէջ, սիրտը զայն կը կորսնցնէ* **բարութեան** *մէջ»։*

*Փիլիսոփայն մարդ մ'է որ կը քննէ նախ քան զ—, եւ կը խորհի նախ քան զ— (***գործել; հաւատալ***)։ Եթէ վերոգրեալ պարբերութեան գծերու տեղ* **գործել** *եւ* **հաւատալ** *բայերը դնել պէտք ըլլայ, պէտք է առաջին գծին տեղ* **հաւատալ** *բայը դնել, զի մարդ կը քննէ այն բանն որուն պիտի հաւատայ, եւ երկրորդ գծին տեղ* **գործել** *բայը դնել, զի մարդ կը խորհի այն բանին վերայ զոր պիտի գործէ։*



## ԲԱՌԻՑ ՊԱՏՇԱՃՈՒԹԵԱՆ ՎԵՐԱՅ ՀՐԱՀԱՆԳՆԵՐ

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտն պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակագծին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել։

1. *Իւրաքանչիւր չորքոտանի իւր յատուկ ձայնն ունի. առիւծը —, փիղը —, ձին —, էշը —, շունը —,*

գայլը —, կատուն —, խոզը —, ցուլը —, կովը —, եզը —, ոչխարը —, կոկորդիլոսը —, վագրը —, այծը —, կապիկը —, արջը —, ձուկը — (կը խռնչէ. կը պոռոչէ. կը բառաչէ. կը խրխնջէ կամ կը վրնջէ. կը մռնչէ. կ'ոռնայ. կը ճուայ. կը պապաչէ. կը մըռմռայ. կը ճչէ. կը խանչէ. կը զռայ. կը զոչէ. կ'աշխարէ. կը մայէ. կը բչէ. կը հաչէ կամ կը կաղկանձէ. կը նուայ կամ մլաւէ)։

2. Թռչուններէն ոմանք իրենց յատուկ ձայնն ունին. ագռաւը —, ագռաւնին —, տատրակը —, թութակը —, աքաղաղը —, կաքաւը —, կկուն —, արծիւը —, արագիլը —, սոխակը —, ճնճղուկը —, հնդկահաւը —, վառեակը —, անծեղը — (կը գըղղայ. կը կրկչայ. կը խօսի. կը կռնչէ. կուկու կ'ընէ. կը մռնչէ, կը թոթովէ. կը բիբէ. կը գեղգեղէ. կը ֆըֆռէ. կը կառաչէ. կը կաքկաքէ. կը ճճուէ. կը կարկաչէ։

3. Մարմինը կը պահպանուի — եւ հոգին — (բարի գործովք. սննդովք)։

4. Աստուած հինգ բան կ'ատէ, այն լեզուն որ —, այն ձեռներն որ —, այն սիրտն որ —, այն ոտներն որ —, այն սուտ վկայն որ — (անմեղ արիւն կը թափեն. ստութիւնը կը հաստատէ. կը ստէ. ի չարն կ'ընթանան. անիրաւ խորհուրդներ կ'երկնէ։)

5. Ո՞վ լսած չէ յաճախ տերեւոց —, զանգակաց —, թմբկին —, սրնգին —, ծնծղային —, ծղրիդին —, սղոցին —, ամպին —, թնդանօթին —, հողմոյն —, աղբիւրին —, գետոյն —, գնդակին — (ղօղանջիւնն. շրշիւնն. զանչիւնն կամ թինդն. սոյլն. դափիւնն. խռնչիւնն. խոխոջիւնն. շչիւնն. կարկաչիւնն. բոմբիւնն. ճռնչիւնն. մռնչիւնն. պայթիւնն)։

6. Ծննդեան գիշերն եղբայր մի ծնաւ —, փրկիչ մի —, բարեկամ մի —, տէր մի —, օրինակ մի —,

յաղթող մի — ( վարդապետաց, մանկան. բժշկաց. զերեաց. թագաւորաց. մանկանց )։

7. Իր ծախքն իր՝ եկամուտին համեմատ կարգադրել — է, իր բոլոր եկամուտը ծախսել — է, իր եկամուտէն աւելի ծախսել — է (անխոհեմութիւն. յիմարութիւն. իմաստութիւն)։

8. Ցիրքերն իրեանց առաջին աստիճանին մէջ —, երկրորդին մէջ —, երրորդին մէջ — ( կը պահանջեն. կը թելադրեն. կը խնդրեն )։

9. Կինը — մի ունի ամէն ուրախութեանց համար, — մի ամէն ցաւոց համար, — մի ամէն աղետից համար, — մի ամէն յանցանաց համար, — մի ամէն ձախողութեան համար, — մի ամէն յուսոյ համար ( մխիթարութիւն. քաջալերութիւն. աղօթք. ժպիտ. արտասուր. ներում )։

10. Անբարտաւան մարդիկ ուսումը —, միամիտները —, խելացիները — ( կը զարմանան ընդ այն. կ՚արհամարհեն. կ՚օգտին ի նմանէ )։

11. Ռոշժագլէն, ճակատամարտի մէջ, իբր ճառ հետեւեալ խօսքերը միայն կ՚ուղղէր իր զօրաց «Եթէ յառաջ ընթանամ, —. եթէ յետս ընկրկիմ, —. եթէ մեռնիմ, — ( հետեւեցէք ինձ. վրէժ լուծեցէք. սպանեցէք զիս )։

12. Ցիսուս Քրիստոս յաշխարհ եկաւ նորոգելու համար համայն բնութիւնն, սրբագործելու համար —, զօրացունելու համար —, փրկելու համար —, միացունելու համար — ( զտկարացեալսն. զապականեալսն. զբաժանեալսն. զկորուսեալսն )։

13. Եթէ կ՚ուզէք ճանապարհորդել, քսակնիդ լեցուցէք Անգլիոյ համար —, Գաղլիոյ համար —, Սպանիոյ համար —, Ռուսիոյ համար —, Գերմանիոյ համար —, Միացեալ-Նահանգաց համար — (թալերով. տօլա-

ռով. շիլինով. փրանքով. ռէալով. ռուպլիով):

14. Այր՝— պարտիս կնոջդ ; կին՝— պարտիս ամուսնոյդ (յարգանք, պաշտպանութիւն եւ սէր. հնազանդութիւն, սէր եւ պատկառանք):

15. Է ինչ որ աւելի քաղցր է քան զ— գովեստ ընդունելու, այն է գովեստին արժանի լինելու — (հաճոյք. զգացում):

16. Երբ կիրքերն անսանձ կ'երթան, հոգին — եւ իմացականութիւնը — (կ'աղօտանայ. կ'ապականի):

17. Երկրի մը բարգաւաճման ճշմարիտ հիմունքն են աշխատութիւնն որ — եւ դիւրակեցութիւնն որ — (կ'ապառէ. կ'ստեղծէ):

18. Երկու իրք կան Քրիստոնէական կրօնի ճշմարտութեանց մէջ, կ'ըսէ Բոսքալ. երկնային գեղեցկութիւն մի որ — կ'ընէ այդ ճշմարտութիւններն, եւ սրբազան վեհութիւն մի որ — կ'ընէ զանոնք (սիրելի. պատկառելի):

19. Համբաւն յաճախ միշտ կուտայ զիւր փառքն —, քան թէ — (արժանեաց. հարստութեան):

20. Բազումք ի մարդկանէ կ'ուզեն — հարստանալ, սակայն՝— (դիպուածով. արդարութեամբ):

21. Միայն — թագաւորներն են, որ ճշմարտապէս — են (մեծ. արդար):

22. Լուդովիկոս ԺԱ. իբրեւ գրագում ի թագաւորաց երբ գերեզմանին եզրն հասաւ, կանչեց զիւր յաջորդն եւ պատուիրեց նմա, զի իւր — հետեւի առաւել քան իւր — (խորհրդոց. օրինակաց):

23. Գոգցես Աստուած իւր արդարութեամբն հրամայած է բախտին, որ միայն — պաշտպանէ, մտածելով որ, — պէտք չափի ունենան նմա (ճարպիկներն. անմիտներն):

24. Մի՛ անձնար զգեստիդ — համար, այլ ա-

նոր — համար (բիծերուն . ծակերուն)։

25. Կենաց մէջ չէ պարտ խնդրել զայն առարկաները՝ որք աւելի — ունին, այլ զայնս՝ որք աւելի — ունին (ծանրութիւն . արժէք)։

26. Պարտ է նախ — զայն անձն, զոր կուզեմք — (սիրել . յարգել)։

27. Ամէն մարդիկ չեն կարող — լինել, բայց ամենքեան կարող են — լինել (բարի . մեծ)։

28. Մարմինը կարէ — պարգեւել, բայց հոգին միայն կարէ — պարգեւել (հաճոյք . երջանկութիւն։

## ՀՐԱՀԱՆԳ Գ.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակագծին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել։

1. Մտաց անհաստատութիւնը հարկաւորապէս տարափոխիկ չէ սրտին համար. կարէ ոք փոխել իւր —՝ եւ պահել իւր — (կարծիքները . զգացումները)։

2. Դատաւորի մի՝ որ միայն օրինաց տառը գիտէ, ձեռացը մէջ, արդարութեան —ը կարէ երբեմն մարդախօշոշ — մի լինել (երկաթ . սուր)։

3. Ընդ օրէնս եւ ընդ բարս այս խտրոցն կայ, զի —, աւելի քաղաքացւոյն գործերը կը կարգադրեն, իսկ — աւելի մարդոյն գործերն (բարք . օրէնք)։

4. Կանայք յաճախ կը խաբուին, քան զի — տեղ — կը գնեն եւ — տեղ — (զգացում . դատողութիւն — քննութիւն . երեւակայութիւն)։

5. Ժամանակն — յաւիտենականութեան — պատկերն է (անշարժ . շարժուն)։

6. Ցաչս Աստուծոյ չկայ — մի, որ — մի արժէ (բարեգործութիւն . աղօթք)։

7. Հայր Ռիչչի ի Չինաստան — դասեր կուտար,

յորս ճարտարութեամբ կը խառնէր — դասեր (բարո-յականի. երկրաչափութեան)։

8. Բարութիւնը նման է մտաց. կարէ ոք շատ — յայնմանէ, բայց կարէ շատ — (ցուցանել. չունենալ)։

9. Չկարէ ոք մեծ մարդ լինել, եթէ աւելի — ու-նի քան (սիրտ. միտք)։

10. Կարէ ոք — լինել առանց — լինելու, բայց չկարէ երբեք — լինել, առանց — լինելու (առաքի-նի. բարեգործ)։

11. Բանաստեղծը պարտի լինել — մի, զի կ'երգէ նա պատերազմներ եւ քաղաքաց առումներ. — մի, զի իւր երգերը վէպեր են. — մի, զի վիճել եւ ճա-ռել կուտայ իւր անձանց. — մի, զի կը գրէ ժողո-վրդոց սովորոյթներն, բարքերն եւ օրէնքներն (օ-րենսդիր. մատենագիր. մարտիկ. ճարտարախօս)։

12. Զախորդութիւնը բով մի է, ուր առաքինու-թիւնը — եւ փորձաքար մի է, ուր — (կը փորձուի. կը զտի)։

13. Չարերը կը Նմանին —, զոր հողմը կը ցրուէ, եւ —, զոր մրրիկը կը յարուցանէ (փոշւոյն. յարդին)։

14. Բարոյականը կ'ուսումնասիրէ —, իմաստա-սիրութիւնն — (զճշմարիտն. զբարին)։

15. Հռովմայեցւոց երկրակալութեան վերայ զար-մանալէ կը դադրի ոք, երբ նկատէ որ, — կարգա-պահութիւնն եւ — քաջութիւնն այս ժողովրդեան մէջ իւրեանց բարձրագոյն աստիճանին հասած էին (պատերազմական, զինուորական)։

16. Թագաւոր մի անկման վտանգի մէջ է, յոր-ժամ յենու ոչ թէ ժողովրդեան — վերայ, այլ զին-ւորին — վերայ (բազկին. սրտին)։

17. Ահա երեք չքնաղ զարդք երիտասարդութեան. —՝ որ գիտէ խորհիլ, —՝ որ գիտէ ի չափու կալ, —՝ որ գիտէ չիկնիլ (դէմք. լեզու. գլուխ)։

18. Տկար մարդը — ի մահուանէ, թշուառը — զայն, քաջը — զայն, իմաստունը — նմա (կը փախնայ. կը կոչէ. կ'արհամարհէ. կ'սպասէ)։

19. Հասուն հասակը պարտի — օրէնքներն, ծերութիւնը՝ — զայնս, երիտասարդութիւնը՝ — զայնս (պաշտպանել. առաջարկել. նուիրագործել)։

20. Երիտասարդութիւնը —, հասուն հասակը —, ծերութիւնը — (կ'զգայ եւ կ'իմաստասիրէ. կ'իմաստասիրէ առաւել քան զոր չզգար. կ'զգայ եւ չիմաստասիրեր)։

21. Մանկունք կ'ըսեն ինչ որ —, ծերք ինչ որ —, անմիտք ինչ որ — (ըրած են. կ'ընեն. կ'ուզեն ընել)։

22. Ծայրայեղ իրերն մեզ համար են իբրու թէ չէին, մեր զգայարանքներն չեն ըմբռներ բնաւ ծայրայեղ իրերն. չափազանց աղմուկն զմեզ —, չափազանց լոյսն զմեզ — (կը շլացունէ. կը խլացունէ)։

23. Երեւակայութիւնը —, միտքը —, ճաշակը —, տաղանդը — (կը բաղդատէ. կը նկարէ. կը գործադրէ. կ'ընտրէ)։

24. Ճշմարիտ բարեկամներ նոքա են, որ — վշտաց մէջ եւ — ձախորդութեան մէջ (կը մխիթարեն. կ'օգնեն)։

25. Գեղեցկին զգացման կը պարտիմք, կ'ըսէ Տալամպէր, հանճարն եւ ճաշակն. — այն զգացումն է, որ կը դատէ, — այն զգացումն է, որ կ'ստեղծէ (հանճարն. ճաշակն)։

26. Երկչոտ մարդը կ'ահաբեկի վտանգէն —, վատն — վտանգին, քաջը վտանգէն — (ի ժամու. յառաջ. յետոյ)։

27. Կրօնքն աւելի — է քան թէ — (զգացում. դատողութիւն)։

28. Աշխարհական — է, իմաստունը՝ —, բարեգործ մարդը միայն — է (ահարկու. սիրելի. յարգելի)։

29. *Գիտութիւնը պահուած է — մարդուն, հարըստութիւնը — մարդուն եւ երկինք — մարդուն* (ջանասէր. առաքինի. ճարպիկ)։

## ՀՐԱՀԱՆԳ Յ.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակագծին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել ։

1. *Մարթի ասել դիւցազնութենէ, զի կը բաղկանայ —, զորս — կը ներշնչեն — մէջ* (գեղեցիկ գործեր. մեծ պարագայներ. մեծ զգացումներ)։

2. *Մարդկային միտքն յիւրաքանչիւր քայլ նիւթէն կը հեռանայ, մարդն կը զարգացունէ անդադար իւր կեանքն. իւր նիւթական կեանքն՝ աւելի —, իւր մտաւորական կեանքն՝ աւելի —, իւր բարոյական կեանքն՝ աւելի. —* (գաղափարներով. զգացումներով. վայելումներով)։

3. *Մտաւորական յառաջադիմութիւնը — մէջ յառաջացում մի է, բարոյական յառաջադիմութիւնը — մէջ յառաջացում մի է* (ճշմարտին. բարւոյն)։

4. *Իմացականութեան քով, որ —, օժանդակ մի կայ, որ —. յիշողութիւնն է այն* (կը փնտռէ եւ կը գտնէ. կը հաւաքէ եւ կը պահէ)։

5. *Զի՞նչ կայ գեղեցկագոյն, կ'ըսէր Պարթէլըմի. —։ Զի՞նչ հզօրագոյն. —։ Զի՞նչ դժուարագոյն. —։ Զի՞նչ հազուագիւտ. —* (ծանօթութիւն անձին. տիեզերք. հարկն. ճշմարիտ բարեկամ մը)։

6. *Մարդու մի, որ կը հարցունէր թէ, երկու բարեկամներ ինչպէս պարտին գրել միմեանց, պատասխանեցին. — կարէ ըսել ամէն ինչ որ կը հաճի, յորժամ — կը թելադրէ* (միտքը. սիրտը)։

7. *Տէմոկրիտ կը պնդէր թէ, — ցնորք մի է. —*

կեղծաւորութիւն մի, — հաշիւ մի, — արեւուն մի խալուսիկ ճառագայթն է (բարերարութիւնը. բարեկամութիւնը. բարեպաշտութիւնը. յոյսը)։

8. Կին մի միշտ գեղեցիկ պիտի լինի, եթէ հաստատապէս ունի նա — իւր աչաց եւ ձայնին եղանակին մէջ, — իւր զարդուց մէջ, — իւր խօսից եւ կերպարանաց մէջ (քաղցրութիւն. համեստութիւն. ճաշակ եւ պարզութիւն)։

9. Տգիտութիւնը —, գիտութիւնը — (կը տարակուսի. կը հաստատէ կամ կը ժխտէ)։

10. Բնութիւնը — զմեծ մարդերն, դաստիարակութիւնը զանոնք —, բնութիւնը զանոնք —, (կսկսի. կ'անարգէ. կը կատարելագործէ)։

11. — մի ապագային իւր — գործն է միշտ (մօր. մանկան)։

12. Մարդը մեծ չէ այնու. —, այլ այնու — (զոր կը գործէ. որում կը ձեռնարկէ)։

13. Գեղեցիկ կին մի հաճելի է աչաց, բարի կին մի հաճելի է սրտի, առաջինը — մի է երկրորդը — մի (գոհար. գանձ)։

14. Որսը գտնելու համար շան էական յատկութիւնն՝ — է, նորա վերայ յարձակելու համար՝ — է (արագընթացութիւնն. քաջութիւնն)։

15. Դպրոցի մէջ — կը յաջողի ոք, աշխարհի մէջ (նկարագրով. մտօք)։

16. Ամէն դաստիարակութիւն որ միայն — կը դիմէ եւ — կրաւորական կը թողու, յոռի է եւ ամուլ ինչ որ ալ լինին նորա առերեւոյթ արդիւնքներն (իմացականութիւն. յիշողութիւն)։

17. Զգուշացիր — մարդէն, խոյս տուր — մարդէն (բարկացոտ. կեղծաւոր)։

18. Մեծ մարդիկ միշտ իւրեանց — ժառանգորդն

ունին, բայց դուն ուրեք իւրեանց — (իշխանութեան. հանճարոյն)։

19. Ոչ ոք կարէ առել զանձնէ իւրմէ թէ — է, եւթէ չէ — (երջանիկ. առաքինի)։

20 Մեք այս աշխարհի մէջ կը նմանիմք իւրեանց բունէն անջատեալ —, իւրեանց աղբիւրէն հեռացեալ —, իւրեանց հայրենիքէն հեռի թափառող —, առ ժամանակ մի հայրական ժառանգութենէն եւ տունէն մերժեալ —, ի մի բան, իւրեանց մարմինէն բաժանեալ — (անդամներու. պանդուխտներու. վտակներու. որդիներու) ոստերուն ։

21. Սիրտը կը բուժի յիւրոց վիրաց, բայց սալիք յուշ ածեն մեզ անդադար — յոյս մի, — երջանկութիւն մի (պատրեալ. կորուսեալ)։

22. — գեղեցկութիւնն յառաջ կը բերէ — գեղեցկութիւն (ոճոյ. զգացմանց)։

23. — վայելելու համար, փափուկ զգայարանք պէտք է. — վայելելու համար, փափուկ զգայարանք եւ միտք պէտք է (բանաստեղծութիւնը. երաժշտութիւնը)։

24. Ճշմարտութեան — բան է՝ աղօտացունելու համար բաղում դրութեանց — (լոյսն. մի ճառագայթն)։

25. — կը թեքէ զմիտս. — կը ջեռուցանէ զսիրտս. — կը միացունէ զհոգին Աստուծոյ հետ (սերն. խորհրդածութիւնն. զննութիւնն)։

26. — Ճշմարիտը կ'որոշեմք սուտէն, — գեղեցիկն՝ տգեղէն (ճաշակով. ուղիղ բանով)։

27. — լեզուին բնախօսութիւնն է, ինչպէս որ — նորա անդամազննութիւնն է (քերականութիւնը. հռետորութիւնը)։

28. Ամենուրեք այս ձայնը կը լսուի «մի՛ քննէք»․ պաշտօնեայն կ'ըսէ «մի՛ քննէք, այլ —»․ սեղանաւորը կ'ըսէ «մի՛ քննէք, այլ —»․ քահանայն կ'ըսէ «մի՛

քննէք, այլ — » (հաւատացէք. վճարեցէք. կատարեցէք)։

29. Կեանքն յարատեւ կռիւ մի է. միշտ կռուիլ մեր — է. յաղթել մեր — (նպատակն. պայմանն)։

30. Պէտք է — ըլլալ երկու տող ոտանաւոր մը շինելու համար, կ'ըսէ Սպանիական առած մի. պէտք է — ըլլալ չորս տող շինելու համար (յիմար. անմիտ)։

31. Աղքատութիւնը — մի է, մուրացկանութիւնը — մի (վիճակ. գործ)։

32. Օրէնսդիրը — է, որ շինած է զմեքենայն. դատաւորը — է, որ ի գործ արկանէ զայն (մեքենավարն. մեքենագործն)։

33. Թագաւորք պարտին կառավարել իւրեանց հըպատակներն — մի խանդաղատանօք, — մի արթուն խնամօք եւ — մի անակնածու արդարութեամբ (դատաւորի. հովուի. հօր)։

34. — Հարստութեան աջ եւ — ձախ ձեռքն է (տնտեսութիւնն. արուեստն)։

35. Նա որ թերի գիտութիւն մի ստացած է, կորուսած է — մէջ ինչ որ շահած է — մէջ. (խելամտութեան. զգացման)։

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակագծին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել։

1. Բանաստեղծութիւնն այն հրեղէն լեզուն եղաւ, որ ի կիր արկաւ — համար մարդոց սիրտն, զայն — համար ի դիւցազնական գործս կամ — համար ի վսեմ խոկմունս (բոցավառելու. բարձրացունելու. ձգելու)։

2. Փառքը կը գնուի ի գին —, զուարճութիւնն՝

ի գին —, նպաստն՝ ի գին — (անկախութեան. երջանկութեան. առողջութեան)։

3. Լաւագոյն օրէնքներն — են, երբ չեն գործադրուիր եւ — են, երբ գէշ գործադրուին (վտանգաւոր. անօգուտ)։

4. Հաստատամիտ մարդն ամէն բան — կը վերադրէ, եռանդնոտ մարդն՝ —, զգայուն մարդն՝ — (սիրոյ. երեւակայութեան. կամաց)։

5. — լեր ի գործս քո եւ — ի խոստմունս քո (հաւատարիմ. հաստատուն)։

6. Յիսուս Գողգոթա լեռը տարուեցաւ իւրեան — ունենալով զինուորներ եւ — երկու աւազակներ (ընկեր. ուղեկից)։

7. Արք միշտ գուն գործեն տիրել — եւ կանայք — (սնապարծութեամբ. հպարտութեամբ)։

8. Եթովպացիք զօրաւոր միտք ունէին, բայց սակաւ փոյթ ունէին զայն մշակելու, իւրեանց վստահութիւնն դնելով իւրեանց — մարմնոց եւ — բազկաց վերայ (ահաւոր. կաշմբուռն)։

9. Ամենայն ինչ կարեմք յուսալ թագաւորէ մի, որոյ խորհրդակից է —. զոր կ'ոգեւորէ — եւ որում ընկեր է — իւր գործոց մէջ (արիութիւնն. իմաստութիւնն. արդարութիւնն)։

10. Խօսքը վտանգաւորն է ի զէնս. հարուած — հեշտագոյն բուժի քան զհարուած — (լեզուի. նիզակի)։

11. — զմեզ կը մոլորեցունէ, — իսկ երբեմն կը խաբէ զմեզ, — երբեք չխաբէ զմեզ (գիտակցութիւնն. կիրքն. բանն)։

12. Բանը — աղէտից, քաջութիւնը — ընդ այնս եւ համակերպութիւնն — նոցա (կը յաղթէ. կը կռուի. կը հանդուրժէ)։

13. *Են մարդիկ, որոց իւրաքանչիւր — թշնամանք մի է եւ անցնիւր — խայթուած մի* (խօսքն. նայուածքն)։

14. *— կը գոհացունէ զբանն. — կը դիւթէ զճաշակն. — կը յափշտակէ զհոգին եւ կը տանի խորհրդոյ եւ զգացման բարձրագոյն գաւառներուն մէջ* (վսեմն. ճշմարիտն. գեղեցիկն)։

15. *Պէտք է որ — բնակի կնոջ սրտին մէջ, — փայլի նորա ճակտին վերայ, — հոսի նորա շրթներէն եւ — զբաղեցունէ նորա ձեռներն* (աշխատութիւնը. համեստութիւնը. առաքինութիւնը, քաղցրութիւնը)։

16. *Գաղափարները գրքի մի — են, ոճը նորա — է* (ատաղձն. ճարտարապետութիւնն)։

17. *Մատենագրի մի աղքատութիւնն իւր մտաց խթանն է, բայց խիթալի է, զի մի՛ գուցէ այդ աղքատութիւնը բառնայ նորա — էն բոլոր ինչ որ կ'աւելցունէ նորա — ին* (միտք. հոգի)։

18. *Քսենոփոն կը պատմէ թէ, Կիւրոս արգիլեց դնել զիւր մարմինն ի դագաղի, ուզելով օգտակար լինել —, ինչպէս օգտակար եղած էր —* (մարդկութեան. հողոյն)։

19. *Պէրիկլէս միտքը դրաւ մանաւանդ — ժողովրդեան բարեկեցութիւնը, — նորա իմացականութիւնը, — նորա հոգին եւ — նորա զգացումներն եւ կիրքերն* (մշակել. ապահովել. բարձրացունել. ազնուացունել)։

20. *Արարչութեան առաջին երգիչը կը գեղգեղէ իւր երգերն առ Յաւիտենականն, երբ գիշերոյ առաջին — եւ տուընջեան վերջին — գան ի վէգ ի բնութեան* (մրմունջք. լռութիւնք)։

21. *Մարդոյ իւրաքանչիւր տիք իւր զսպանակներն ունի, զորս պէտք է շարժել. բայց մարդ միշտ նոյնն է. ի տասնամենի կը հրապուրուի —, յերեսնամենի*

—, ի քառասնամենի —, ի յիսնամենի — (ի փառասի-րութենէ. ի կարկանդակաց. ի հաճոյից. յագահութե-նէ)։

22. Նա որ կուսակցութեանց մէջ կը խառնուի, ունելով միով ձեռամբ ճշմարտութեան — եւ միւսովն բանականութեան —, պիտի թշնամանուի յամենե-ցունց (հայելին. ջահն)։

23. Որպէս ձին ծնած է — համար, եզն — համար, շունն — համար, նոյնպէս ալ մարդն — համար (աշ-խատելու. արշաւելու. որսալու. հերկելու)։

24. Բանաստեղծութեան առաջին տարրն է —, որ մեր հոգւոյն առջեւ կը գծէ անցեալ եւ աներեւոյթ-իրերն. երկրորդ տարրն է —, որ կ'երգունէ այս ի-րերն յիշողութեան մէջ եւ զանոնք կը կենդանացունէ (երեւակայութիւնը. յիշողութիւնը)։

25. Մարդասիրութիւն ի գործս, — է. ի զգաց-մունս, — է (բարեսիրութիւն. բարերարութիւն)։

26. Ամենուրեք ուր — կը դադրի, — կ'անհե-տի. զի մին արդիւնք է միւսոյն (գեղեցկութիւնն. կարգն)։

27. Չընել այլոց, զոր ինչ ոչ կամիմք զի այլք մեզ ընեն, ահա —. ընել այլոց համար, յամենայն դէպս եւ ի բնաւ պատահարս, զոր ինչ կամիմք զի այլք ընեն մեզ, ահա — (գթութիւնն. արդարութիւնն)։

28. Մինչդեռ այս առատաձեռն թագուհին — մի ձեռնը բաշխելու համար իւր ինչքերն այս մեծ քա-ղաքին մէջ, միւսն ալ — օգնելու համար թշուառ գա-ւառաց (կը կարկառէր. կը բանար)։

29. Է Աստուած մի, դալարիք — եւ մայրիք — կ'օրհնեն զայն (լերանց. հովտին)։

30. Մարդկային օրէնքը գլխաւորաբար կը նկատէ —, բայց աստուածային օրէնքը կը նկատէ — (զդի-տաւորութիւնն. զգործն)։

31. Աշխարհիս հաճոյքները խաբուսիկ են, կը խոստանան առաւել քան զոր չեն տար. նոքա անհանգիստ կ'ընեն զմեզ, երբ զանոնք —, գոհ չեն ըներ զմեզ, երբ զանոնք — եւ կը յուսահատեցունեն զմեզ, երբ զանոնք — ( կ'ստանամ. կը կորուսանեմ. կը փնտռեմ )։

32. Մարդը միշտ — է, բաղդն — ( անիրաւ. արդար )։

33. Հեզնութիւնը դուն ուրեք —, միշտ — ( կը վիրաւորէ. կ'ուղղէ )։

34. Մօր մի սիրտն երբեք չծերանար. երբ դադարի նա —, յայն սակս է, զի դադարած է — ( բաբախել. սիրել )։

35. Երեկոյեան սպասէ — գովելու համար. մահուան սպասէ — գովելու համար ( կեանքը. օրը )

36. Ցորքան սիրտն — տածէ, միտքն — կը պահէ ( ցնորք. բաղձանք )։

37. Պատմութիւնն զմարդն — կ'ընէ, բանաստեղծութիւնն' —, չափական գիտութիւնք' —, փիլիսոփայութիւնն' —, բարոյականն' —, տրամաբանութիւնն' — ( նրբամիտ. վառվռուն. ուղղադատ. ծանրաբարոյ. խորախորհուրդ. հակաճառող )։

38. Մէկն որ — ունի, միեւնոյն ժամանակ — ունի ( կրկին կեանք. ճշմարիտ բարեկամ մի )։

39. Մեծամեծ գործողութեանց սկիզբը պէտք է յանձնել —, վախճանն ալ' — ( հարիւրաձեռնեայ Բրիարիոսի. հարիւրաչեայ Արգոսի)։

40. Ի՜նչպէս ախորժ է մարդոյն' հովանին ծառոյն, զոր ինքն —, հոտը ծաղկին, զոր ինքն —, համը պտղոյն, զոր ինքն — ( տնկեց. ցանեց. հասունցուց)։

41. Մեծ հոգիները միայն գիտեն' թէ որչափ — է մարդ, երբ — լինի ( բարի. երջանիկ )։

42. Պարտքերն յանձամ միայն — են, յորժամ — է կատարել զայնս (ծանրակշիռ. ծանրագին)։

43. — հիւանդութիւն մի է, որ — է աշխատութիւն. Հաճոյքն — մի է միայն (ամոքադեղ. ձանձրոյթն. դեղն)։

44. — այնպէս են մարմնոյն համար, ինչ որ են — հոգւոյն համար, վասն զի կը զօրացունեն զայն եւ ատակ կը գործեն մեծամեծ իրաց (աշխատութիւն եւ կրթանք. ուսումն եւ ջանք)։

45. Ամէն — մարդ — է (չարագործ. դատարկապորտ)։

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակածին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել։

1. Եպիկուրոսի բարոյականին անկ էր ծուլութեան հեշտութիւնն քարոզել. Քրիստոնէութիւնն իրաւամբք հարուածեց զայն իբրեւ — ընկերական կենաց, իբրեւ — իմացականութեան եւ իբրեւ — ամենայն մոլութեանց (ժանգ. թշնամի. աղբիւր)։

2. Միշտ —ը կը յաղթէ —ին (ճարտարագոյն. զօրաւորագոյն)։

3. Մարդ բնաւից բարիք — չկարէ, բայց կարէ բարութիւն — բոլորից (ցանկալ. գործել)։

4. Եթէ նկարիչ լինէի, կը նկարէի զԲարեգործութիւնն քող զգլխօք՝ իբրեւ —, եւ մատն ի շրթան՝ իբրեւ —, իսկ զԵրախտագիտութիւնն՝ ընդհակառակն՝ փող ի բերան իբրեւ — (զՀամբաւ. զԱմօթխածութիւն. զԼռութիւն)։

5. —ն ինչպէս նաեւ մայրութիւնը տեսակ մի — են (քահանայութիւն. ծերութիւն)։

6. Ով որ շատ — ունի, շատ — ունի (տեղեր. մոլութիւններ)։

7. — համար ներումն — դէմ դաւաճանութիւն է (առաքինութեան. մոլութեան)։

8. Սովորաբար մոլի մարդոյն յետին դժբախտութիւնն է — անզգայ լինել, ինչպէս Միհրդատ՝ — (թունին. խղճմտանաց)։

9. Ճշմարիտ արիութիւնն է միշտ որ ինչ պարտ լինել. հարկ չէ գրգռել զայն կամ ի չափու դնել. բարեբարոյ մարդն միշտ կը կրէ զայն յինքեան, ի պատերազմի՝ ընդդէմ —, ի ժողովի ուրեք ի նպաստ — եւ յանկողնի՝ ընդդէմ յարձակմանց —(թշնամւոյն. ցաւոց եւ մահու. բացակայից եւ ճշմարտութեան)։

10. — հոգւոյն — է (զանձն. առաքինութիւնն)։

11. Ամէն ինչ բարի կը լինի մարդոյն համար, երբ իւր կեանքն — կը հայցէ եւ զմեծութիւնն — (յաշխատութենէ. ի կրօնից)։

12. Հարուստներու —, դիւցազանց — եւ արքայից —, այս ամենայն կը վերջանան ԱՈՏ ՀԱՆԳՋիով (փառքն. ճոխութիւնն. մեծվայելչութիւնն)։

13. Երկար — երկար — է մահու (ակնկալութիւն. կեանքն)։

14. Զօրաւոր հոգւոյ գործ է — զմահ, ինչպէս նաեւ — զկեանս (արհամարհել. ատել)։

15. Ի՛նչ օգուտ ունի հեշտ կեանքն՝ եթէ — պայմաններով չառաջնորդէ զմեզ — մահու (բարձրագոյն եւ գերեզմանին. իմաստուն եւ քրիստոնէական)։

16. Մահն արդարոյն համար — մի է. իսկ մեղաւորին համար — մի (նաւահանգիստ. փոթորիկ)։

17. Աւելի պէտք է ագահ լինել — քան — (դրամի. ժամանակի)։

18. — բնութեան տեւողականութիւնն. իսկ — Աս-

տուծոյ տեւականութիւնն է (յաւիտենականութիւնն. ժամանակն)։

19. Ագահութիւնն գարշելի է, վասն զի — մտաց, — սրտի եւ — նկարագրի նշանն է այն (յոռի. անձուկ. հպարտ)։

20. Աղքատութեան — կը պակսի, իսկ ագահութեան — (շատ բան. ամէն բան)։

21. Աղտոտ հոգիներ կան որ գերի են — ինչպէս գեղեցիկ հոգիներն ալ՝ — (փառաց եւ առաքինութեան. շահու եւ վաստակի)։

22. Ինչ որ կը շռայլէ մարդ՝ — կը խլէ զայն եւ ինչ որ կծծութեամբ կը խնայէ՝ — կը բառնայ (յանձնէ. ժառանգորդէն)։

23. Զմարդիկ խողխողելով ոսկի առանալն — է, ծովու վտանգաց մէջ երթալ զայն փնտռելն — է, ապականութեամբ եւ մոլութեամբ զայն դիզելն է — (ոճիր. վատութիւն. յիմարութիւն)։

24. Դաստիարակութեան նպատակն է հայթայթել մարմնոյն այն —, զոր պարտի ունենալ եւ հոգւոյն, այն — որում ընդունակ է (զօրութիւնն. կատարելութիւնն)։

25. Վայելէ նախախնամութեան բարիքն, ահա. — տուր վայելել զայն եւ այլոց, ահա — (իմաստութիւն. առաքինութիւն)։

26. Առաքինութիւնը չէ — բնութեան կամ գիտութեան, այլ — աստուածութեան (պարգեւ. պտուղ)։

27. Եթէ առաքինութիւնը — վսեմագոյն խանդն չլինէր, — իմաստնագոյն հաշիւն պիտի լինէր (բանականութեան. սրտի)։

28. Պէտք է որ պատմագիրը լինի — իբրեւ զարդարութիւն, որ իրաւանց պարտի կալ պաշտպան եւ — իբրեւ ճշմարտութիւն, որոյ գործիքը լինել կը յաւակնի (անկեղծ. անխռով)։

## ՀՐԱՀԱՆԳ Թ.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ փակագծին մէջ գտնուած բառերէն յարմարագոյնը դնել:

1. *Ոչ թէ այն—այլ այն —, քան զամենեսեան ուսեալ կը համարուի* (որ շատ կ'ընթեռնու. որ օգտակար ընթերցմամբ կը պարապի):

2. *Ով որ իւր կեանքն ուղղութեան մէջ կ'անցունէ բազում — կունենայ., բայց — սակաւ* (բարեկամներ. ապնչականներ):

3. *Ազգերն յիւրեանց սրտից զինքեանս կառավարող Աստուծոյն կը հանեն կամ —, որ նորա հայեցուածոց ժպիտն եւ արգասաւոր օրհնութեանց ցօղը կ'ընդունի, կամ —, որ կուտայ նմա պատրաստել իւր ձեռաց մէջ այն սրան՝ որով կը շանթահարէ զնոսա* (հոտանոյշ առաքինութեան. անիրաւութեան քոյր մի):

4. *Ժողովրդեան առաքինութեանց համար — ինչ գործեցէք, ախտոյից համար՝ —, իսկ հաճոյից համար՝ —* (սակաւ. շատ. բաւական):

5. *Որքան խորհրդածէ ոք այս աստուածային մատենին վերայ (Աստուածաշունչ գրոց) այնքան առաւել հրաշալիներ կը գտնէ. խօսից — կ'սփոփէ ընթերցողին միտքն եւ իմաստից — կը բարձրացունէ զնա, նեցուկ լինելով նմա* (վսեմութեան. պարզութեան):

6. *Դիւրին է գտնել —, բայց — անգին արժէք ունին* (գիտուն շրթներ. ոսկի եւ ադամանդ):

7. *Գիտութեան նպատակն է — ճշմարտութիւն. իւր զբաղումն է — զայն, իւր նկարագիրն է — զայն, իսկ զայն ստանալու միջոցներն են ընդդէմ կալ կրից եւ փախչիլ յանգործութենէ եւ ի դանդաղաշատ մտաց* (սիրել. ճանաչել. հետազօտել):

8. Չար — կը բուժի, չար — չբուժիր բնաւ (համբաւը. վերքը)։

9. Բնական վիճակը — լինել չէ, այլ — (մարդ. թագաւոր)։

10. Մի թողուր բնաւ — բարեկամդ, վասն զի — մի բարեկամ չէ կարող նմին նման լինել (երեկեան. վաղեմի)։

11. Չարերն — ունին, հեշտասէրք — յարաբերութեան իւրեանց, դատարկապորտ արանց խմբակն —, իսկ առաքինի մարդիկ — ունին միայն (ընկերներ. մեղսակիցներ. յարաբերութեանց կապեր. բարեկամներ)։

12. — ընդ քարշ կ'ածէ զմարդ, բայց — կ'առաջնորդէ նմա (կիրքն. բանականութիւնն)։

13. — գործ է եւ ոչ —, երթալ ծածկուիլ խառոչի մի մէջ, մեծազանգուած շիրմի ներքեւ, բաղդին հարուածներէն խոյս տալու համար (առաքինութեան. վատութեան)։

14. Ամէն ճշմարտութիւնք յարմարաւոր չեն —, այլ միշտ բարւոք են — (ի խօսել. ի լսել)։

15. Մահը վախճանն է մեր զգայութեանց —, մեր ըղձից —, մեր խորհրդոց — եւ մեր մարմնոյն — (կռուոյն. մոլորմանց. ծառայութեանց. ցնցմանց)։

16. — բոլոր ժողովրդոց որրանին քով կը գտնուի ինչպէս կը գտնուի — նոցա գերեզմանին քով (փիլիսոփայութիւնը. կրօնքը)։

17. Ամէն անգամ որ մարդ կը յարձակի կրօնի դէմ, ոչ թէ —, այլ իւր — են, որ կը սադրեն զնա (կիրքերն բանականութիւնն)։

18. Կրօնքը միայն կարէ կազմել — քաղաքացիներ, — հպատակներ, — սպասաւորներ, — տէրեր, — դատաւորներ, — իշխաններ եւ — բարեկամներ (բարի. համբերատար. հաւատարիմ. գթած. անկաշառ. խոնարհ. ճշմարիտ)։

19. Այն որ աղօթել կուզէ, պարտի — չար խորհուրդներն եւ ամէն երկրաւոր ցանկութիւն, — զսիրտն յերկինս, — զնախատինս եւ — իւր թշնամեաց (բարձրացունել, վտարել ի մտաց. ներել. մոռանալ)։

20. Աղօթքն — զմեզ ի վեր քան զկիս երեւելիս, — մեր ոխն ու քէնն, — մեր վիշտերն, եւ առաւել — զմեզ ընդդէմ փորձանաց (կ'ամբառնայ. կ'սփոփէ. կը հանդարտէ. կը սրտապնդէ)։

21. Պարզաբար ըսելով — այն հոգին է որ հասու կը լինի, — այն հոգին՝ որ կ'զգայ, — այն հոգին՝ որ կը յիշէ, — այն հոգին՝ որ կը գումարէ, — այն հոգին՝ որ ուղիղ կը տեսնէ. եւ — այն հոգին՝ որ կ'ընտրէ (յիշողութիւնն. ըմբռնողութիւնն. զգացողութիւնն. երեւակայութիւնն. կամքն. դատողութիւնն)։

22. — չէ որ կը խաբէ, այլ — (դատողութիւնն. բանականութիւնն)։

23. Նա որ գտաւ — մի, — մի գ'տաւ (զանձ. առաքինի. կին)։

24 Կնոջ արժանաւորութիւնն է անծանօթ լինել. իւր — ամուսնոյն մեծարանաց մէջ է. իսկ իւր — ընտանեացն երջանկութեան մէջ (հանոյքն. փառքն)։

25. Այն հոգին որ գերի է կրից եւ ի հոգւոց կը տառապի, չճանչեր բնաւ զերջանկութիւն, նորա համար պալատ եւ գանձ այնպէս են, ինչպէս է — հիւանդ աչաց համար, կամ — ցաւոտ ականջաց համար (նկարչութիւնն. երաժշտութիւնն)։

26. Չիք — անդ ուր չիք հանգիստ, եւ չիք հանգիստ անդ ուր չիք — (Աստուած. երջանկութիւն)։

27. Կ'ըսէք թէ կը սիրէք, եւ սակայն կան բազմաթիւ — որք անօգնական կը ծիւրին կը ծնգին իւրեանց թշուառ անկողնոյն վերայ, —՝ որք կուլան չունենալով զոք ողբակից, —՝ որք ցրտէն ընդար-

մացեալ, դանէ ի գուռն կ'երթան ; հարուստներն իրենց սեղանոյն մի փշուրը խնդրելու եւ չեն ընդունիր (չուառ. հիւանդ. մատաղ մանկունք)։

28. Մտաց մեծութիւնը — չչափուիր այլ — (կարծեաց ճշմարտութեամբ. տարածութեամբ։



## ՀՐԱՀԱՆԳ Դ.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ դնել այն բառն զոր պարբերութեան իմաստը կը պահանջէ: Շեղագիր բառն առընչութիւն ունի այն բառին կամ բառերուն հետ զորս պիտի գտնէ .

1. *Աստուած է որ կը վարձատրէ բարիներն, որ կը պատժէ —, որ կը մխիթեցունէ —, որ կը հասունցունէ — որ կը դեղնեցունէ —, որ կը ծագէ —, որ կը գոռացունէ —, որ կը հոսեցունէ —, որ կ'ընդոստուցանէ —, որ դալարագեղ կը զարդարէ —։*

2. *Մարդիկ հանճարեղ են ի խորհել զանձինս՝ իւրեանց թերութեանց մէջ. երկչոտն ինքզինքը խոհեմ կը կարծէ, ագահը՝ —, շռայլը՝ անշահասէր, յանդըգնութիւնը — կը կոչուի, յամառութիւնը՝ —, բարկութիւնը՝ —, հպարտութիւնը՝ —, շատախօսութիւնը՝ — տկարութիւնը՝ —, տմարդութիւնը՝ —։*

3. *Աստուած ստեղծեց խոտը մարգագետնին համար, — դաշտին համար, — օդոյն համար, — բունին համար ։*

4. *Ամէն ծառ իւր կանաչութիւնն ունի —, ամէն մեղու իւր —, ամէն ալիք իւր —, ամէն շիրիմ իւր —։*

5. *Սոկրատ միշտ մարդոց ամենէն առաքինին երեւեցաւ. եթէ բարի գործ մի ընէր չէ՛ր պարծեր ընդ այն, եթէ նախատինք մի կրէր —, եթէ տեսնէր զիւր թշնամին անկեալ ի վտանգ —, եթէ ճախորդութիւն մի պատահէր իւրեան —։*

6. Դպրութիւնք կը գեղեցկացունեն կեանքն, կը զարդարեն —, կը բարձրացունեն —, կը կրթեն —, կ'ազնուացունեն —, կը փարատեն —, կ'ամոքեն — եւ կը հայթայթեն բիւր —:

7. Հիւանդ՝ յայնժամ կը ճանչնամք առողջութեան յարգը, գերի՝ — յարգը, սնանկացեալ՝ — յարգը, ի գահու՝ — յարգը, զառամեալ՝ — երջանկութիւնը, լքեալ՝ թէ ինչ կ'արժէ — մի, անպատիւ՝ թէ ինչ կ'արժէ —, զրկեալ ի մատենից՝ թէ ինչ կ'արժէ —:

8. Գերագոյն զօրութեան վերայ իւրեանց ունեցած վստահութեան զգացումը կը լեցունէր զանոնք մխիթարութեամբ անցելոյն համար, արիութեամբ՝ — համար եւ յուսով — համար:

9. Դատողութեան մոլութիւններէն մին է շփոթել իրերը իւրեանց զեղծման հետ, տարակոյս եւ անհաւատութիւն, կրօնք եւ —, ազատութիւն եւ —:

10. Շռայլն կը նախաճաշէ առատութեան հետ, կը ճաշէ — հետ, կ'ընթրէ — հետ:

11. Տպագրութիւնը չհնարուեցաւ գրագէտ մի, ոչ բեւեռացոյցը —, ոչ հեռադէտն —, ոչ մանրադէտն —, ոչ վառօդն —:

12. Տեսնել զնպատակն՝ առ որ կը ձգտի ոք, դատողութիւն է, հասանել այնմ՝ — է, զկայ առնուլ անդ՝ — է, անցանել անդր քան զնպատակն՝ — է:

13. Աստուած իմ, ջուր տուր աղբերաց, փետուր՝ —, գեղմն՝ —, ստուեր եւ ցօղ՝ —, առողջութիւն՝ —, հաց — բնակարան՝ —, ազատութիւն՝ —:

14. Բարեկամութիւնը ներկայ կ'ընէ բացակայները, կը հարստացունէ —, կը զօրացունէ —, կը վերակենդանացունէ —:

15. Երբ բարեկամդ չքաւոր է, դու առատաձեռն լեր. երբ — է, օգնէ նմա. երբ — է, լուսաւորէ

զայն. երբ այլք — զայն, դու ճշմարիտն ասա նմա. երբ այլք — զայն, դու մխիթարէ զայն. երբ —, —, — չունի, մասնակից արա զայն քո տանն, քո հանդերձին եւ քո սեղանոյն եւ յայնժամ զքեզ առաքինի պիտի կոչեմ։

16. Աստուած իւրաքանչիւր ումեք զէնք մի տուաւ, առիւծուց՝ ոյժ, —՝ ահաւոր մագիլներ, —՝ եղջիւրներ, — խայթոց մի եւ —՝ բանականութիւն։

17. Յառաջադիմութիւնը կը ձգտի յար բարձրացունել զփոքրն, — զաղքատն, — զտգեղն, — տալ տգիտին եւ ոչ թէ — զմեծն, — զհարուստն, — զգեղեցիկն, — զհանճարեղն։

18. Տիւրէն մեծ էր դժուարութեանց մէջ իւր խոհեմութեամբն, — մէջ իւր քաջութեամբն, — մէջ իւր համեստութեամբն —, մէջ իւր արիութեամբն —։

19. Լաւագոյն է կորուսանել խնձորը, քան թէ նորա ծառը, ձուն քան թէ —, բուրդը քան թէ —։

20. Ամէն ազգ ամէն ժողովուրդ արեգական տակ ունի իւր սեպհական բնակավայրն։ Նա որ արծուոյն օթեւան տուած է երկնաբերձ քարաժայռից մրրկածեծ կատարն, — սաղարթախիտ ծառոց թեւերն, — իւր մենաւոր անտառներն, յորս իւր մռունչներն ամպագոռ որոտմանց հետ կը մրցին, — իւր գետնափոր սրահներն եւ — մէջ բաժնած է ծովուց անծայր եւ անյատակ անդունդներն, նա մարդկային ազանց իւրաքանչիւրին ալ իւր բաժինն տուած է երկրագնդիս հողէն, ջրէն ու օդէն։

21. Մեծ մայրաքաղաքներէն շատերն անդամամարզըննաց համար ամփիթատրոններ ունին. բնապատմաց համար —, գրագիտաց համար —, արուեստագիտաց համար —, որք ամէն միջոց կը հայթայթեն անոնց եւ կ'օգնեն յառաջ երթալու համար իւրեանց մասնագիտութեանց մէջ։

22. Կնոջ մը վերայ — կարէ աւելի սիրելի լինել քան թէ — , երբ բարութեամբ կը համակչռէ։

23. Իւր նախահայրներով պարծիլն, արմատոց մէջ փնտռել է այն պտուղներն, զորս պէտք էր — վերայ գտնել։

24. Կարողոս Թ. արհեստաւորաց հարստութեան խնդրոյն մէջ կ'ըսէր թէ պէտք է նոցա հետ այնպէս վարուիլ որպէս կը վարուիմք այն ձիոց հետ որոց օգտակարապէս մեզ ծառայելն կ'ուզեմք. լաւ սնուցանել զանոնք եւ բնաւ չափազանց — ։

25. Գեղեցիկ օր մի խնձոյք մի է զոր երկինք կուտայ — ։

26. Կեանքն ուղեւորութիւն մի է զոր կ'ընեմք երբ — . կը ճանապարհորդեմք ցորքան կ'ապրիմք. եւ զկայ առնումք, հանգչելու համար, երբ — ։

27. Բնութեան օրինաց հակառակ է անագան ելնել. առաւօտեան օդը կը զովացունէ ուղեղն, — թոքերն, — մարմինն, — ախորժակն։

28. Խօսիլն, սերմանել է. —, հնձել։

29. Մարդն զգաց զի տէր էր եղջերուին որ կ'ընթանայր, թռչնոյն որ — , ձկան որ —, այծեման որ — ։

30. Վայրենի մի աւելի յարած է իւր — քան իշխան մի իւր պալատան։

31. Տկար մարդիկ կ'ոռնան գայլոց հետ, կը զռան — հետ, կը մայեն — հետ, եւ ամէն կուսակցութեան կուսակից են։

32. Ինչ որ կը ներգործէ հիւանդութիւնն մարմնոյն վերայ, ժանգն՝ — , ցեցն — , որդն՝ — , զնոյն կը ներգործէ մոլութիւնն — վերայ։

33. Ջուրերն — կ'ընթանան, օրերն ի յաւիտենականութիւն։

34. Մշակութեան համար պարարտ հող պէտք է,

*աջողակ սերմանացան եւ ընտիր սերմանիք. դաստիարակութեան մէջ ալ հողը բնութիւնն է, — սերմանացան, եւ — սերմանիք են։*

## ՀՐԱՀԱՆԳ 8.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ դնել բառ մի զոր պարբերութեան իմաստը կը պահանջէ։

1. *Ոսկին կը բանայ ամէն —, կը խաղաղէ ամէն —, կը հարթէ ամէն —, գեղեցկութիւն կուտայ —, խելք՝ —, պատիւ՝ —, անմեղութիւն՝ —, իմաստութիւն՝ —, գիտութիւն՝ —, քաջութիւն՝ —։*

2. *Յիսուս Քրիստոս կը մխիթարէր —, կը բժշկէր —, ի հաւատս կը դարձնէր —, կեանք կուտար —, լոյս՝ —, խօսք՝ —։*

3. *Չիք վարդ առանց —, երկինք առանց —, ծով առանց —, երջանկութիւն առանց —։*

4. *Պէտք է անօթին —, մերկը —, հիւանդը —, վշտացեալը —, տգէտը —։*

5. *Ծեր զօրապետ մը միշտ ուրախութեամբ կը յիշէ այն պատերազմներն՝ զորս —, այն յաղթութիւններն՝ զորս —, այն թշնամիներն՝ որոց —, այն գերիներն՝ զորս —, այն դրօշակներն՝ զորս — թշնամիներէն, այն խաղաղութեան դաշինք՝ զորս —, այն պատիւներն՝ զորս — եւ այն վարձատրութիւններն՝ զորս իւր հայրենիքն — իւրեան. բայց վշտով կը յիշէ այն քաղաքներն՝ զորս —, այն դաշտերն՝ զորս —, այն արիւնը՝ զոր —, այն մայրերը՝ զորս —, այն այրիներն՝ զորս դրկեց իւրեանց —, այն որբերն՝ յորոց առաւ —։*

6. *Մարդիկ ոմանք — ունին եւ չեն տեսներ, —*

*ունին եւ չեն լսեր, — ունին եւ չեն խօսիր, — ունին եւ չեն քալեր, — ունին եւ չեն բռներ։*

7. *Բնութիւնը կը պահանջէ որ, ամէն ձեռքի մէջ մի գործի լինի, նաւավարն՝ իւր — ունենայ. մշակն՝ իւր —. երկաթագործն՝ իւր — կօշկակարն՝ իւր —. հիւսնն՝ իւր —. երկրաչափն ու ճարտարապետն՝ իւրեանց —. մեքենագործն՝ իւր —. բժիշկն՝ իւր —. նկարիչն՝ իւր —. արձանագործն՝ իւր —. երաժիշտն՝ իւր —. կինն՝ իւր —. մատենագիրն՝ իւր —. վատ ու անարժան է անգործի ձեռնն, պէտք է որ գտանայ այն։*

8. *Զուարճալի է լսել — մի խօսիլն զարիութենէ, — մի՝ զժուժկալութենէ, — մի՝ զլուսոյ, — մի՝ զներդաշնակութենէ, — մի՝ զխոնարհութենէ, — մի՝ զանկեղծութենէ, — մի՝ զկրօնից, անձնասիրի մի՝ զվեհանձնութենէ։*

9. *Մի՛ խօսիք ձեր — վերայ հիւանդի մի առջեւ, ոչ ալ ձեր — վերայ թշուառի մի առջեւ։*

10. *Մարդիկ ամէն բան չարաչար գործածեցին. — ի նոցանէ թոյն շինելու համար, —՝ գինովնալու համար, —՝ զիրեարս սպաննելու համար, —՝ զինքեանս ապականելու համար։*

11. *Աստուծոյ աչքն եւ ընկերին աչքն նոյն են. երկու — են, որ կը բղխին միեւնոյն աղբերէ. երկու —, որ կը փթթին միեւնոյն ցօղնոյն վերայ։*

12. *Զտիւ եւ զգիշեր նաւաստին խաղալիկ է տարերաց. հուրը միշտ պատրաստ է — նորա նաւը. օդն՝ զայն —, ջուրն՝ զայն — եւ ցամաքն՝ զայն —։*

14. *Մարդիկ կը գթան յիմարին վերայ, բայց երբ նորա —ը — կ՚ըլլայ, կը կապեն զայն։*

15. *Տգէտը միշտ հարկատու պիտի ըլլայ —, ինչպէս ծոյլն —։*

16. Մանկունք ալ իւրեանց վիշտերն ունին, բայց վաղանցիկ են. նոցա ծիծաղը կը փայլի — մէջէն, ինչպէս արեւուն մի ճաճանչն — մէջէն։

17. —ին կորուստն կը դարմանուի. —ին կորուստն անդարմանելի է։

18. Աղեքսանդր դիւցազն մի է ոչ առ այն զի մեծ աշխարհակալ մի եղաւ, այլ առ այն զի — փոխանակ կործանելու եւ — փոխանակ անասնացունելու։

19. Ժառանգական ազնուականութիւնը շատ օրինաւոր պիտի լինէր, եթէ հարք տային որդւոց՝ իւրեանց — իւրեանց — հետ։

20. Կանայք ընկերութեան զարդն են, պալատ մի առանց —, կ'ըսէր Փրանկիսկոս Ա., գարուն մի է առանց —։

21. Չիք ինչ հաստատուն մարդկային ճակատագրին մէջ. յաջողութիւն մի հասարակօրէն դրուած է երկու — մէջտեղ. վիշտ մի երկու — մէջտեղ եւ այս մշտընջենաւոր խառնումով կեանքը կը սահի։

22. Երջանկութիւնը կը նմանի հայելւոյն ցոլացուցած պատկերին. միշտ — զայն, բայց երբեք —։

23. Մօսթալոի ամիրապետին զօրավարն Մէլիք գերի բռնելով Յունաց Ալեքս Կոմնենոս կայսրը, հարցուց նմա թէ, ինչպէս իրեն հետ վարուի. «Եթէ իբր — կը պատերազմիս, պատասխանեց կայսրն վեհանձնութեամբ, զիս իմ հայրենիքս ղրկէ. եթէ իբր — կը պատերազմիս, վաճառէ զիս. եթէ իբր — կը պատերազմիս, սպաննէ զիս.» Տաճիկ զօրավարն առանց փրկանաց զայն արձակեց։

24. Ամէն անգամ որ կեանքէն մեկնելու փորձ փորձես, գնա փնտռէ — մի օգնելու համար, — մի զայն մխիթարելու համար, — մի զայն պաշտպանելու համար։

25. — ու պիտի տրուի ձեզ. — ու պիտի գտնէք.

— պիտի բացուի ձեզ։

26. Հոգեփոխութիւնը կ'ուսուցանէր զի մեր հոգին, յետ մահուան, կ'անցնի ի մարմին այն անասնոց, որոց բարի կամ չար բնազդումներն ունեցանք ի կենդանութեան. հոգին քաջի ուրուք կ'անցնի ի մարմին — միոյ կամ —. իսկ հոգին ժանտի ուրուք՝ ի մարմին — միոյ կամ —։

27. Որքան կարճատեւ ըլլայ կեանք մի, — կ'ապրի մարդ, երբոր — խորհի։

28. Երբ թութակներն կը կրկնեն պարբերութիւններ զորս մարդիկ ուսուցած են նոցա, յայտ է թէ այն պարբերութեանց — գիտեն եւ ոչ թէ —։

29. Արիստոտէլ սովոր էր ըսել իւր բարեկամաց եւ իւր աշակերտաց թէ գիտութիւնը — նկատմամբ նոյն է ինչ որ է լոյսը — նկատմամբ։

30. Դատաւորն, — վերայ յեցեալ, մեզ կը ցուցունէ արդէն ընկերական վիճակին առաջին երկու սիւներն. ընդ հուպ մի երրորդ սիւն ալ պիտի գտնեմք, մարտիկն — վերայ յեցեալ։

31. Խուժանը սովորած է յաճախ չփոթել գլուխն՝ որ —, բաղկին հետ որ —։

32. Ինչ որ է — հողոյն համար, նոյնն — է հոգւոյն համար։

33. Պէտք է որ մարդ իւր ականջօք — եւ իւր աչօք —, երբ խնդիրն ո եւ է ուրուք համբաւոյն վերայ վճիռ տալ է։

34. Կ'ըսէք թէ կը սիրէք, եւ բազումք յեղբարց ձերոց չունին — յագենալու համար, չունին — իւրեանց մերկ անդամները ծածկելու համար, չունին — մի պատսպարուելու համար, ափ մի — վերան ննջելու համար. մինչդեռ դուք ունիք զամէն ինչ յորդառատ։

## ԱՌԸՆՉՈՒԹԻՒՆ Ի ՄԷՋ ԲԱՌԻՑ

*Բառից պատշաճութեան համար տրուած նախընթաց հրահանգներուն մէջ, դժուարութեան առարկայ եղող բառք՝ յաճախ իրերաց քով դըրուած էին, երկրորդն առաջնոյն լրացուցիչ. բայց միշտ այսպէս չպատահիր խօսից մէջ. յաճախ դէպ լինի զի այն բառք որ առընչութիւն ունին ընդ իրեարս, բաւական հեռի կը գտնուին ի միմեանց։*

*Բացատրեմք.*

*Չէ կարելի մարդոց վշտակրիլ կամ բերկրիլ առանց այլում հաղորդելու իւր — կամ իւր — (վիշտն. բերկրութիւնն)։*

*Սոյն պարբերութեան մէջ պէտք է վիշտն յառաջ դնել քան զբերկրութիւն. քանզի այն բառն, այսինքն վշտակրիլն ընդ որում առընչութիւն ունի վիշտն յառաջ դրուած է քան զբերկրիլն. ուստի պէտք է ըսել։*

*Չէ կարելի մարդոյ վշտակրիլ կամ բերկրիլ առանց այլում հաղորդելու իւր վիշտն կամ իւր բերկրութիւնն։*

*Նոյնպէս,*

*Աստուած, միշտ — եւ —, կը պատժէ եւ կը վարձատրէ (բարի. արդար)։ Առաջին գծին տեղ պէտք է դնել այն բառն որ պատժելուն հետ առընչութիւն ունի, այսինքն արդարը, իսկ երկրորդ գծին տեղ բարի բառն՝ որ վարձատրելուն հետ ունի աղերս. ուստի պէտք է ըսել,*

*Աստուած, միշտ արդար եւ բարի, կը պատժէ եւ կը վարձատրէ։*

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտն պարտի իւրաքանչիւր գծին տեղ դնել փակագծին մէջ գտնուած բառերէն զայն զոր պարբերութեան իմաստն ու յստակութիւնը կը պահանջեն :

*1. —՝ — էն առաջ դնելն՝ աւելորդը կարեւորէն առաջ դնել է (միտք. ուղիղ բան)։*

*2. Իւրաքանչիւր դէպք, անձնիւր մարդ, մէն մի գործ երկու դէմք ունի. մին լուրջ, միւսը ծաղրական.— դիմակն եւ — դիմակն (Թալիայ. Մելպոմենի)։*

*3. Կանայք ոմանք ոգանչելապէս կը հաշտեցունեն աշխարհն եւ եկեղեցին, — եւ — (ապաշխարութիւն. զղջանք)։*

*4. Այս հեշտալի վայրին մէջ գարուն եւ աշուն կը տիրեն ի միասին, զօդելու համար անդ ընդ միմեանս — եւ — (ծաղիկները. պտուղները)։*

*5. Մարդիկ այնքան յեղյեղուկ են զի կը կործանեն յետ հիմնելու, եւ — ժամանակի մի մէջ ինչ որ — ուրիշ ժամանակի մէջ (կ'այրեն. պաշտեցին)։*

*6. Նաւաբեկիլ — նման է նաւաբեկելու —. կը կորուսանեմք մարմին եւ հոգի փոխանակ կորուսանելու մարմին եւ ինչք. ահա բովանդակ խտրոցն (ի ցամաքի. ի ծովու)։*

*7. Խորհրդարանական վարչութիւնն յաջորդեց զինուորական վարչութեան եւ — ը բարձրացաւ — ին տեղ (բեմ. կռուանոց)։*

*8. Կրօնք եւ բարոյական երկու մեծ միջոցներ են. մին — եւ միւսն —, ի ձեռն որոց մարդ կարէ լաւագոյն լինել եւ հետեւաբար երջանիկ (մարդկային. երկնային)։*

*9. Մատեանք հայելի են. եթէ հայելին ջինջ է, հաւասար գեղով կը ցոլացունէ պալատ մի եւ խրճիթ*

մի · — մի սիրտն եւ — մի սիրտն (դշխոյի · հով-ուուհւոյ)։

10. Եթէ դու ունէիր այնքան փափկութիւն քո — մէջ որքան քո — մէջ, սուտութիւն մի այնքան անհաճոյ պիտի լինէր քեզ որքան սխալ ձայն մի (ականջաց · սրտին)։

11. Մի բարի մարդու միայն ձայնը պարտի նախընտիր լինել քան տասն չար մարդոցն. յայսմ պարագա-յի պարտ է — ձայները քան — (կշռել · հաշուել)։

12. Աստուծոյ անուան մէջ վեհ բան մի կայ որ մեծաշուք պերճութիւն մի կուտայ ոճոյն, այնպէս որ ամենէն — մատենագիրը գրեթէ միշտ ամենէն —ն է (պերճախօս · բարեպաշտ)։

13. Իրք փոքունք կը ծնին մեծամեծ իրեր որպէս — կը գործեն — (վտակներ · գետեր)

14. Նա — կամ — մէջ էր, ըստ այնմ զի երկիւղը կամ յոյսը կ'առաւելոյր (արտասուաց · ուրախութեան)։

15. Երերականք (quaker) ոչ դատաւոր ունին եւ ոչ բժիշկ, եւ կ'ապրին ազատ — եւ — (ի կռուոց · ի հի-ւանդութեանց)։

16. Իմաստասէրք աւելի անդամազնին են քան բժիշկ, — ու — (չեն բուժեր · կ'անդամահերձեն)։

17. Սէրը կը չափուի յարգանքէն, կ'ըսէ Սիլվիօ Բելլիքօ. շատ — ու համար զմարդկութիւնն, պէտք է շատ — զայն (յարգել · սիրել)։

18. Միտքն հանճարին քով այն է ինչ որ է —ը — ին քով (կճածեփ · մարմարիոն)։

19. Նախնի փռանկ թագաւորները խելամուտ եղան զի բարբարոսութիւն եւ քրիստոնէութիւն, — տարըն-թեր —, չկարէին երթալ ընդ մի եւ նոյն դրօշու (բարբարոսութիւն · քաղաքակրթութիւն)։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի իւրաքանչիւր գծին տեղ՝ դնել փակագծին մէջ գտնուած բառերէն զայն զոր պարբերութեան իմաստն ու յստակութիւնը կը պահանջեն ։

*1. Ժուժկալութիւնը — մի եւ միանգամայն — մի է, քանզի մարմնոյն առողջութիւն կուտայ եւ հոգւոյն՝ կարեւոր հանդարտութիւն երջանկութեան հասնելու համար (առողջապահիկ orkնf․ առաfինութիւն)։*

*2. Փառամոլութիւնն աւելի դիւրութեամբ կը գրաւէ փոքրիկ ոգիները քան մեծ ոգիներն, ինչպէս հրդեհն աւելի հեշտիւ կը ճարակէ — քան — (պալաsներն․ հիւղակներն)։*

*3. Մարմնաւոր իրերն անմարմին իրաց պատկերն են. եւ Աստուած կամեցաւ — իրաց մէջ ներկայացունել — իրերն (աներեւոյթ․ երեւելի)։*

*4. Երբ Աստուած թագաւորներ կուտայ աշխարհի, մարթի ասել զի բարիք կամ հասարակաց պատուհաններ են նոքա զորս իւր — կամ — կը պատրաստէ ժողովրդոց (արդարութիւնը․ գթութիւնը)։*

*5. Աղեքսանդր կ'ըսէր յաճախ. «Ես աւելի պարտական չեմ Փիլիպպոսի քան Արիստոտէլի. զի եթէ միումն — կը պարտիմ, միւսումն կը պարտիմ — (կեանf․ առաfինութիւն)։*

*6. Պարտ է մարդոյ չափով ուրախանալ եւ չափով տրտմիլ, վասն զի կեանքը խառնուրդ է — եւ — (թerկrանաց․ վշsաց)։*

*7. Լաւ է ներել քան վրէժ առնուլ, վասն զի մին արգասիք է — բարուց, միւսն — բնութեան (վայrագ եւ զազանային․ հեզ եւ մարդասէr)։*

*8. Քրիստոնէական կրօնքն երջանկութեան փիլիսոփայութիւնն է. իսկ մեր նոր փիլիսոփայութիւնն*

հաճոյից կրօնքն է. մին —, միւսն — (դառն դեղ է բայց առողջարար. կերակուր է ախորժահամ բայց առողջութեան վնասակար)։

9. Աղօթքը նուազ ցուպին կը գործէ զտառապանս եւ առաւել անբիծ զուրախութիւնն. ընդ միումն կը խառնէ չգիտեմ որպիսի —, եւ ընդ միւսումն — (երկնային բուրում մի. զօրաւոր եւ քաղցր բան մի)։

10. Երկնային արդարութիւնը թոյլ չտար երբեք զի — եւ — յաղթանակ կանգնեն անմեղութեան եւ իրաւանց վերայ (ոճիրը. անիրաւութիւնը)։

11. Գիտուն բարեկիրթ աղջիկ, գիտուն բարեկիրթ մայր, գիտուն բարեկիրթ մայր, գիտուն բարեկիրթ զաւակ։ Ուրեմն — եւ — աղջկանց (բարեկրթութիւն. գիտութիւն։

12. Հնութիւնը կը բաժնէր զմարդկութիւնն երկու ջոկերու, երկու զատ եւ ուրիշ ցեղերու. մին յաւէտ հրամայելու համար եկած, միւսն միշտ հնազանդելու համար. մին — համար, միւսն — համար (խարազանի. ծանրանուր աշխատութեան)։

13. Զգայուն մարդն այնու կ'որոշուի սնափառ մարդէն զի առաջինը կը խնդրէ որ — զինքն, մինչդեռ երկրորդը կ'ուզէ որ — զինքն (նախամեծար համարեն. սիրեն)։

14. — հանելով — ու դէմ կը նմանիմք թզկի մի որ կը բաղխի ընդ հսկայի ումեք (ուղիղ սկզբունքներ. իմաստակութիւններ)։

15. Բախտը կապած է զմեծութիւնն ի ծայր շղթայի. չէ հնար ումեք — զմին առանց — ու զմիւսն (կրել. ստանալ)։

16. — աւելի պինդ կը բռնեն զմարդիկ քան —. նոցա համար յոյսը շղթայ մի է՝ եւ երախտագիտութիւնը դերձան մի (խոստումներն. բարերարութիւններն)։

17. Մարդն՝ որ կը ճառէ զԱստուծոյ, նուազ խելք ունի քան զ— մի որ պիտի ճառէր —է (փիղ. միջատ)։

18. Երկրագործութիւնն ի մեծ պատուի էր ի Չինաստան եւ ի Հռոմ. — եւ — սորա ապացոյց են (աւանդական ակօսն. Կինկինատոսի արօրը)։

19. Չէ պարտ չփոթել ընդ միմեանս — եւ —, եւ թերութիւն մի բարեմասնութիւն ընել (անկեղծութիւնն. անխորհրդապահութիւնն)։

20. Ներշնչենք երախտագիտութիւն, այլ իբր պարտք չդնենք զայն ուրուք վերայ. Թող — մի լինի այն, երբեք — մի (զօդ. շղթայ)։

## ԿԱՐԳ ԳԱՂԱՓԱՐԱՑ

Հ. Ի՞նչ է գաղափարաց կարգն.

Պ. Պարբերութեան մի այլ և այլ նախադասութեանց մէջ բնական կարգ մի կայ գաղափարաց զոր չէ օրէն տեղափոխել. պէտք է իւրաքանչիւր գաղափարին իւր պատշաճ տեղը տալ, այնպէս որ առաջինն պատրաստէ և բերէ զերկրորդն, երկրորդն՝ ալ զերրորդն, և այսպէս կազմեն մի շղթայ որոյ օղակները բռնած ըլլան զիրեարս. զոր օրինակ,

Յոյնք պաշարեցին, առին եւ կործանեցին Տրովադա քաղաքն։

Այս պարբերութիւնը կը պարունակէ երեք բայ, երեք գործողութիւնք որք բացատրուած այնու կարգաւ որով գործուած են. զի քաղաք

*մի առնլու համար, պէտք է նախ սկսիլ պաշարել զայն, եւ յետ առնլու մարթ է կործանել զայն։ Ուստի անքնական և սխալ պիտի լինէր եթէ ըսէինք.*

*Ցոյնք կործանեցին, պաշարեցին եւ առին Տրովադա քաղաքը։*

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի բնական կարգի վերածել հետեւեալ պարբերութեանց մէջ շեղագիր գոյականները կամ բայերն։

1. *Ամէն տարի ծառք կը ծածկուին* սաղարթներով, պտուղներով, կոկոններով *եւ* ծաղիկներով։ 2. *Հովիւն* ընթացաւ, անկաւ *առ ոտս նորա եւ* նշմարեց *զայն*։ 3. *Նա* կերաւ *եւ* քաղեց *արգելեալ ծառին պտուղէն*։ 4. *Միտքը կը* դատէ *եւ կը* բաղդատէ։ 5. *Կոլուացիք* այրեցին, աւարեցին, թողուցին, առին *եւ* պաշարեցին *զՀռոմ*։ 6. *Երկինք թանձր ամպովք* ծածկուեցաւ, *երկիրն* ողողեցաւ *ի վայրկեան ժամանակի, եւ անձրեւք* տեղացին։ 7. *Գետք* կ'ողողանեն *դաշտս*, կ'երթան *յովկիան եւ կը* բղխին *յերկրէ*։ 8. *Մարդ կը* տառապի, *կը* ծնի *եւ կը* մեռնի։ 9. *Ոճրագործը* բռնուեցաւ, դատուեցաւ, բանտարկուեցաւ, գլխատուեցաւ *եւ* դատապարտուեցաւ։ 10. *Յիսուս Քրիստոս մարգարէներէն* գուշակուեցաւ, *Հրէաստանի մէջ* շրջեցաւ, *Յուդայէն* մատնուեցաւ, *քառասուն օր իւր աշակերտաց հետ* անցուց, *Ս. Հոգիէն* յղացաւ, խաչեցաւ, *կոյսէ մի* ծնաւ, *Աւետարանը* քարոզեց, *երկինք* համբարձաւ, *Հօր Աստուծոյ աջ կողմը* նստաւ, *դժոխք* իջաւ, *գերեզման* դրուեցաւ, խաչեցաւ, յարեաւ *ի մեռելոց եւ եւ* դատապարտուեցաւ։ 11. *Փախայ եւ օձ մի* նշմարեցի։ 12. *Տիկինը* մեռաւ, *տիկինը կը* մեռնի։ 13. *Գործը*

եշմարեց զեզն, պայթեցաւ, ուռեցաւ, փափաքեցաւ նորա մեծութեան եւ ուժեց նմանիլ նմա։ 14. Անգղիացիք կոտորեցան, դասապարտեցին, զնեցին, այրեցին եւ դատեցին զՅովաննա տ'Արք։ 15. Յուդա յուսահատեցաւ, ինքզինքը կախեց եւ վաճառեց զիւր տէրն։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի բնական կարգի վերածել հետեւեալ պարբերութիւններն :

1. Քնանալուն պէս պառկեցաւ։ 2. Տիտոս կործանեց, պաշարեց եւ առաւ զԵրուսաղէմ։ 3. Յետ պառկելու ընթրեց։ 4. Գողը կախուելուն պէս բռնուեցաւ։ 5. Դուռը բացին, բաղխեցի զայն եւ ներս մտայ։ 6. Մարդոյ կեանքը չորս ժամանակներու կը բաժնուի. պատանեկութիւն, մանկութիւն, երիտասարդութիւն, ծերութիւն։ 7. Տիւն երեք մասանց կը բաժնուի. միջօրեայ, երեկոյ, առաւօտ։ 8. Նաւամատոյց իջայ, նաւ մի նշմարեցի, նաւը մտայ, մեկնեցանք, առագաստ բացին, անցագնոյն տեղեկացայ, խարիսխ վերուցին։ 9. Աստուած է որ կը պահպանէ մեր կեանքը եւ կուտայ զայն մեզ։ 10. Երկու ախոյեաններն իրարու կը մօտենան, վար կը ծռին, կ'ընկրկին, վերջապէս զմիմեանս կը փարին եւ յանկարծ վեր կը ցատկեն։ 11. Միտքը կը դատէ, կը վճռէ։ 12. Պուալոյ մեղկութեան ուժահատութիւնն նկարելու համար ըսած է « Բազուկները կը տարածէ նա, կը հառաչէ, աչքերը կը փակէ եւ կը ննջէ։» 13. Կաքաւը բոյն մի շինեց, թխսեց, ձու ածեց։ 14. Գուլիէլմոս Թէլ կը լարէ իւր աղեղն, նետը կը մեկնի, նպատակին կ'ուղղէ զայն, կը հչէ, բոլոր ժողովուրդը կը ծա-

փահարէ, խնձորը կը զարնէ։ 15. Զարք կը փախչին յիրերաց եւ կը կասկածին։

---

## ՀՈՄԱՆԻՇՔ

1. Հ. Հոմանիշ ո՞ր բառերուն կ'ըսուի.

Պ. Հոմանիշ կ'ըսուի այն բառերուն որք մի և նոյն նշանակութիւնն ունին։ Սակայն հոմանիշ ըսելով՝ պէտք չէ հասկնալ այնպիսի բառեր որք բացարձակապէս մի և նոյն նշանակութիւնն ունին և ամէն պարագայի մէջ իրերաց տեղ կրնան գործածուիլ, այլ այնպիսի բառեր՝ որք ընդհանուր գաղափարի մի այլ և այլ երկրորդական առումները կամ պարագաները կը նշանակեն, որով յայնժամ այդ հոմանիշ ըսուած բառերէն իւրաքանչիւրն իւր յատուկ նշանակութիւնն եւ իւր գործածութեան մասնաւոր պարագայն ունի։

2. Հ. Լեզուի մի մէջ բացարձակապէս հոմանիշ բառ չը՞ գտնուիր.

Պ. Ոչ. «Չի եթէ լեզուի մի մէջ բացարձակապէս հոմանիշ բառեր գտնուէին, կըսէ Տիւմարսէ, մի լեզուի մէջ երկու լեզու պիտի լինէին. երբ մարդ մի անգամ գտնէ գաղափարի մի ճիշդ նշանն, (զի բառք գաղափարաց նշաններն են) այլ ևս հարկ չտեսներ մի ուրիշ նշան ալ փնտռելու»։ Այս կարծիքն ունեցան Ֆենելոն, Ժիրար, Պլէր և բազմաթիւ հոյակապ բառաքննիկք և զոյգ ընդ-

*Նոյին պարտիմք դիտել թէ լեզուի մի արժանիքը չկազմեր կատարելապէս հոմանիշ բառեր ունենալը. զի առատութիւն մի չէ այդ, այլ աւելորդութիւն, և աւելորդութիւնը թերութիւն մի է։*

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրին երկու հոմանիշ գտնել ։

Ա. 1. *Ջեփիւռ*։ 2. *Կարծրութիւն*։ 3. *Յաջորդ*։ 4. *Ազգական*։ 5. *Առեւտուր*։ 6. *Որմ*։ 7. *Նետ*։ 8. *Նաւ*։ 9. *Հասակ*։ 10. *Արմատ*։ 11. *Բանակ*։ 12. *Հովանի*։ 13. *Դող*։ 14. *Համբարու*։ 15. *Կապ*։ 16. *Ուղեւոր*։ 17. *Խողովակ*։ 18. *Ընկեր*։ 19. *Թիկունք*։ 20. *Բիծ*։ 21. *Հաց*։ 22. *Նշխար*։ 23. *Փուշ*։ 24. *Դրօշ*։ 25. *Պատսպարան*։

Հետեւեալ ածականաց իւրաքանչիւրին երկու հոմանիշ գտնել.

Բ. 1. *Փառաւոր*։ 2. *Բարեկամ*։ 3. *Բարակ*։ 4. *Լի*։ 5. *Արագոտն*։ 6. *Անգութ*։ 7. *Յանձնապաստան*։ 8. *Երկայն*։ 9. *Հաստու*։ 10. *Մեծ*։ 11. *Սին*։ 12. *Վայրենի*։ 13. *Լայն*։ 14. *Կլոր*։ 15. *Յայտնի*։ 16. *Ծանր (մարդ)*։ 17. *Ծանր (խօսք)*։ 18. *Ծանր (աշխատութիւն)*։ 19. *Ծանր (տանջանք)*։ 20. *Ծանր (բեռ)*։

Հետեւեալ բայից իւրաքանչիւրին երկու հոմանիշ գտնել.

Գ. 1. *Հանդիպիլ*. 2. *Սրել*. 3. *Կշտամբել*։ 4. *Դիզել*։ 5. *Հոգալ*։ 6. *Ուռնուլ*։ 7. *Շաղակրատել*։ 8. *Փետել*։ 9. *Ցնցել*։ 10. *Գերազանցել*։ 11. *Երեւիլ*։ 12. *Լալ*։ 13. *Կանչել*։ 14. *Համրել*։ 15. *Փափկանալ*։ 16. *Շաղուել*։ 17. *Յոգնիլ*։ 18. *Խոցել*։ 19. *Ծաղրել*։ 20. *Հեծնել (ձի, եւն.)*։ 21. *Եռալ*։ 22. *Խրտչիլ*։ 23. *Ընկերանալ*։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Հետեւեալ պարբերութեանց մէջ աշակերտը պարտի չեղագիր բառերուն տեղ իւրեանց հոմանիշը դնել առանց խօսքին իմաստն այլայլելու.

1. *Ճշմարիտ բարեկամն ի վեր է քան ամենայն գանձս աշխարհի։ 2. Նա որ ամենուն բարեկամ է, ոչ ումեք է բարեկամ։ 3. Ապահով բարեկամ համարէ քեզ այն անկեղծ մարդն որ պակասութիւններդ կ՚իմացունէ, քան թէ զայն որ կը գովէ զամէն ինչ որ կ՚ընես։ 4. Ճշմարիտ բարեկամն իւր բարեկամին ուրախութեանն ուրախակից եւ ցաւոցը ցաւակից կը լինի, եւ պակասութեանցը վերայ ներողամիտ աչօք կը նայի։ 5. Ապերախտ մարդուն սիրտը կը նմանի անապատի որ յերկնից իջած անձրեւն անյագաբար կը ծծէ, կը կլնէ ու ոչինչ կը բուսցունէ։ 6. Ում զրուցես գողտնիքդ, նմա գերի կ՚ըլլաս։ 7. Ագահը կը կարծէ թէ ոսկին ու արծաթն են երջանկութիւն, մինչ, ընդհակառակն, միջոցք են նոքա երջանկութիւնը ձեռք բերելու։ 8. Ի բոլոր սրտէ պատուէ ծերունի հայրդ, եւ մորդ զորովալից խնամքը մի մոռնար։ 9. Նա որ իւր կինը կը ծեծէ, աջ ձեռամբ ձախ ձեռքը կը ծեծէ։ 10 Մարդոյ կեանքը օրագիր տետրակ մի է, մէջը բարի գործեր միայն գրելու է։ 11. Մարդ իւր բարեգործութեանց պտուղը կը կորսնցնէ, երբոր ինքը կ՚սկսի զանոնք գովել։ 12. Սիրելի վաճառականին ապրանքը շուտով կը ծախուի։ 13. Եթէ բարձրանաս, աշխատէ որ այլք չփափաքին անկումդ տեսնել։ 14. Փառքը կը վայելէ այն սրտին միայն որ գիտէ տանել վշտաց եւ ոտնակոխ ընել զհեշտութիւնս։ 15. Ագահ հօր, շռայլ որդի։ 16. Բնաւ փոքրիկ թշնամի չկայ։ 17. Լաւագոյն է միայնակ երթալ քան չարի մը ընկերութեամբ։ 18. Նա է հարուստ որ ոչ իմիք կը փափաքի։ 19. Լեւոնի-*

դաւ fաչուրեամբ կռուեցաւ եւ փառօք ինկաւ ի Թերմոպիլ։ 20. Խաղաաէր դպրոցականաց համար ամենէն անհանոյ ձայնը զանգակինն է։ 21. Երանի այն աշակերտին որ իւր աշխատաsիրութեամբն, եւ hամեաs վարուքն իւր pոլոr դաաաsուաg hամարմանն արժանացած է։ 22. Զեփիւռf կը զգուեն ծաղիկներն։ 23 Կըրօնքը կը միիթարk զմարդ ի թշուառութեան եւ երկնային քաղցրութիւն մի կը խառնէ կենաց դառնութեանց մէջ։ 24. Զարմանք, Քրիստոնէական կրօնքն որ թուի թէ իւրեան առարկայ ունի միայն հանդերձեալ կենաց եrջանկութիւնն, այս կենաց մէջ ալ եrջանիկ կ'ընէ զմեզ։ 25. Աղօթքն հոգւոյն շունչն (շնչառութիւն) է, նա որ չաղօթեր՝ չապրիր։ 26. Ըսէ ինձ առ ո՛ կը յաճախես, եւ ես պիտի ըսեմ քեզ, ո՛վ ես դու։ 26. Լաւ են զբօսանf, այլ լաւագոյն է կrթութիւն. ընթերցումն՝ որ սոյն երկու օգուտներն ալ ունի, կը նմանի քաղցրահամ եւ սննդարար պտղոյ մի։ 28. Գիrfեrը կը սնուցանեն զհոգին ինչպէս սնունդք զմարմինն. 29. Հաrուսs է նա որ գիտէ fիչով բաւականանալ։ 30 Լաւ է յանդիմանութիւն լսել իմաստունէն քան թէ յիմարէն գովասանf։ 31. աշխատասեr մարդոյն դռնէն կը նայի անօթութիւնը եւ չhամարձակիr ներս մտնել։ 32. Ամէն բանի մէջ մի պարկեշտ եւ փորձառու մարդու խոrhուrդը hաrցուr. ինչ մտօք ինչ տաղանդով ալ օժտուած լինի ոք, միշտ խորհրդոյ պէտք ունի. նա որ միշտ առանձին կ'եrթայ, մոլորելու վտանգի մէջ է։

## ՀՐԱՀԱՆԳ 3

Հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրին երեք հոմանիշ գտնել.

Ա. 1. Մութ։ 2. Վերարկու։ 3. Տուն։ 4. Բազուկ։ 5. Աղմուկ։ 6. Վնաս։ 7. Մշակութիւն։ 8. Խո-

*պողպէք* : 9. *Քար* : 10. *Սկաւառակ* : 11. *Գոյն* : 12. *Կուռ* : 13. *Սանձ* : 14. *Հիւանդութիւն* : 15. *Անկողին* : 16. *Կանթեղ* : 17. *Գերեզման* : 18. *Ոյժ* : 19. *Կոչունք* : 20. *Մաշկ* : 21. *Գարգմանակ* : 22. *Ստացուածք* : 23. *Կարօտութիւն* :

Հետեւեալ ածականաց իւրաքանչիւրին երեք հոմանիշ գտնել .

Բ. 1. *Իմաստուն* : 2. *Ազնուական* : 3. *Անուանի* : 4. *Տկար* : 5. *Քաջասիրտ* : 6. *Աղտեղի* : 7. *Պարարտ* : 8. *Ոխակալ* : 9. *Հանդարտ* : 10. *Խաբեբայ* : 11. *Քսու* : 12. *Քնքուշ* : 13. *Թեթեւամիտ* : 14. *Ծատակեր* : 15. *Զօր* : 16. *Աղքատ* : 17. *Անկիրթ* : 18. *Անզգայ* ; 19. *Վէս* (Ռէնիշ) : 20. *Բերրի* :

Հետեւեալ բայից իւրաքանչիւրին երեք հոմանիշ գտնել .

Գ. 1. *Քրքնալ* : 2. *Ապստամբիլ* : 3. *Ամաչել* : 4. *Ծուլանալ* : 5. *Փախչիլ* : 6. *Համառօտել* : 7. *Մօտենալ* : 8. *Նախանձիլ* : 9. *Ընթանալ* : 10. *Փայլիլ* : 11. *Ծողոքորթել* : 12. *Նիհարիլ* : 13. *Տաշել* : 14. *Պատրաստել* : 15. *Ածիլել* : 16. *Ստուգել* : : 17. *Կաքաւել* : 18. *Թրջել* : 19. *Մաքրել* : 20, *Ծռել* : 21. *Բժշկել* :

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Հետեւեալ պարբերութեանց մէջ, աշակերտը պարտի շեղագիր բառերուն տեղ իւրեանց հոմանիշը դնել առանց խօսքին իմաստն այլայլելու .

1. Սոխակն անտառաց երգիչն է : 2. Աղաւնին կը կանչէ զիւր վարուժանն ողբագին ձայնով մի : 3. Գեռանիաս իշխանը զարմանօք տեսաւ այս փոքրիկ հասարակապետութեան կարգն, փոյթն ու ջանքն : 4. Ցաջողութեան մէջ դիւրին է բարեկամ մի գտնել : 5. Եսայի գուշակեց Երուսաղեմի աղէտքն : 6. Փիղն օձէն կը վախնայ 7. Համբաւը մեծ շաղակրատ մի է : 8. Գթութիւնն առաքինութեանց առաջինն է : 9. Այն

զերին Պիւթիս կը կոչուէր։ 10. Երկինք Աստուծոյ փառքը կը պատմէ։ 11. Քաղցրութիւնը կը հանդարտեցունէ զբարկութիւնն։ 12. Մարդիկ կը սովորին չարին ինչպէս բարւոյն։ 13. Չափաւորութիւնն երջանկութիւն կուտայ մեզ։ 14. Ամէն ինչ որ կը փայլի ոսկի չէ։ 15. Պէտք է կայսեր տալ ինչ որ կայսեր կը վերաբերի։ 16. Մեծութիւն եւ հարստութիւն զմեզ երջանիկ չեն ըներ։ 17. Տեսնուած չէ մարդ մի որ զղջայ բարի գործ մի ընելուն համար։ 18. Տիրոջը երկիւղը իմաստութեան սկիզբն է։ 19. Գորտն եզ մի նշմարեց եւ ուզեց նմա նմանիլ։ 20. Ճշմարտութիւնը նուազ կը վիրաւորէ քան զայն ըսելու կերպն։ 21. Երանութեան տանող ամենէն անքոյթ ուղին առաքինութիւնն է։ 22. Շողոքորթութիւնը շուքի կը նմանի, ոչ կը մեծցունէ եւ ոչ կը փոքրկացունէ զքեզ։ 23. Հանգիստ սիրտ ունենալու համար մաքուր խիղճ պէտք է։ 24. Խեղճերուն օգնէ որպէս զի Աստուած ալ քեզ օգնէ։ 25. Մի ըսեր «Զայս վաղիւ կ'ընեմ,» վասն զի եղածը լաւագոյն է քան զոր պիտի լինի։ 26. Պարտէզդ ջրելու համար անձրեւի մի սպասեր։ 27. Ծուլութիւնն ու անգործութիւնը դուռն են եւ բանալի աղքատութեան։ 28. Եթէ զինեմոլութեան դէմ դեղ կ'ուզես, զինեմոլի մի նայէ։ 29. Ամէն տեսակ վէճ ու կռիւ վաղուան թող եւ շահաւոր կ'ըլլես։ 30. Փառասէրն ամէն բան կ'ուզէ, սակայն ոչինչ պիտի ունենայ։ 31. Ոչ աղքատութեամբդ նուաստացիր, եւ ոչ հարստութեամբդ հպարտացիր։ 32. Նա որ լաւ մեռնիլ կ'ուզէ պարտի լաւ ապրիլ։ 33. Քունն ու կերակուրը կարելի է վաղուան ձգել, պատեհութիւնն ոչ երբեք։ 34. Միշտ պատրաստ լեր։ 35. Աշխատելու մի դանդաղիր, ձեռներդ աշխատութեան վարժեցուր, հանգստութիւն սիրող կատուն մուկ չկարէ բռնել։ 36. Գոց ձեռամբ ճանճ

անգամ չբռնուիր։ 37. Թեթեւ շահեր քսակը կը ծանրացունեն, իսկ մեծ շահեր սակաւագիւտ են։ 38. Ուրիշին պնակին սպասողն, յաճախ անօթի մնալն աչք առնլու է։ 39. Եթէ մարդիկ երջանիկ լինել միայն փափաքէին շուտով կը լինէին, բայց կը փափաքին երջանիկ լինել քան զայլս, որ շատ դժուարին է, վասն զի զայլս երջանիկ կը տեսնեմք առաւել քան զոր ենն։

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրին չորս հոմանիշ գտնել.

Ա. 1. Ծիրան։ 2. Կողմ։ 3. Թարախ։ 4. Կաթիլ։ 5. Կոթ։ 6. Կոշտ (Հողոյ)։ 7. Հովիտ։ 8. Ցեխ։ 9. Հովիւ։ 10. Մրրիկ։ 11. Աւար։ 12. Միտք։ 13. Ծիւղ։ 14։ Խաբէութիւն։ 15. Կական։ 16. Աշխատութիւն։ 17. Ընծայ։ 18. Առատութիւն։ 19. Նաւակ։ 20. Ջոհ։ 21. Մազ։ 22. Բուրդ։ 23. Ճահիճ։ 24. Մոխիր։ 25. Գորգ։ 26. Երաժիշտ։

Հետեւեալ ածականաց իւրաքանչիւրին չորս հոմանիշ գտնել.

Բ. 1. Կատաղի։ 2. Կարմիր։ 3. Տեղեակ։ 4. Անմիտ։ 5. Մթին։ 6. Փայլուն։ 7. Անհաստատ։ 8. Հիւանդ։ 9. Արագաշարժ։ 10. Հեռի։ 11. Շատախօս։ 12. Ընդվայրայած։ 13. Հիւրընկալ։ 14. Կարճահասակ։ 15. Օթեկ։ 16. Թափառական։ 17. Շողոքորթ։ 18. Պանդուխտ։ 19. Երկչոտ։ 20. Հպարտ։ 21. Անպիտան։

Հետեւեալ բայից իւրաքանչիւրին չորս հոմանիշ գտնել.

Գ. 1. Ծլել։ 2. Գանիլ։ 3. Գլորիլ։ 4. Գրկել։ 5. Գթալ։ 6. Գոռոզանալ։ 7. Դիզել։ 8. Երգել։ 9. Երկարել։ 10. Թաղել։ 11. Ժողովել։ 12. Լմնցունել։ 13. Ծածկել։ 14. Կենալ։ 15. Շինել։ 16. Պաղիլ։ 17. Սփռել։ 18. Աքացել։ 19. Հասկնալ։ 20. Կարծել։

## ՀՐԱՀԱՆԳ Ե.

Հետեւեալ պարբերութեանց մէջ, աշակերտը պարտի շեղագիր բառերուն տեղ իւրեանց հոմանիշը դնել առանց խօսքին իմաստն այլայլելու.

1. Մանկան առաջին **պարտքն** է օգնել այն բարեաց զոր կ'ուզեն ընել նմա իւր ծնողքն եւ իւր դաստիարակներն։ 2. Չար եւ անիրաւ գործոյ մի համար **ընկերանալն**, զիւր անձն ալ չար եւ անիրաւ ընել է։ 3. Իւր յանցանքը ճանչելն ու զայն ուղղել **աճապարելը** գեղեցիկ զգացում մի է։ 4. Մաքրութեան զգացումը մին է այն **նկարագիրներն** որք կ'որոշեն զմարդ յանասնոյ. յայն սակս մարդ մի որ **անհոգ** է մաքրութեան **աղտոտ** անասնոյ մի **զզուանքը** կ'ազդէ։ 5. Բնականն՝ ամէն զարդուց գեղեցկագոյնն է. պարտ է ուրեմն խորշիլ ամէն արուեստականութենէ թէ **հանդերձից**, թէ դիմաց եւ թէ **լեզուի** մէջ։ 6. Ընտանեաց անդամոց մէջ **միաբանութիւնն** առաջին պայմանն է ամենեցուն երջանկութեան։ 7. Եղբարց եւ քերց մէջ տիրող սէրն՝ որդիական մեծարանաց **ընդարձակումն** է. մանուկը կը սիրէ իւր հայրն ու մայրն այն ընկերաց մէջ զորս նոքա տուած են նմա։ 8. Հայրն՝ որ ընտանեաց առաջնորդն ու պաշտպանն է, իրաւունք ունի **համայնից** մեծարանաց ու հնազանդութեան։ 9. Մայրն՝ որ ընտանեաց սիրտն, ուրախութիւնն եւ **նախախնամութիւնն** է, իրաւունք ունի իւր զաւակաց **գորովալից** երախտագիտութեան։ 10. **Դաստիարակն** ընտանեաց հօր ներկայացուցիչը լինելով իրաւունք ունի մեծարանաց, երախտագիտութեան եւ հնազանդութեան այն **աշակերտաց** որոց նուիրած է զիւր անձն։ 11. Արդէն

յոյժ դժուարին է ծառայի մի համար՝ լինելն ընդ իշխանութեամբ տիրոջ. ուստի ճշմարիտ տմարդութիւն մի է հրամաններ տալ նմա անբարտաւանութեամբ եւ խստութեամբ։ 12. Ծառայից նկատմամբ պէտք չէ ունենալ ոչ արհամարհանք ոչ ընտանութիւն։ 13. Մաքուր գրքեր, ամբողջ եւ կոկիկ տետրակներ լաւագոյն ապացոյց մի են թէ դպրոցական մի խնամոտ, մաքուր եւ կարգաւորութեան բարեկամ է։ 14. Պատիժներն խսկ, երբ ապացոյցք լուրջ սիրոյ մի, պէտք է որ սիրով ընդունուին աշակերտաց կողմանէ, քանզի աշակերտաց յանցանաց համար դաստիարակին տկարութիւնն՝ նոցա քաջալերութիւն մի է չարիք գործելու։ 15. Կարելի չէ չար որդի մի լինել եւ միանգամայն բարի դպրոցական մի, քանզի իւր դաստիարակը գոհացունելու ապահովագոյն միջոցն է իւր ծնողքն երջանիկ ընել։ 16 Ըստ ճանաչել եւ ըստ սիրել զԱստուած, մարդկային միտքն կը զարգանայ, կը կատարելագործուի եւ կը բարձրանայ։ 17. Եկեղեցին Աստուծոյ տունն է. սրբավայրն է ճշմարիտ հաւատորութեան, ապաստանարանն՝ աղքատաց եւ մխիթարութիւնն՝ վշտացելոց։ 18. Քահանայն եւ վարժապետը կ'ընձեռեն մանկանց այն կրթութիւնն ու դաստիարակութիւնն որոց նպատակն է մանկան հոգին բարձրացունել. սորա համար քահանայն եւ վարժապետն՝ յետ ծնողաց՝ մանկութոյն ընտրելագոյն բարեկամներն են, եւ մեծապէս արժանի յարգանաց եւ երախտագիտութեան։ 19 Աշխատութիւնն ոչ միայն նուաստութիւն եւ զերութիւն չէ, այլ կ'ազնուացունէ զմարդ, զի կ'ազատէ զնա թշուառութեան լուծէն. առանց աշխատութեան մարդը պիտի լինէր թշուառագոյն քան զտրուպն յանասնոց։ 20. Ծուլութեամբ յաշխարհ մտած են այս երկու պատուհասներն, ձանձ-

ռոյք եւ թշուառութիւն։ 21. Մարդը ծնած է աշխատելու համար, ինչպէս թռչունը թռչելու համար։ 22. Հանգիստն ոչ այլ ինչ է բայց միայն միջոց ստանալու նոր զօրութիւն նոր աշխատութեան համար։ 23. Խիղճն Աստուծոյ ձայնն է որ կը խօսի մեր սրտից մէջ։

## ՀՐԱՀԱՆԳ 7.

Աշակերտը պարտի հետեւեալ մակբայից իւրաքանչիւրին հոմանիշներ գտնել.

Ա. 1. Միշտ։ 2. Շուտով։ 3. Հիմա։ 4 Արդարեւ։ 5. Դարձեալ։ 6. Անմիջապէս։ 7. Յաճախ։ 8. Ի զուր։ 9. Դեռ։ 10. Միայն։ 11. Վերջապէս։ 12. Բոլորովին։ 13. Հոս։ 14. Հոն։ 15. Ինչո՞ւ։ 16. Մօտ։ 17. Շատ։ 18. Տակաւ։ 19. Երբեմն։ 20. Յանկարծ։ 21. Յայտնի։ 22. Միանգամայն։ 23. Անշուշտ։ 24. Այնպէս։

Աշակերտը պարտի հետեւեալ շաղկապներուն իւրաքանչիւրին հոմանիշներ գտնել.

Բ. 1. Բայց։ 2. Թէպէտ։ 3. Ուրեմն։ 4. Որովհետեւ։ 5. Քանզի։ 6. Ուստի։ 7. Երբոր։ 8. Այսինքն։ 9. Մինչ։

Աշակերտը պարտի հետեւեալ ձայնարկութեանց իւրաքանչիւրին հոմանիշներ գտնել.

Գ. 1. Իցի՜ւ։ 2. Օ՜ն։ 3. Ափսո՜ս։ 4. Քա՜ւ լիցի։ 5. Ո՜հ։

## ՀՐԱՀԱՆԳ 8.

### ՀՐԴԵՀ

Աշակերտը պարտի շեղագիր բառերուն տեղ իւրեանց համանիշը դնել առանց խօսքին իմաստն այլայլելու.

Կէս գիշերոյն մէջ երկինք մի անսովոր պայծառու-

թեամբ կը փայլի արեւմագոյն. յուսահատութեան ձայներ կը լսուին. — Հրդե՜հ կայ. — բոցք՝ դժոխային բազմագլուխ ճիւաղի մի իժախոհ մագերուն նման՝ կ'ոլորին վեր կը բարձրանան եւ կը լիզուն երկնային կամարն։ Մի հրեղէն գետ ողողեր է թաղն ողջոյն, կը վազէ մռմռացին իւր վիշապ գալարուն. իւր առջեւէն կ'ընթանան արհաւիրք. իւր ժանիքն իբրեւ թոյն, աղէտք կը ժայթքէ իւր շուրջն։ Անյաղթելի է տարրն անողոք. այր ու կին, մանուկ ու ծեր, ահաբեկ խուռներնթաց կը փախչին իւր առջեւէն նորա համայնածախ կատաղութեան յանձնելով իւրեանց յարկն ընտանի. ի մէն մի ակնթարթ տուն մի կը կործանի ահաւոր շառաչմամբ, երջանկութիւն մի կը թռչի, ընտանիք մի կը փլի։ Աղեխարշ գոչիւններ կը խառնին բոցերու մռընչիւնին հետ եւ մի քստմնելի համանուագ կը կազմեն. եւ այս գոչիւններուն մէջ ձայներ կան որ ի զուր «օգնութիւն» կ'աղաղակեն. — Ահ, թշուառներ են որ բոցերու հետ կը կռուին, եւ սակայն տարրն կոյր եւ անսիրտ կը լափէ զայնս եւ կ'անցնի։ Մի քանի ժամ յետոյ հրդեհն կը հանգչի որպէս մի աշխարհակալ որ կը դադրի յոգնած այն աւերներէն ու մահերէն որովք իւր քայլերն նշանակեց։ Աւերակաց դէզք եւ ծխաշունչ մոխրակոյտք միայն կը մնան անտի ուր մի գիւղ էր զուարթ. Թշուառներու խումբեր, սգափետուր բուերու նման, կը տեսնուին աստ անդ՝ սառած քարացած են իւրեանց տանց մոխիրներուն առջեւ. կը հարցնեն իւրովի թէ ուր հրոյն այդ ցասումն եղեռնագործ եւ թէ ինչո՞ւ, մինչ պահ մի յառաջ ընտանեկան յարկին տակ կը քնանային խաղաղ, անդէտք եւ երջանիկք, հիմա իւրեանց գլխոյն կը պակսէր մի տեղի հանգստեան. — Ահ, գէթ, երբ ընտանեաց հայրն կը նայի իւր բունազիրկ ձագերուն վրայ որ, տխո՜ւր, կը

*ճուան իր չորս դին, ամբողջ գտնէր զնոսա. բայց, յաճախ, այդ մոխրակոյտք զերեզմաններ են նաեւ....։ Ա՜հ, թշուառութիւն...։*

**Ռ. Յ. Պէրպէրեան**
( Թշուառ. եւ Գութ )

## ՀՐԱՀԱՆԳ Թ.

Հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրին հինգ հոմանիշ գտնել.

*Ա. 1. Ազգ։ 2. Գաւաթ։ 3. Բեւեռ։ 4. Գաւազան։ 5. Օգնութիւն։ 6. Փարախ։ 7. Փափաք։ 8. Տարափ։ 9. Ուրախութիւն։ 10. Օժիտ։ 11. Հրաշք։ 12. Նազանք։ 13. Որոգայթ։ 14. Համեստութիւն։ 15. Ծածկոյթ։ 16. Ձեւ։ 17. Վերջ։ 18. Բերք։ 19. Նիզակ։ 20. Ճանապարհ։ 21. Կօշիկ։ 22. Բոյն ( ֆա-ղնի )։ 23. Կոճ։ 24. Թուր։*

Հետեւեալ ածականաց իւրաքանչիւրին հինգ հոմանիշ գտնել.

*Բ. 1. Ապստամբ։ 2. Զօրաւոր։ 3. Ամուր։ 4. Թշուառ։ 5. Չար։ 6. Հարուստ։ 7. Մաքուր։ 8. Ծուռ։ 9. Պարկեշտ։ 10. Ճշմարիտ։ 11. Անարգ։ 12. Գործունեայ։ 13. Ողորմած։ 14. Պատշաճ։ 15. Խռովարար։ 16. Ապերախտ։ 17. Բարբարոս։ 18. Ծածուկ։ 19. Ծեր։ 20 Յանդուգն։ 21. Գեղեցիկ։ 22. Խիտ։ 23. Թուլամորթ։*

Հետեւեալ բայից իւրաքանչիւրին հինգ հոմանի գտնել.

*Գ. 1. Կրթել։ 2. Երկմտիլ։ 3. Տանջել։ 4. Շատնալ։ 5. Աճապարել։ 6. Օգնել։ 7. Փնտռել։ 8. Վազել (Հրոյ)։ 9. Ստիպել։ 10. Խորովել։ 11. Համբերել։ 12. Յոգնիլ։ 13. Կարենալ։ 14. Կցել։ 15. Կապել։ 16. Ազատիլ։ 17. Արհամարհել։ 18. Գիրնալ։ 19. Զարդարել։ 20. Զգայնել ( կէյէլմէք )։ 21. Հրել։*



## 3. ՃՇԴՈՒԹԻՒՆ

1. Հ. Ոճոյ ճշդութիւնն յո՞րում կը կայանայ.

Պ. Ոճոյ ճշդութիւնն յայնմ կը կայանայ զի իմաստ մի բացատրելու համար ոչ աւելորդ բառ մի գործածէ ոք և ոչ կարեւոր բառ մի զանց ընէ: Ճշդութիւնը ջիղ և ազդուութիւն կու տայ ոճոյ. զոր օրինակ,

Ապագայն Աստուծոյ գաղտնիքն է:

Եթէ, փոխան այս պարբերութեան, ըսէի «Մարդիկ չգիտեն ինչ որ պիտի պատահի ապագային մէջ. Աստուած միայն գիտէ զայն» այս իմաստն սփիւռ եւ տկար պիտի լինէր, կորուսանելով իւր ճշդութիւնն, պիտի կորուսանէր նաեւ իւր հրապոյրն: Ռուշֆուգօ կ'ըսէ,

Միտքն յաճախ կը խաբուի սրտէն:

Եթէ բարոյախօսն այս գեղեցիկ առածն հետեւեալ կերպով բացատրած լինէր, «Սէրն՝ զոր ունիմք իրի մի կամ անձի մի համար, յաճախ յարգել կու տայ մեզ զայն իւր արժանիքէն աւելի» միեւնոյն իմաստը պիտի յայտնէր. բայց աստ խօսքը դանդաղ ընթացք մի ունի, մինչդեռ առաջին ձեւին մէջ կը թռչի:

2. Հ. Ճշդութիւնը՝ կ'արգելո՞ւ ոճոյ ճոխութիւնն ու զարդերն.

Պ. Ոչ. ճշդութիւնն, քանզի յարաբերական (relatif) է, նիւթոյն բնութեանն ու պարագայից համեմատ կը փոփոխի, մերթ պարզ ու կարճառօտ և մերթ ճոխ ու զարդարուն լինելով: Նիւթոց իւրաքանչիւր սեռն իւր ճշդութիւնն ունի. այսպէս պերճախօսին և բանաստեղծին ոճոյն ճըշ-

դութիւնը, փիլիսոփային և պատմագրին ոճոյն ճշդութեան չնմանիր. բայց սկզբունքը միևնոյն է, այն է, դէպ ուղիղ երթալ յիւր նպատակն: Գոռնէյլի Պօղիկտոսին (Polyeucte) մէջ, (Արար. Դ. Տես. 6) Հեթանոսն Սեւերոս կ'ըսէ քրիստոնէից համար.

Բարիք կը մաղթեն նոքա մեզ համար որ կը հալածեմք զնոսա.

Ռասին, Եսթէրի մէջ, սոյն գաղափարը կ'ընդլայնէ մի քանի տողերու մէջ (Արար. Գ. տես. 4):

«Իւրեանց չղթայից մէջ կը պաշտեն զԱստուած որ կը պատժէ զնոսա. եւ մինչդեռ քո ձեռնն ծանրանալով նոցա վերայ, անօք եւ անապաւէն, իւրեանց հալածչաց կը մատնէր զնոսին, նոքա թախանձագին կ'աղաչէին զԱստուած զի հսկէ քո աւուրց վերայ, զի խորտակէ չարաց եղեռնագործ դաւաճանութիւնն, զի իւր թեւոց հովանւոյն տակ առնու քո գահն»:

Այս երկու օրինակներն, կ'ըսէ Վօլթէր, իւրեանց սեպհական ճշդութիւնն ունին: Սեւերոս, որ կը խօսի իբր պետական մարդ, մի խօսք եւեթ կ'ըսէ և այս խօսքը լի է եռանդեամբ և ազդուութեամբ: Եսթէր, որ կը ջանայ ի զուր շարժել զԱրտաշէս, սոյն գաղափարը կ'ընդլայնէ: Սեւէրոս խորհրդածութիւն մի կ'ընէ, Եսթէր պաղատանք մի. ուստի միուն պարտ է լինել կարճառօտ եւ միւսունն պարզել մի պերճախօսութիւն խանդաղատիչ:

**3դ. Հ. Ոճոյ ճշդութեան հակառակ թերութիւնն ո՞րն է.**

Գ. Ոճոյ ճշդութեան հակառակ թերութիւնն է ճապաղ ոճ (style diffus) կամ երկայնաբանութիւն (prolixité) որ կը կայանայ շատ խօսքով քիչ բան հասկցունելու և անօգուտ մանրամասնութիւններ ընելու մէջ. և յայնժամ ոչ այլ ինչ յառաջ կու գայ բայց միայն, որպէս կ'ըսէ Վօլթէր,

Բառից հեղեղ գաղափարաց անապատի մի վերայ.

Զոր օրինակ,

Նաւամատոյց հասայ, նաւ մի նշմարեցի, անցագնոյն տեղեկացայ, տոմսակ մի գնեցի, նաւ մտայ, խարիսխը վեր առին, առագաստ բացին, մեկնեցանք։

Փոխանակ ըսելու,

Նաւ մտայ եւ մեկնեցանք։

Դոյզն իմաստ մի յոճնախուռն բառերով, կ'ըսէ Բոբ, է որպէս դոյզն պտուղ բազմախիտ տերեւներով։

Պէտք չէ նաև միևնոյն գաղափարն այլ և այլ ձևերով կրկնել առանց խօսքին վերայ մի նոր զօրութիւն կամ հրապոյր աւելցունելու. զոր օրինակ,

Պիտի խօսիմ եւ չպիտի լռեմ։

Յայտ է թէ, եթէ ոք կը խօսի, չլռեր, ուստի աւելորդ է երկրորդ նախադասութիւնն։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ պասացուածները ճիշդ ոճով մի բացատրել, ի բաց յապաւելով աւելորդ բառերն.

Ա. Ամէն տեսակ ցաւեր կրնան տակաւ ամոքիլ մըտախոհութեան միջոցաւ. բայց խղճին խայթը չէ կարելի ամոքել, ինչ որ ալ ընեն մարդիկ։

Ճիշդ ոճով պէտք է ըսել.

Խղճին խայթն հոգւոյն այն միակ ցաւն է զոր ժամանակն եւ մտախոհութիւնը չեն կարող ամոքել։

Բ. Հարկ է որ մարդ լաւ ուշադրութիւն ընէ իւր ըսածին, եւ քաջ կշռադատէ իւր խօսքերն երբ կը խօսի մէկու մը որ թշուառութեան մէջ է։

Գ. Մեզ համար մխիթարութիւն մի է մտածել թէ, եթէ կեանքը կարճ է յայսմ աշխարհի, մշտատեւ պիտի լինի հանդերձեալ աշխարհին մէջ։

Դ. Ի զուր կը ծածկեմք մեր գործերն, Աստուած միշտ կը տեսնէ զմեզ. բայց ի նմանէ՝ մեր խիղճն ալ կը տեսնէ զմեզ. թէպէտեւ մեք ոչ զմին կը տեսանեմք եւ ոչ զմիւսն։

Ե. Մարդ մի՝ շատ հարստութիւն ունենալուն համար չկարէ երջանիկ ըսուիլ. երջանիկ լինելու համար, գործունեայ եւ առաքինի լինել պէտք է։

Զ. Երբոր անձի մի գովեստներ տրուին, այս գովեստներն, եթէ չափազանցութեան մէջ տրուած են գէշ արդիւնք յառաջ կը բերեն թէ անոր նկատմամբ որ կուտայ եւ թէ անոր նկատմամբ որուն տրուած են։

Է. Նա որ ողորմութիւն կուտայ աղքատաց՝ այնպիսի աղօթք մի կ'ընէ՝ որ բոլոր աղօթքներէն գերազանց է։

Ը. Երբոր մէկը բարկութեան մէջ է, եւ այդ բարկութեան ժամանակ կը պատժէ զայլ ոք, պատժել չէ այն, այլ վրէժխնդրութիւն ի գործ դնել։

Թ. Յեսու միմիայն խօսքով բաւական իշխանութիւն ունեցաւ կեցունելու համար Յորդանանու արագահոս ջուրերն, եւ կասեցունելու համար արեգակն իւր ընթացից մէջ։

Ժ. Եթէ կուզէք երդում ընել, պէտք չէ որ աճապարէք, բայց եթէ անգամ մի ըրած էք, պէտք է որ փութաք զայն կատարելու։

## ՀՐԱՀԱՆԳ Ձ.

Աշակերտը պարտի հետեւեալ ասացուածները ճիշդ ոճով մի բացատրել, ի բաց յապաւելով աւելորդ բառերն :

*Ա. Մարդ կարէ ամէն տեսակ մոլութիւն գործել, զի այս մոլութեանց սերմն իւր սրտին մէջ կը կրէ. սակայն կարէ նաեւ ամէն տեսակ առաքինութիւն գործել, զի այս առաքինութեանց սերմն ալ իւր սրտին մէջ կը կրէ:*

*Բ. Որթն երեք տեսակ պտուղ կուտայ. որոց առաջինն է հաճոյք, երկրորդն՝ արբեցութիւն, եւ երրորդն՝ զղջում:*

*Գ. Երբոր մեռնելու վիճակի մէջ է ոք, ամէն բան անհետ կ՚ըլլայ. բայց թէ որ իւր կեանքին մէջ օր մի բարիք մի գործած է մէկուն, ահա այն բարեաց յիշատակը միայն կը մնայ:*

*Դ. Շատ մարդիկ չկան որ գիտնան իւրեանց վարքը յարմարցունել իւրեանց տիոցն եւ իւրեանց ծեր տարիներուն համեմատ ճաշակ ունենալ:*

*Ե. Երբոր երիտասարդութեան մէջ ենք, կեանքը գեղեցկութեան մէջ կը տեսնեմք, եւ ամէն բան մեր չուրջը զուարթ կը գտնեմք. իսկ երբոր ծերանալու ըլլանք, այլ եւս այնպէս չէ, ամէն բան տգեղութեան մէջ կը տեսնեմք, ամէն բան տխուր է:*

*Զ. Ինչ կերպով որ մեծարենք կամ յարգենք զոք, դարձեալ մեր մեծարանքն ու յարգանքը նորա փափաքանաց ու կամաց համաձայն չեն լինիր:*

*Է. Ի զուր պիտի աշխատի ոք որպէս զի փառաց հասնի աշխարհի վերայ, եթէ, փոխանակ աշխատութեամբ անցունելու իւր ժամանակն, ծուլութեան ու դատարկապորտութեան մէջ անցունէ զայն:*

*Ը. Ագահ մարդիկ միշտ տանջանաց մէջ են ոսկի եւ արծաթ դիզելու տենչանօք. բայց այսչափ տանջանք*

չէ բաւական, նաեւս ունեցածներն կորուսանելու երկիւղն ալ յարաժամ կը տանջէ զնոսա ։

Թ. Մարդ յայնժամ կատարեալ քաղցրութիւն մի կ'զգայ իւր վայելած հաճոյից մէջ, երբոր այդ հաճոյքն իւր աշխատութեան արդիւնքն է ։

Ժ. Գործոյ մի սկզբնաւորութիւն ընելն, գրեթէ զայն կէս իմն աւարտել է ։



## 4. ԲՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1. Հ. Ցորո՞ւմ կը կայանայ ոճոյ բնականութիւնն.

Պ. Ոճոյ բնականութիւնը կը կայանայ իւր գաղափարներն ու զգացումները դիւրութեամբ, անջան և անսեթևեթ կերպով արտայայտելու մէջ ։

2դ. Հ. Ի՞նչ է Արուեստակութիւնն (Affectation).

Պ. Արուեստակութիւնը բնականութեան հակառակ թերութիւն մի է և կը կայանայ սեթևեթեալ կամ ուռուցիկ ասութիւններ, անճահ նմանութիւններ, բռնազբօսիկ ձևեր գործածելու մէջ ։

3դ. Հ. Ի՞նչ պէտք է ընել բնական ոճով գրելու համար.

Պ. Բնական ոճով գրելու համար պէտք է զգուշանալ ամէն տեսակ արուեստակութենէ և չափազանցութենէ, ապա թէ ոչ կը կորուսանէ յայնժամ ոճն իւր գեղեցկութիւնն ու արժանիքն և կ'ըլլայ ցուրտ ու ծաղրելի ։

*Հետեւեալք արուեստակութեան օրինակներ են .*

*— Երբ ուզէ ոք կանոնաց վերայ գրել, պարտի ցողոյ մէջ թաթախել իր գրիչն եւ եօթներփեան աղեղին գունովք ներկել իր ոճն ։ (Թոմսոն)*

*— Այս աթոռին զձեզ գրկելու փափաքը գոհ ըրէք ։*

*Փոխանակ ըսելու .*

*Նստեցէք այս աթոռին վերայ ։*

*— Ձեր ոճիրն աւելի գարշելի է քան Յուդայինն ։*

*Փոխանակ ըսելու .*

*Ձեր ոճիրը գարշելի է ։*

*Պալզաք գրելով առ վշտահար ոք, կ'ըսէ .*

*«Ձեր պերճախօսութիւնը տարափոխիկ կ'ընէ ձեր վիշտն, եւ ինչ սառոյց, չըսեմ Լօրէնի, այլ Նորվէկիոյ եւ Մոսկուայի, չհալիր ձեր գեղեցիկ արտասուաց ջերմութեամբն ։»*

*Վուաթիւր գրելով առ կին ոք՝ կ'ըսէ .*

*«Կարծեմ թէ դուք Նեղոսի աղբերակը գիտէք, եւ այն աղբերակն յորմէ դուք ձեր խօսքերը կ'առնուք աւելի թաքուն եւ աւելի անծանօթ է ։»*

*Բիւլշէրի, ի մեռանելն, կ'ըսէ անհեթեթ լեզուաւ մի .*

*«Արեանս շոգին պիտի երթայ ստուարացունել այն շանթն՝ զոր Աստուած պատրաստ ունի ի բարին իւրում՝ զքեզ յաճիւն դարձունելու համար ։»*



## ԲԱՌԱԳԻՏԱԿԱՆ ՎԱՐԺՈՒԹԻՒՆՔ

### ՀԱԿԱՆԻՇ ԲԱՌԵՐՈՒ ՎԵՐԱՅ

### ՀՐԱՀԱՆԳ 1.

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. *Ճշմարիտ*։ 2. *Երկայն*։ 3. *Զօրաւոր*։ 4. *Ուրախ*։ 5 *Տգեղ*։ 6. *Անօթի*։ 7. *Առատութիւն*։ 8. *Ծանր (բեռն)*։ 9. *Ծնանիլ*։ 10. *Բացակայ*։ 11. *Ամբողջ*։ 12. *Բաց*։ 13. *Լայն*։ 14. *Պաշտպան*։ 15. *Պաշտպանել*։ 16. *Լալ*։ 17. *Ծնունդ*։ 18. *Պատերազմ*։ 19. *Պատերազմասէր*։ 20. *Կանխել*։ 21. *Յառաջանալ*։ 22. *Յառաջադիմել*։ 23. *Վառել*։ 24. *Վարձատրել*։ 25. *Դիմադրել*։ 26. *Առաւելութիւն*։ 27. *Առաւելուլ*։ 28. *Յոռի*։ 29. *Չար*։ 30. *Անէծք*։ 31. *Անիծել*։ 32. *Կ'անիծեմ զայն*։ 33. *Վարը*։ 34. *Յամր*։ 35. *Ի միասին*։ 36. *Վաղ*։ 37. *Միշտ*։ 38. *Բազում*։ 39. *Չափազանց*։ 40. *Նուազ*։ 41. *Հեռի*։ 42. *Ստորին*։ 43. *Ներքին*։ 44. *Անցեալ*։

### ՀՐԱՀԱՆԳ 2.

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել. շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. *Ամենէն* զօրաւորը *միշտ* արդար է։ 2. Աղքատութիւնը *մոլութիւն չէ*։ 3. Հարստութիւնը *խնայութեան* դուստրն է։ 4. Ամառան *մէջ* հովանի կը *փնտրեն*։ 5. Խորշեցէք *չարաց ընկերութենէն*։ 6. *Աստուած* կը կը շնորհէ *իւր բարիքներն* առաքինի *մարդոց*։ 7. *Նա զոր* կը սիրեմ *չունի բնաւ* թերութիւն։ 8. Ժանտ *միշտ կարի անագան* կը *մեռանին*։ 9. Շռայլ հարուստն երբեք *բաւական չունի*։ 10. Շռայլն *աղքատ* է զի չզրկեր *զիւր անձն* յիմեքէ։ 11. Սակաւք բարի *են*։ 12. Հեշտ *երկրակալութիւն մի՛* նուազ *փառք կ'ընծայէ*։ 12. *Մա-*

տենագիր մի ըսած է «Ներողամիտ լինինք կենդանեաց (ողջ) նկատմամբ»։ 14. Կառաց յոռեգոյն անիւն է որ աւելի աղմուկ կը հանէ։ 15. Ամենէն ազատ մարդն այն է որ իւր կրից կը հրամայէ։ 16. Երկիրն ոչինչ կը զլանայ աշխատութեան։ 17. Չար գործելու առիթները բազում են, խոյս տուր ի նոցանէ։ 18. Չար գործոյ մի յիշատակն ամէն վայրկեան կը վերադառնայ զմեզ պատժելու համար առ այն զի գործած եմք։ 19. Դուք երբեք պէտք չպիտի ունենաք հարստութեան, եթէ ուսեալ էք։ 20. Պատերազմը չարեաց մեծագոյնն է։ 21. Կը մխիթարուի հայր մի երբ տեսնէ որ իւր որդիք դէպ ի լաւ անդր կը դիմեն։ 22. Անխորհրդապահ մարդուն սիրտը բաց գիրք մի է ուր ամենայն ոք կարէ ընթեռնուլ։ 23. Այս օրիորդները շատ գեղեցիկ են, բայց դժբախտաբար շատ անմիտ են։ 24. Յերեկոյին արեգակը կը մտնէ յարեւմուտս։ 25. Այն մատեաններն որք առաւել կ'զբօսուցանեն զմանկունս միշտ ամենէն աւելի օգտակարները չեն։ 26. Ազնիւ հոգին զօրաւոր է։ 27. Երջանկութիւնը կ'երկարաձգէ զկեանս։ 28. Մահը մեր ցաւուց վախճանն է։ 29. Որքան եւ մեծ լինի քո հարստութիւնն անբաւական պիտի լինի եթէ անմտութեամբ զայն գործածես։ 30. Երիտասարդութիւնն յառաջ կը նայի։ 31, Երիտասարդք երջանիկ են, զի կը նկատեն զապագայն։ 32. Մանկութիւնն երջանիկ է, զի սակաւ գիտէ։ 33. Ոչինչ հաճելի է այնմ որ դժգոհ է զինքենէ. ոչինչ հաճելի է այնմ որ դժգոհ է զինքենէ. ոչինչ հաճելի է այնմ որ դժգոհ է զինքենէ։

## ՀՐԱՀԱՆԳ 3

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. Այն ձեռն որ կ'ատէ զաշխատութիւնը չհաւո-

ռութիւն կ'արտադրէ: 2. Ի քաղաքի, անագան կը պառկին: 3. Միշտ շաւաղոյն պտուղքն են զորս թռչունք ամենէն յառաջ կը կտցեն: 4. Ժուժկալ մարդիկ երկար կեանք մի ունին: 5. Միտքն առանց դատողութեան ոչ իմիք կը ժամանէ: 6. Գիտունին համեստութիւնը կը գովեն: 7. Գիտութիւնն համեստ է: 8. Մեր մարմինը մահկանացու է: 9. Այն մանուկն որ կը հնազանդի իւր ծնողաց եւ կը մեծարէ զնոսա՝ բարի քաղաքացի մի պիտի լինի: 10. Երիտասարդութիւնն աշխատութեան յարմար ժամանակն է: 11. Աղքատն յաճախ գթած է: 12. Չիք ինչ այնքան երկչոտ որքան չար խիղճ մի: 13. Պարտ էր մեզ սիրել մեր անաչառ թշնամիներն: 14. Ի ծագել արեգական, ջղջիկք իւրեանց բոյները կը մտնեն: 15. Մարդ չատեր այն ամէն անձերը զորս կ'անարգէ: 16. Ամենէն երկայն կեանքն յաճախ նուազ ակաղձուն է: 17. Երախտագիտութիւնը կ'ազնուացնէ զմարդն: 18. Զախորդութեան մէջ, մարդ կը յիշէ իւր բարեկամներն, թշուառութիւնն յիշողութիւն կուտայ: 19. Մեղապարտ հաճոյքներէն խորշեցէք: 20. Ինչ որ անօգուտ է միշտ կարի թանկ է: 21. Պատուաւոր մարդիկ կը միանան իւրեանց առաքինութեամբքն եւ կը միաբանին բարիք գործելու համար: 22. Առաքինութիւնը մի բարիք է. արդ ժուժկալութիւնը մի առաքինութիւն է ուրեմն ժուժկալութիւնը բարիք մի է: 23. Աղքատն յաճախ հիւանդ է առ ի չգոյէ սննդեան: 24. Վատութիւն է երկնչիլ ի մահուանէ: 25. Փոքրիկ սպետութիւնք կը զօրանան միաբանութեամբ: 26. Գաղտնի պարսաւէ: 27. Չքաւորութիւնը ծուլութեան արդար պատիժ մի է: 28. Ցիշէ ընդունած ծառայութիւնդ: 29. Գովեք բարին, ճշմարիտն, գեղեցիկն: 30. Այս աշակերտը շարադրութեան մէջ առաջին եղաւ: 30. Դժոխք տանջանաց վայր մի է: 32. Հիւսիսային քամին ցուրտ

է եւ չոր։ 33. Նա որ ծուլութիւն կը սերմանէ սով պիտի հնձէ։ 34. Բարի որդի մի իւր հօր օրհնութիւնը կ'ընդունի։ 35. Չարերը կ'ուրախանան այլոց թշուառութեան վերայ. Չարերը կ'ուրախանան այլոց թշուառութեան վերայ. Չարերը կ'ուրախանան այլոց թշուառութեան վերայ։

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. *Ցամաք* (*ջուր*)։ 2. *Ցամաք* (*ոճ*)։ 3. *Պահք*։ 4. *Նիհար*։ 5. *Անաչառ*։ 6. *Փառաւոր* (*մահ*)։ 7. *Նիրհեալ* (*ջուր*)։ 8. *Տարբեր*։ 9. *Վայրենի* (*ժողովուրդ*)։ 10. *Վայրենի* (*անասուն*)։ 11. *Խաղաղ* (*կեանք*)։ 12. *Ցաջողիլ*։ 13. *Ճերմակ* (*հաց*)։ 14. *Ճերմակ* (*կտաւ*)։ 15. *Ճերմակ* (*մորթ*)։ 16. *Ճերմակ* (*խաղող*)։ 17. *Հաստատել*։ 18. *Մօտենալ*։ 19. *Երեւիլ*։ 20. *Լռել*։ 21. *Հարստութիւն*։ 22. *Հարուստ*։ 23. *Հարստանալ*։ 24. *Սխալ* (*ձայն*)։ 25. *Սխալ* (*դատողութիւն*)։ 26. *Սխալ* (*լուր*)։ 27. *Արուեստական*։ 28. *Խոր* (*քուն*)։ 29. *Գնող*։ 30. *Գերի*։ 31. *Գերութիւն*։ 32. *Գնել*։ 33. *Երիտասարդութիւն*։ 34. *Կեղծաւոր*։ 35. *Նենգաւոր*։ 36. *Դատապարտել*։ 37. *Իջանել*։ 38. *Խոնարհիլ*։ 39. *Կասկածիլ*։ 40. *Կասկած*։ 41. *Կասկածէ*։ 42. *Ձախ*։ 43. *Քաղաքական* (*պաշտօնեայ*)։ 44. *Գովեստ*։ 45. *Գովել*։ 46. *Գովելի*։

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. *Աղքատը* կը *վաճառէ* զպիտանին։ 2. *Աշխատութիւնը* կը *զօրացունէ* եւ կը *հանգչեցունէ* զմարմինն։

3. Շատ խօսիլ, քիչ մտածել, այս է ապացոյց անձուկ եւ թեթեւ մտաց։ 4. Թշուառութեան մէջ բարեկամի ուրուք ընկերութիւնն չարիքը կէս իմն կը նուազեցունէ։ 5. Տկար ոգիք տեղի կուտան իւրեանց կրից։ 6. Կը ցաւիմ վիճակին վերայ այն մարդուն որ գերի է իւր կրից։ 7. Իմաստունը կ'երկնչի ի ճոխութենէ։ 8. Նա որ միշտ կը տենչայ աղքատ է։ 9. Աղքատք եւս ունին իւրեանց օրերն հանդարտութեան, ուրախութեան եւ երջանկութեան։ 10. Խնայութիւնն՝ ընչից խելօք կիրառութիւնն է։ 11. Ճշմարտութեան լեզուն համարձակ է։ 12. Ամենայն ինչ կ'անցնի։ 13. Ճշմարտութիւնը վստահութիւն կը ներշնչէ։ 14. Որքան ժանտ եւ լինին մարդիկ, չեն համարձակիր առաքինութեան թշնամի երեւիլ։ 15 Մոռացիր զոր ինչ կուտաս։ 16 Ուսումնասէր տղան իւր պարտքերն հաճութեամբ կը կատարէ։ 17. Չար խիղճ մի երբեք հանդարտ չէ։ 18. Մահն անգութ է նորա համար որ չարուք ապրեցաւ։ 19. Յաճախ ճոխք բաւական չունին շատով։ 20. Բարի որդի մի իւր ծնողաց պարծանքն ու մխիթարութիւնն է։ 21. Հարուստ եւ երջանիկ հոմանիշ չեն։ 22. Երբ միանանք զօրաւոր եմք։ 23. Միութիւնը զօրութիւն է։ 24. Միանալ զօրանալ է։ 25. Աստուած կ'օրհնէ եւ կը վարձատրէ բարի սրտերն։ 26. Զուարճալի է ամառն գիւղն անցունել. Զուարճալի է՝ ամառը գիւղն անցունել։ Զուարճալի է՝ ամառը գիւղն անցունել։

### ՀՐԱՀԱՆԳ Ե.

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. Ստէպ։ 2. Տնկել։ 3. Պաշտպանողական։ 4. Վրէժ։ 5. Վրէժ խնդրել։ 6. Տարակոյս։ 7. Մտազբաղ։ 8. Տժգոյն. 9. Ուղղաձիգ (գիծ)։ 10. Ջանձ-

լացունել: 11. Ձանձրացուցիչ: 12. Բարեկամ: 13. Ժուժկալութիւն: 14. Ժուժկալ: 15. Շնորհել: 16. Ցուրտ (օդ): 17. Ցուրտ (ընդունելութիւն): 18. Ցամաքութիւն: 19. Արդասաւոր: 20. Յաջողակ: 21. Երեւիլ: 22. Կանոնաւոր: 23. Դիւրին: 24. Գոհ: 25. Հաստատուն: 26. Օգտակար: 27. Օրինաւոր: 28. Մահկանացու: 29. Մահացու (մեղք): 30. Մարդատեաց: 31. Վատ: 32. Ամպարիշտ: 33. Ապուշ: 34. Շոյտ: 35. Առողջ: 36. Համակրութիւն: 37. Վհատեցունել: 38. Մխիթարել: 39. Սկսիլ: 40. Սկիզբն: 41. Զօրացունել: 42. Լուսաւորութիւն: 43. Լոյս: 44. Հանիլ:

## ՀՐԱՀԱՆԳ 7.

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. Անաչառ լեր քեզ համար: 2. Դատարկութիւնը եւ անժուժկալութիւնը վնասակար են առողջութեան: 3. Արդարութիւնը պարտի դատապարտել զյանցաւորս: 4. Դառն է կեանքն այն յանցաւորին համար զոր կ'արդարացնեն: 5. Իմաստունն իւր յանցանաց պատճառն յինքեան կը գտնէ: 6. Աշխատասէր, պարկեշտ, հնազանդ եւ մաքուր տղայք պիտի վարձատրուին: 7. Մաքրութիւնը տղայոց ամենէն գովելի յատկութիւնն է: 8. Մարդ կը յաջողի հակառակ իւր թշնամեաց, աշխատութեամբ եւ բարի վարուք: 9. Թող բարեկամութիւնը չարգելու զքեզ ճանաչելու թերութիւններն քո բարեկամին: 10. Գիտունը ճոխ է իւր աղքատութեան մէջ: 11. Լաւ մատեանները կ'ապրին: 12. Կը սիրեմ, կը գնեմ զբօսուցիչ մատեաններն: 13. Ադամ կ'ըսէր Եւային «Քեզ հետ աշխատութիւնն իսկ ինձ քաղցր կը թուի»: 14: Ամենայն բարիք զոր Աստուած կ'առաքէ

ան մեզ՝ վարձատրութիւնք չեն։ 15. Առաքինի մարդիկ սիրելի կ'ընեն զմարդկութիւնն։ 16. Հանգիստը փառաւորին մահն է։ 17. Երախտագիտութիւնը վեհ ոգւոց առաքինութիւնն է։ 18. Ապերախտ ոգի մի կը մոռնայ ծառայութիւններն։ 19. Երանի այն աշակերտին որ իւր աշխատութեամբն, փութաջանութեամբն եւ բարի վարուքն իւր բոլոր ուսուցչաց սիրոյն արժանացած է։ 20. Սակաւ մարդիկ կան որք իւրեանց համբաւէն աւելի կ'արժեն։ 21. Ազատութիւնը կը բարձրացունէ զմարդ։ 22. Ամօթ այն, չար սրտին որ կ'ուրախանայ այլոյ չարեաց վերայ։ 23. Մեք կը գովեմք զամենայն ի մեզ, զչարն իսկ։ 24. Եթէ բարի ես, սիրելի պիտի լինիս։ 25. Ազատութիւնը մեծագոյնն է ի բարիս։ 26. Զոհելով զմամոնայն իւր պարտուց, մարդ բարի քաղաքացի եւ պատուաւոր մարդ կը լինի։ 27. Կանխիկ կը գնէ։ 28. Համեստութիւնը գրեթէ միշտ ընկեր է ճշմարիտ արժանեաց։ 29. Խստութիւնը կը զայրացունէ ամենայն քաղցր բնաւորութիւններն։ 30. Երբեք աղքատ չպիտի լինիս եթէ պարզութեամբ ապրիս. Երբեք աղքատ չպիտի լինիս եթէ պարզութեամբ ապրիս. Երբեք աղքատ չպիտի լինիս եթէ պարզութեամբ ապրիս։

## ՀՐԱՀԱՆԳ 8.

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. Փութացունել։ 2. Յօժարութեամբ։ 3. Քաղաքակրթութիւն։ 4. Ի լաւ անդր։ 5. Թոյլ տալ։ 6. Թոյլտուութիւն։ 7. Կորուսանել (խաղի մէջ)։ 8. Կորուսանել (իր մը)։ 9. Չոր (պտուղ)։ 10. Չոր (լաթ)։ 11. Անզգայ։ 12. Երէկ։ 13. Տիւ։ 14. Երեկոյ։ 15. Արշալոյս։ 16. Միջօրեայ։ 17. Ձմեռն։ 18. Գարուն։

19. Յառաջ։ 20. Նախ։ 21. Վերայ (սեղանին)։ 22. Այո։ 23. Յարգանք։ 24. Յարգել։ 25. Յարգելի։ 26. Յարգենք զայն։ 27. Խոնջիլ։ 28. Պարապ։ 29. Ամլութիւն։ 30. Հիմնադիր։ 31. Հիմնել։ 32. Խաղաղութիւնը կը հիմնէ։ 33. Խաղաղութեան քաղցրութիւնները։ 34. Հին։ 35. Քաղցր (պտուղ)։ 36. Քաղցր (նայուածք)։ 37. Քաղցր (մահ)։ 38. Քաղցր (ջուր)։ 39. Զուարթ։ 40. Համեստ։ 41. Ծափահարել։ 42. Ապահով (ճամբայ)։ 43. Բիրտ։ 44. Փոքր։ 45. Հաստուն։ 46. Հսկայ։

## ՀՐԱՀԱՆԳ Թ.

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. Չիք ինչ քաղցրագոյն քան զյիշատակ բարեաց զոր ըրած է ոք. բարի գործ մը կակուղ բարձ մըն է։ 2. Արդարոյն քունը խաղաղ է։ 3. Մարդոյն գործերն կորնչելի են։ 4. Տիրոջ ներկայութիւնը ձին կը գիրցունէ, շտեմարանը կը լիցունէ, տունը կը հարստացունէ եւ երջանկութիւնը կը հիմնէ։ 5. Այն իշխանութիւնն որ կը յենու երկիւղի վերայ պիտի կորնչի։ 6. Հոգին կը հրամայէ։ 7. Գովեստը միտքերը կը խտըղտէ։ 8. Տգիտութիւնը մտաց գիշերն է։ 9. Զուարթութիւնը հոգւոյն առողջութիւնն է։ 10. Չարին բարեկամութիւնը նախատինք մի է։ 11. Անգթութիւնը մարդոյ բնութեան հակառակ է։ 12. Եթէ գիտես, խօսէ։ 13. Յաճախ մարդ կը զղջայ խօսելուն համար։ 14. Մարդ միշտ գոհ կը լինի իւր վիճակէն երբ զայն ածէ ի կշիռ ընդ յոռեգունին։ 15. Որովհետեւ հարստութիւնն չազնուացուներ զմարդն, է՞ր կը պատուեն զայն։ 16. Սէրն եւ ներումն յերկնից իջած են։ 17. Արդարոյն աղօթքն հաճելի է Աստուծոյ։ 18. Պետու-

*թիւն մի խarխուղ է երբ օրէնք մոռացեալ են անդ։ 19. Պarկեշs մարդոց երջանկութիւնը sեւական է։ 20. Բանալ զիւր հոգին փառասիրութեան, hրամarիղ է ի հանգստենէ։ 21. Sqks եւ յանձնապաsան այս չar մանուկը իւր թշուառ ծնողաց յուսահաsութիւն կը պատճառէ։ 22. Ազնիւ հոգի մի չկարէ նենգութիւն բովանդակել։ 23. Որդեակ իմ, մի օր պիտի զղջաս քու ղաsarկապոrsութեանդ համար։ 24. Ծուլութիւնը եւ շռայլութիւնը կը տանին զմարդիկ ի կոrծանումն։ 25. Խouքը կը թռչի։ 26. Ամենայն ինչ կը ժպsի եrիsաaaր-ղութեան։ 27. Բարեկամէ մի հեռի՝ մեր զգացած եr-ջանկութիւնը նուազ fաղgr կը թուի. Բարեկամէ մի հեռի՝ մեր զգացած երջանկութիւնը նուազ քաղցր կը թուի. Բարեկամէ մի հեռի՝ մեր զգացած եrջանկու-թիւնը նուազ fաղgr կը թուի։*

**ՀՐԱՀԱՆԳ 10.**

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. *Երէց (որդի)*։ 2. *Փթթիլ*։ 3. *Յառաջաբան*։ 4. *Պարտապան*։ 5. *Գայթակղեցունել*։ 6. *Հեռակէտ*։ 7. *Միահեծան*։ 8. *Միապետութիւն*։ 9. *Բացարձակ (ճըշմարտութիւն)*։ 10. *Գլխաւոր (Նախադասութիւն)*։ 11. *Առասպել*։ 12. *Առասպելական*։ 13. *Հակիրճ*։ 14. *Արձակ (բան)*։ 15. *Բազմապատկութիւն*։ 16. *Յաւելում*։ 17. *Ամբողջ (թիւ)*։ 18. *Դժոխային*։ 19. *Հիւսիսային*։ 20. *Հիւսիս*։ 21. *Արեւելք*։ 22. *Արեւելեան*։ 23. *Խափշիկ*։ 24. *Մասնաւոր*։ 25. *Անդր Ալպեան*։ 26. *Շինական*։ 27. *Յաջող (հողմ)*։ 28. *Տեւական*։ 29. *Համադրական*։ 30. *Գռեհիկ*։ 31. *Հին (պատմութիւն)*։ 32. *Հին (դրութիւն)*։ 33. *Լիճ*։ 34. *Նեղուց*։ 35. *Ծոց*։ 36. *Գոգաւոր*։ 37. *Հեղինակութիւն*։ 38. *Հեղինակել*։ 39. *Հեղինակ*։ 40. *Ելլել (անկողնէն)*։ 41.

*Բնական (վիշտ)*։ 42. *Պայծառ (երկինք)*։ 43. *Հրեշտակ*։ 44. *Ստեղծել*։

## ՀՐԱՀԱՆԳ 11.

Հետեւեալ պարբերութեանց իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

1. *Տերեւաթափի* ծառ մը՝ պատկեր է ծերութեան եւ զառամութեան։ 2. Երկիրն անտառ մը է։ 3. Ողոքիչ ստութիւն մը կը զզուէ զանձնասիրութիւնն։ 4. Աշխատութիւնը կը բոցավառէ եւ կ'ոգեւորէ զհանճարն, սիրենք ուրեմն աշխատութիւնն։ 5 Մեղաւորին կեանքը թշուառ է։ 6. Ամբարիշտը կը հայհոյէ եւ վրէժ կը խնդրէ։ 7. Վրէժխնդրութիւնը փոքրիկ հոգիներուն մոլութիւնն է։ 8. Ժամանակը կը մաշեցնէ զվէրքն։ 9. Խոյս տուր արուեստակութենէ։ 10. Երջանկութիւնը ցնորք մը է։ 11. Մարդիկ բարերարութիւնն աւազի վրայ կը գրեն։ 12. Ամբաստանեալի մը անտարբերութիւնը չապացուցաներ թէ անմեղ է։ 13. Գիտութիւնն զմեզ կ'ազատէ ի նախապաշարմանց։ 14. Լայն դուռը ի կորուստ կը տանի։ 15. Ազատ ես եթէ սիրտդ անբիծ է։ 16. Հաւատքը կը փրկէ զմարդն։ 17. Ամէն իշխանութիւն, որ հիմնեալ է արդարութեան վրայ եւ հայրաբար կը գործէ, սիրելի է եւ յարգելի։ 18. Կեանքն երկայն է թշուառին համար։ 19. Ամենէն ազատական օրինաց տակ ժողովուրդ մը միշտ գերի պիտի մնայ եթէ տգէտ է։

## ՀՐԱՀԱՆԳ 12.

Հետեւեալ բառերուն հականիշը գտնել.

1. *Նախորդ*։ 2. *Կարծր*։ 3. *Ամուրի*։ 4. *Ծանր (հիւանդութիւն)*։ 5. *Թափանցիկ*։ 6. *Թարմ (հաց)*։

7. Ձախորդութիւն: 8. Ցած: 9. Կէս: 10. Երիր: 11. Զորիր: 12. Հաղարերորդ: 13. Ջով (ջուր): 14. Անօսր (օդ): 15. Կիսաստուր (ձայն) (dièse): 16. Ապերախտ: 17. Գրիչ: 18. Ապերախտութիւն: 19. Յիշել: 20. Լեռ: 21. Ջրհոր: 22. Կամուրջ: 23. Մարդ: 24. Ծոյլ: 25. Ծոյլութիւն: 26. Ցամաք (երկիր): 27. Երկինք: 28. Կեանք: 29. Օրորոց: 30. Բարձրանալ: 31. Գիտութիւն: 32. Բարեկամութիւն: 33. Տէր: 34. Պատիժ: 35. Հրամայել: 36. Ազնիւ: 37. Պարկեշտ: 38. Բաղադրեալ: 39. Դժոխք: 40. Մեղաւոր: 41. Խրճիթ: 42. Երջանիկ: 43. Պատճառ: 44. Առաքինութիւն: 45. Բարիք: 46. Առատաձեռն:

## ՀՐԱՀԱՆԳ 18.

Հետեւեալ նիւթոյն իմաստը շրջել, շեղագիր բառերուն հականիշը գործածելով.

### Ծոյլ ԱՇԱԿԵՐՏՆ

Կ'*ատեմ* այն յոռի աշակերտն, որ միշտ *դատարկ*, *անուշադիր*, *անփոյթ* է. Նորա համար ժամերը շատ *յամր* կը սահին, որովհետեւ գէշ գործածուած ժամանակն *երկայն* կը թուի ուսումը զայն կը *ձանձրացունէ*, ընթերցումը զայն կը *յոգնեցունէ*, եւ աշխատութիւնն իրեն համար *վիշտ* մի է: Նա զամենայն ինչ *դժուար* կը գտնէ, եւ յոյժ *պարզ* բաներու մէջ իսկ կը ձախողի. ուստի իւր ընկերները զինքը կ'*անարգեն*, իւր ուսուցիչը զայն կը *պատժէ*, իւր մայրը որ *դժբախտ* է նորա *անփութութեանն* համար, կը *յանդիմանէ* զինքն: Այս աշակերտը ընդ հուպ *հպարտ տգէտ* մի պիտի լինի. քանզի *հպարտութիւնը տգիտութեան* սովորական ընկերն է, կամ, իմաստնոյն բանին պէս «*Հպարտութիւնը* եւ *անմտութիւնը* միշտ միատեղ կ'երթան»: Կը *ցաւիմ* այսպիսի աշակերտի մի վիճակին

վերայ, եւ ո՜վ չցաւիր, եթէ մտածէ որ յոռի դաստիարակութիւն մի մոլորութեան աղբիւրն եւ ամէն չարեաց սերմն է:

## ՀՐԱՀԱՆԳ 14.

## ԳԱՐՈՒՆ

Հետեւեալ նիւթը շրջել ի ՁՄԵՌՆ ձեռագիր բառերուն հականիշը գործածելով.

Գեղածիծաղ գարունը կենաց եւ շարժման եղանակն է. առաջին օրերը բնութեան զարթման նշանն են. Ծառերը կը ծածկուին իրենց սաղարթներովը, եւ դարաստաններն, թռչնոց դայլայլիկներովը զուարթացած, կ'զգենուն իրենց դալարագեղ զարդն: Ծառոց հիւթն, ընդ երկար կաշկանդեալ, կը շրջի երակաց մէջ, եւ կ'սկսի սնուցանել ոստերն. խաշանց հօտերը կը մեկնին իրենց գոմերէն եւ կը տարածուին դաշտերուն մէջ: Երկրագործը կը թողու հանգիստն եւ կը դառնայ դաշտային աշխատութեանց. տիւք առաւել երկայն են, գիշերք առաւել կարճ. արեգակն աւելի ընդերկար կը կենայ հորիզոնին վերայ, եւ աւելի ուղղորդ կ'արձակէ առ մեզ իւր լոյսն եւ ճառագայթներն: Ի՜նչ զուարթագեղ տեսարաններ կ'ընծայէ յայնժամ աչաց՝ բնութիւնն գեղեցկացեալ:

## ՀՐԱՀԱՆԳ 15.

Աշակերտը պարտի լրացունել հետեւեալ պարբերութիւնները, իւրաքանչիւր գծին տեղ ձեռագիր բառերուն հականիշը դնելով.

1. Ոմանք ի դիշակեր թռչնոց ցերեկը կը ննջեն եւ — —: 2. Թէ հարուստն թէ —, թէ զօրաւորն թէ — միահամուռ կ'երթան կեանքէն ի —: 3. Փոքրիկ պատճառներն յաճախ յառաջ կը բերեն — —: 4. Չար օրինակները կը գայթակղեցունեն առաւել քան զոր չեն

— — օրինակներն։ 5. Ի հեռուս է ինչ, այլ — է —։ 6. Մարդիկ այնքան ունայնամիտ են զի փոքրիկ ուրախութիւն մի իւրեանց մոռանալ կուտայ — — մի, 7. Արիութիւն է ներել նախատանաց, եւ — —։ 8. Լուդովիկոս ԺԴ.ի թագաւորութեան վախճանը այնքան ամօթալից եղաւ Գաղիոյ համար որչափ — — եղած էր։ 9. Փոքրիկ շահ մի որ ստոյգ է լաւագոյն կ'արժէ քան — շահ մի որ — է։ 10. Այս ինչ որ հարուստ է սակաւուք, այն ինչ որ — է —։ 11. Բարին կը յաջորդէ —, ծիծաղ կը յաջորդեն —։ 12. Օրէնքը շինուած է պաշտպանելու համար տկարութիւնն ընդդէմ —, միամտութիւնն ընդդէմ —, ուղղութիւնն ընդդէմ —։ 13. Բարեկամութիւնը զանոնք միացոյց, — զանոնք —։ 14. Այն մարդիկ որ կ'ամբարտաւանին յաջողութեան մէջ, — — մէջ։ 15. Հարստութիւնը կը քաշէ բարեկամներն, եւ — զանոնք —։ 16. Բարեկամութիւնը կը վերջանայ անդ ուր անվստահութիւնը —։ 17. Եթէ բարիներուն բարեկամութիւնն ստանաս, պիտի ծաղրես — —։ 18. Ո՞վ է այն գերագոյն ճարտարապետն որ կուտայ արեգական ծագել եւ —, որ կուտայ զլոյս տուընջեան աշխատութեան ժամուն եւ — — — ժամուն։ 19. Աստուած յաճախ խորհրդաւոր տեսութեամբ արդարաւոր կ'ընէ զայն որ — կը թուէր, զօրաւոր եւ խեղճացի կ'ընէ զայն որ — եւ — կը կարծուէր։ 20. Ամէն մանուկ իւր սրտին մէջ ունի առաքինութեանց սերմերն եւ — սերմեր, դաստիարակաց է զարգացունել առաջիններն եւ — —։ 21. Երբ ես այդ կ'ընեմ, պէտք չէ — պատասխանել, եւ եթէ ես հրամայեմ, պէտք է —։ 22. Մարդասպանը կը փախչի ի մարդկանէ առանց զանոնք ատելու. անձնասէրն — — զանոնք առանց —։ 23. Այն բարեկամը որ կը ծածկէ ի մէնջ մեր թերութիւններն, նուազ օգտակար է քան

այն — որ մեզ — զանոնք: 24. Ըստ այնմ զի լինիս հզօր կամ —, հարուստ կամ —, մեծ կամ —, համարակաց դատողութիւնն զքեզ ճերմակ կամ — պիտի ընէ: 25. Նա որ կը սիրէ զամենայն ոք չը սիրեր —: 26. Նա որ զամենայն ինչ գիտեմ կ'ըսէ, — գիտէ: 27. Նա որ բարիքն կը ձանձրանայ, — մէջ կ'իյնայ, ղաւազունին կը ցանկայ — կը պատահի: 28. Քանի՛ մարդիկ հարուստ ծնած են եւ — —: 29 Մարդ աւելի հանգիստ կը քնանայ խրճթի տակ քան — մէջ: 30. Բարի հայր մի կը պատժէ զաւակով եւ — —: 31. Անազնական պտուղները լաւագոյն են քան — պտուղներն: 31. Անմիտն ոչ խօսիլ գիտէ ոչ —: 32. Ով կրնայ ըսել «աղքատ եմ, — —»: 33. Այս մանուկը, որ աստանայ մի է տանը մէջ, — մի է — քով: 34. Մարմնոյն վէրքերը կը փակուին, բայց — վէրքերն — կը մնան: 35. Ի բաց կաց այն մարդէն որոյ բերանը թէ պաղ կը փչէ թէ —:

## ՀՐԱՀԱՆԳ 16.

Աշակերտը պարտի լրացունել հետեւեալ պարբերութիւններն, իւրաքանչիւր գծին տեղ շեղագիր բառերուն հականիշը դնելով.

1. Երբ զարմանքը դադրի աճելէ, —: 2. Ահա անձնասիրին օրինագիրքն «ամենայն ինչ ինձ համար: — — համար»: 3. Մառանք զով են յամարայնի, եւ — —: 4. Ծիծեռնակք կուգան ի գարնան եւ — —: 5. Շատ ներէ այլոց, — ներէ —: 6. Փոխ կ'առնու յամենեցունց — —: 7. Սոխա կը հասունցնէ ինչ որ — —: 8. Բախտին անուոյն վերայ մարդ յամր կը բարձրանայ, եւ — —: 9. Մեր կեանքը դաշտ մի է զոր պարտինք մշակել, ծաղկունք են ի գարնան, — —, աշխատութիւն վասն ամառան, — վասն —: 10. Հին բարեկամը գանձ մի է միշտ —: 11. Են ծաղկունք որ

կը փրթին ընդ առաւօտն եւ — —: 12. Լուսագոյն է վտիտ պատուոյ մէջ քան — — մէջ: 13. Նախամեծար կը համարիմ պատուաւոր աղքատներն քան — —: 14. Ամառան տօթն չէ այնքան անտանելի որքան — —: 15. Զախորդութիւնը որ ի կոր կործանէ տկար հոգիները, — — հոգիները: 16. Մարդ սառն է ճշմարտութեան առջեւ, եւ — — առջեւ: 17. Լեզուն շատագոյն եւ — բան մի է, եթէ նա գործին է ճշմարտութեան եւ իմաստութեան, է նաեւ գործին — եւ —. այնու մարդիկ կը գովեն կամ — զդիս, կը շինեն կամ — զքաղաքս, կը գրգռեն կամ — զկապս: 18. Ծոյլին առատութիւնը կը ծաղրէ — —: 19. Առիթն դժուարին է գտնել, — —: 20. Օրէնքը շինուած է վախցունելու համար չարերն եւ — համար —: 21. Տգիտութիւնը կը հաստատէ կամ —, — կը տարակուսի: 22. Խնայողութիւնն առատութիւն մի է աղքատութեան մէջ, եւ — — մէջ: 23. Չիք բնաւ ոչ շատ պատերազմ ոչ — —: 24. Խոնարհութիւնն յաճախ մի հնարք է — որ կը խոնարհի — համար միայն: 25. Քանի՜ մարդիկ լուռ պիտի մնային, եթէ արգիլուէր նոցա բարի ըսել զանձանց իւրեանց եւ — —: 26. Կեանքը շղթայ մի է մետաքսեայ, հիւսեալ բարեօք եւ —: 27. Չիք ինչ լաւագոյն կամ — քան բարի կամ — կին մի: 28. Սատան խօսէ այլոց հետ, — խօսէ — հետ: 29. Սուտն ու — առընթեր միմեանց կը ննջեն թանգարանաց մէջ: 30. Մահը խաղաղ է նոցա համար որոց — — է: 31. Մահը կը խնդայ տեսնելով որ ծեր մը — կը ձեւանայ: 32. Երիտասարդ կամ —, փոքր կամ —, հարուստ կամ —, գիտուն կամ —, ազնուական կամ —, խաղաղասէր կամ —, ամենեքեան պարտին մեռանիլ յաւուր միում: 33. Շուայլը կը սփռէ զոսկին իբրեւ աղբ, եւ — — զաղբն իբրեւ ոսկի: 34. Անձ-

*Նասէրը փոքրիկ պարգեւ մը կ'ընէ քեզ միով ձեռամբ,* — պարգեւ մը — համար — ձեռամբ ։ 35. *Անդ ուր առաքինութիւնը կը վերջանայ,* — — ։ 36. *Կեղծաւորք առաքինի են արտաքուստ, բայց* — *են* — ։ 37. *Ապերախտը կը մոռանայ զբարերարութիւնն,* — — *զայն* ։ 38. *Աղքատին հիւղն այնքան երջանկութիւն կը պարունակէ, որքան* — — ։ 39. *Նա որ կը խոնարհի, պիտի* —, *ըսաւ Յիսուս* ։

## ՀՐԱՀԱՆԳ 17.

Աշակերտը պարտի լրացունել հետեւեալ պարբերութիւններն, իւրաքանչիւր գծին տեղ՝ շեղագիր բառերուն հականիշը դնելով.

1. *Աստուած կը ծագէ իւր արեւն նոցա վերայ որք կ'օրհնեն իւր անունն, եւ նոցա վերայ որք* — *զայն. անձրեւ կը տեղայ արդարոյն արտին վերայ ինչպէս նաեւ* — ։ 2. *Մարդ պարտի աշխատիլ իւր երիտասարդութեան մէջ, իրաւունք ունենալու համար* — *իւր* — *մէջ* ։ 3. *Թող բարեկամութիւնն՝ որ քեզ գովել կուտայ քո բարեկամին բարեմասնութիւններն, չարգելու զքեզ* — *նորա* — ։ 4. *Նա որ չարութիւն կը սերմանէ չկարէ* — — ։ 5. *Յիշէ այն շնորհներն զորս ընկալար,* — *զայնս զորս* — ։ 6. *Երիտասարդ՝ հրեշտակ մի կրնայ* — — *լինել* ։ 7. *Պէտք չէ երբեք ոչ շատ յուսալ, ոչ շատ* — ։ 8. *Չարն արագ կուգայ,* — — ։ 9. *Դրամը բարի ծառայ մի է, եւ* — — *մի* ։ 10. *Երեւութապէս ամենէն երջանիկն, յաճախ* — *ամենէն* — *է* ։ 11. *Մարդիկ ոմանք որ առաւօտեան են չքաւորութեան մէջ,* — *կը լինին* — *մէջ* ։ 12. *Կան իրք յորոց զրկուելով կը բժշկուինք, եւ կան իրք զորս* — ։ 13. *Մոլեռանդութիւնն հեզութեան կրօնի կը փոխէ* — *կրօն մի* ։ 14. *Չափազանցութիւնն աւելաբանութիւն մի է յայսկոյս կամ* — *ճշմարտութեան* ։ 15. *Ա-*

րեգակն իր ներկայութեամբը յառաջ կը բերէ լոյս, ջերմութիւն, շարժումն եւ կեանք, եւ իր — — , — — , եւ —։ 16. Կեղծաւորն մերթ զառնուկ հեզ եւ մերթ — —, առերեւս կը շողոքորթէ եւ — —։ 17. Լաւագոյն է խղճիկ մի յարդաշէն ուր կը խնդան, քան — մի — ուր —։ 18. Ճոխութիւնք եւ աշխարհ կ'անցնին, բայց բարի գործերը —։ 19. Մեք արդիւնքը կը տեսնեմք, Աստուած եւ եթ գիտէ —։ 20. Որկրամոլն երկու գործ ունի միայն ուտելու, այսինքն առաւօտեան ատրան եւ — —, 21. Համանիշ բառերն անոնք են որք իւրեանց մէջ մեծ պատշաճութիւն եւ — — ունին։ 22. Առաւօտուն անհաւատ, — —։ 23. Կան դառն վիշտեր, որք նկատել կուտան զմահն իբր մի մխիթարութիւն եւ — իբր մի —։ 24. Վնասաբեր խնայողութիւններ կան եւ — —։ 25. Մեծ մտաց յատուկ է շատ խօսք ըսել — —։ 26. Վիպասանութեանց ընթերցումը զլուխը կը տաքցունէ եւ — —։ 27. Կենաց մէջ երջանկութիւնը բացառիկ կանոն մի է, իսկ — — կանոն։ 28. Պիտի գայ օր մի յորում Հայն տգիտութեան դառնութիւններն ապատելով, պիտի վայելէ — —։ 29. Շանթը կը զարնէ հպարտ կաղնին, եւ — — —։ 30 Բազումք պիտի կոչուին, բայց — պիտի —։ 31. Նախամեծար կը համարիմ պատուաւոր աղքատութիւն մի, քան — — մի։ 32. Յիսուս Քրիստոս ծիրանեաց մէջ չծնաւ այլ — — մի մէջ. նա իւր օրորոցին շուրջը ժողվեց ոչ թէ թագաւորներն ու աշխարհիս երջանիկներն, այլ — եւ —։ 33. Մարդիկ այլազան ճաշակներ ունին. ոմանք պատուոյ կը հետամտին, այլք — ի նմանէ. առնա կը սիրեն զիւղն, — —, ոմանք հանրական կենաց աղմուկը կը սիրեն, այլք — կենաց —։ 34. Մարդոյ միտքն չկարէ ըմբռնել արդիւնք մի առանց —, արարած մի առանց —։

## ՀՐԱՀԱՆԳ 18.

Աշակերտը պարտի լրացունել հետեւեալ պարբերութիւններն իւրաքանչիւր գծին տեղ շեղագիր բառերուն հականիշը դնելով.

1. *Անասունք յաճախ աւելի լաւ կը գործածեն իւրեանց բնազդումը քան — իւրեանց —։* 2. *Գառին մորթոյն տակ յաճախ — մի կը թաքչի։* 3. *Նաւավարն կը նախընտրէ վայն մրրիկն որ զինքն յառաջ կը մղէ քան այն — որ զինքը —։* 4. *Ի վերջնում աւուր Քրիստոս պիտի զատէ զորումն —, զառներն աջ կողմը պիտի դնէ եւ — — կողմը։* 5. *Ամենայն ինչ սիրալի կ'երեւայ երիտասարդին որ կը մտնէ յաշխարհ, ամենայն ինչ — կ'երեւայ — որ — անոր։* 6. *Կան ճշմարտութիւնք որ կը վշտացունեն, ինչպէս որ կան — որ —։* 7. *Երիտասարդութիւնն յուսով կ'ապրի, եւ — —։* 8. *Աստուած ի չգոյէ ած ի գոյ մարմնաւոր եւ —, երեւելի եւ — արարածներ։* 9. *Քաղաքավարութիւնը այնպէս կը ներկայացունէ զմարդ առաքինի, որպէս պարտ էր նմա լինել —։* 10. *Մոռցիր ինչ որ տուած ես, եւ — ինչ որ —։* 11. *Ամէն վիճակի մէջ միեւնոյն չեն պարտիք բոլոր մարդոց համար, այլ աւելի կը պահանջուի յայնմանէ որ առաւել — է։* 12. *Ամէն իմաստնախոհ մարդ պարտի գիտել թէ այս կեանք ոչ հանգստեան այլ — համար տրուած է մեզ, այսինքն՝ թէ պիտի աշխատիմք երկրի վերայ — համար — մէջ։* 13. *Անգործութիւնն կը ցրտէ ամենէն հաւժկու մարմիններն, իսկ կրթանքն եւ — — զօրաւորագոյնս։* 14. *Ծուլութիւնն այնչափ տաղանդներ կը փճացունէ, որքան չէ կարող — —։* 15. *Հաճոյքն բարութիւն է եթէ համեստութեան հետ կցորդի, այլ — կը լինի եթէ անոր —։* 16. *Չարք ձեռնտու կը լինին միմեանց չարիք գործելու համար։* 17. *Մարդիկ իւրեանց բարութեանց մատակարարներն են. Աստուած՝ որ գե-*

*բազում Տէր է, յանձնեց զայնս մեծատանց որպէս զի նպաստեն —։ 18. Թող երիտասարդք համախոհ լինին այն —, որք իւրեանց կենաց կանոնաւորութեամբը միշտ մտադիր եղած են յանձինս ձգել զմեծարանս այլոց։ 19. Մարդ իւր կենաց ալեւորեալ հասակին մէջ կը հնձէ զայն ինչ՝ զոր — իւր կենաց առաջին տարիներուն մէջ։ 20. Ճշմարտին եւ — մէջ նոյն տարբերութիւնը կը տեսնուի, ինչ տարբերութիւն որ կայ ընդ մէջ բարւոյն եւ —։ 21. Ազատ կը նկատուի այն որ — չէ ո եւ է ամօթալի կրից։ 22. Ոչ երջանիկ յիմար կը լինի եւ ոչ — —։ 23. Կեանք եւ —, բարիք եւ — տրուեցան մարդոյն, զորն եւ նախապատիւ համարի այնմ մասնմուտ կը լինի։ 24. Եղուկ, քաջ իսկ կ'զգամ իմ մոլութեամբքս՝ թէ մարդ իւր կենաց մէջ կիսով չափ միայն կ'ապրի, եւ թէ հոգւոյն կեանքն — — յետոյ սկիզբն կ'առնու։ 25. Մահն հանդերձեալ աշխարհի նաւահանգիստն է, ինչպէս — — աշխարհի։ 26. Մեր կեանքը կը միացունէ ինչ որ մահն —։ 27. Աստուծոյ որդւոց համար մահն անցք մի է դէպ ի —, նա կը բանայ ի մէնջ ամէն ունայնութիւն եւ ապականութիւն, եւ նա — զմեզ յաւերժական պարգեւօք։ 28. Երկարատեւ յոյսեր կը մաշեցունեն զուրախութիւնն, ինչպէս երկարաձիգ հիւանդութիւնք կը մաշեցունեն —։*



## 5. ԱՁՆՈՒՈՒԹԻՒՆ

*1. Հ. Յորժամ կը կայանայ ոճոյ ազնուութիւնն.*

*Պ. Ոճոյ ազնուութիւնը կը կայանայ գծուծ իմաստներէ և ստորին ու գռեհիկ բացատրութիւններէ զգուշանալու և միայն պարկեշտն ու*

*վայելուչը գրելու մէջ։ Ճաշակի տէր գրող մի կարէ ամենէն հասարակ գաղափար մի ազնուացունել և կարի դոյզն իրերն ազնուօրէն ըսելու հնարը գտնել։*

*Կա՞յ աւելի հասարակ բացատրութիւն մի քան զայս*

*Վիշտն յաւիտեան չտեւեր.*

*Սակայն Լաֆոնթէն գրեթէ մի նոր ճշմարտութիւն կ'ընէ զայն բացատրութեան ազնուութեամբ եւ կ'ըսէ*

*Տխրութիւնը կը թռչի ժամանակին թեւոց վերայ։*

*Ռասին միշտ մեծ ճարտարութեամբ գիտէ ազնուօրէն բացատրել դոյզն եւ անարգ իրերն. Թատերական բարձր քերթութեան մի մէջ յաջողակութեամբ կրցած է մուտ տալ զուարակ, խոզ, շաղիղ եւ շուն բառից, ըսելով*

*Միթէ կարծո՞ս եմ արեան զուարակներու եւ խոզերու*

Ողբերգ. Գոթող. Ա. 4

*Անդ ոչ այլ ինչ գտայ ես բայց քստմնելի խառնակոյտ*
*Ոսկորներու, քայքայուած տըղմաթաթաւ շաղիղներու,*
*Եւ զազրալի պատառ պատառ արիւնաթոր անդամներ*
*Զորոնք շուներըն լափլիզող կը կռուէին յիրերաց։*

Նոյն. Բ. 5

*Ոճոյ ազնուութիւնն, կ'ըսէ Մարմոնթէլ իւր* ՏԱՐԵՐՔ ԳՐԱԳԻՏՈՒԹԵԱՆ *գրքին մէջ, փոփոխելի է ըստ ժամանակաց, ըստ տեղեաց, ըստ բարուց եւ ըստ սովորութեան. լեզուն հետզհետէ կ'ընդունի կամ կը մերժէ միեւնոյն գաղափարներն եւ իւրեանց յատուկ նշաններն ըստ այնմ զի հասարակաց կարծիքը ազնուացուցած կամ ստորնացուցած է զանոնք. բայց միշտ բարուց պատշաճութեան՝ լեզուին հետ ունեցած*

վերաբերութիւնն է որ գձուձ կամ ազնիւ կ՚ընէ բացատրութիւնը։

Կիկերոն իսկ կը պատուիրէ ճարտարախօսին զգուշանալ դոյզն ու խափանեալ բառերէ եւ ի կիր առնուլ միայն ընտիր եւ ազնիւ բառեր։ Ուստի պարտ է ի բաց մերժել այն բառերն որ խորթ ու ռամկական համարուած են եւ այլ եւս խափանուած աշխարհաբարի մէջ. զոր օրինակ պլլել (փաթթել). պոռթկալ (ժայթքել). ճոզած (ազազուն, վտիտ). ղղըճուկ (գարշ, զազիր). ճիտ (վիզ). ճիւ (ոստ). վխտալ (եռալ, զեռալ). ճորով (բռնի). շնթռկիլ (պառկիլ) եւլն։

Զր. Հ. Ոճոյ ազնուութեան ի՞նչ բաներ կը նպաստեն.

Պ. Ոճոյ ազնուութեան կը նպաստեն, ընտանեկան տեսակցութեանց մասին, բարեկիրթ և քաղաքավար ընկերութեանց մէջ յաճախելն. իսկ գրագիտական գրուածոց մասին, պերճախօսական և բանաստեղծական ընտիր գրուածներ կարդալն։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

## ԳԱՐՈՒՆ

### ԵՒ ԻՒՐ ՀՐԱՊՈՅՐՆԵՐՆ ԱՆՑՆԻՒՐ ՏԻՈՑ ՀԱՄԱՐ

Աշակերտը պարտի հետեւեալ նիւթոյն մէջ, գծերուն տեղ պատշաճագոյն բառը դնել.

Երբ գեղեցիկ եղանակը կը հասնի, անզուսպ փափաք մը չե՞ս զգար նետուելու բնութեան գրկին —, դաշտաց ու հովտաց — վազելու, լերանց — ելնելու եւ կամ ժայռի մը շուքին — կամ աղբիւրի մը — (մէջէն. եզրն. մէջ. տակ. կատարն) նստած ժամերով մոռնա-

լու ինքզինքդ ու խորասոյզ թաղուելու մթնոլորտին — ու լայն հորիզոններու — մէջ (ընդարձակութեան. անուշահոտութեանց)։ Անտարակոյս «այո» պիտի պատասխանես՝ բանաստեղծ ծնած լինիս թէ ոչ, վասն զի բնութիւնն հասարակաց բարեկամ մը, հասարակաց մայր մ'է, եւ ամէնուն սիրելի է իւր գիրկն ուր ամէն ոք կը գտնէ — եւ իր հոգւոյն պատշաճ — մը (ճարակ. քաղցրութիւն), եւ ո՞չ ապաքէն բնութեան առջեւ ամէն ոք քիչ շատ բանաստեղծ է, այնքան հզօր է իւր հրապոյրն մարդկային սրտին ու երեւակայութեան վրայ։ Տես այս տղաքներ, ինչպէս՝ գառնուկներու նման զուարթ՝ կը խայտան մարգաց վրայ, կը վազվզեն խնդագին, դալար խոտերու վրայ կը թաւալին ու խենդի պէս մէկ ծաղկէն միւսին դիմելով փունջ կը կազմեն երփներփեան՝ իւրեանց փափկաձայն սիրուն — ը խառնելով թռչնոց — ուն հետ (դայլայլիկներ. աղաղակներ)։ Երիտասարդը կրնա՞յ տունը մնալ երբ այնպէս գեղեցիկ է —, այնպէս — պայծառ — եւ երբ — (երկինքը. օդն. բնութիւնն) իր հազար ու մէկ հրապոյրներովն ու բիւր ձայներով հրաւէր կը կարդայ իրեն. այդ հասակ այն հասակն է ուր սիրտը նոր արթնցած բուռն զգայումներու ազդեցութեան տակ կը վրդովի ու իւր եզերքէն դուրս վազող ծովու մը նման՝ ինքն ալ կ'ուզէ պատռել կուրծքն ու փախչիլ. փափուկ ու նուրբ ամօթխածութիւններ ունի պատանին կենաց այդ եղանակին մէջ եւ անկարելի է իրեն ուրիշին հաղորդել ինչ որ կը յուզի իւր մէջ. ինչպէս քաղցր է իրեն այն ատեն բնութեան ծոցը ուր հեշտութեամբ կը հօսեն իւր արցունքներ, ուր կը կարծէ համակիր էակներ տեսնել, սոխակին երգոյն՝ զեփիւռին —՝ տերեւոց — ու ալեաց — մէջ սիրով՝ վշտով կամ երջանկութեամբ հա-

ռաչող ու իր հոգւոյն պատասխանող ձայներ գտնել եւ զգալ թէ իր սիրտն ալ ովկէանին նման կ'ընդարձակի ու երկնից պէս կ'աստղազարդի եւ թէ ինքն ալ իբրեւ բոյր մը կը ցնդի — համագոյից հետ ու սիրոյ երգ մը դարձած (կը խառնուի. կը կորսուի) տիեզերական ներդաշնակութեան մէջ։ Ահա հասուն մարդը, ընտանեաց հայրը, իր հետ առած իր կինն ու զաւակները կը պտտի՝ հանդարտ եւ գոհ՝ մարգագետնոց մէջ կամ՝ մակոյկի մը մէջ՝ կը քերէ եզերքն ճեղքելով խաղաղ ալիքն ու վայելելով զովութենէ՝ անուշահոտութենէ՝ երաժշտութենէ ու ակնապարար գոյներէ կազմուած հեշտութիւն մ'որ — սիրոյն եւ երջանկութեան հետ խառնուած՝ — (ընտանեկան. եդեմական) հաճոյից զգացման մը մէջ կ'ընկղմէ զինքն ու կը հանգչեցնէ օրուան կամ շաբթուան յոգնութիւններէն։ Ծերունին, որ այնքան գարուններ տեսած ու անցուցած է, անտարբե՞ր է արդեօք այլ եւս բնութեան երիտասարդացման. ո՛չ ապաքէն նա եւս սակաւ ինչ առուգացեալ կ'զգայ ինքզինք, երբ գարնանային արեւը կը ջեռուցանէ իր պաղած անդամներն եւ երբ բանալով պատուհանն՝ կը ծծէ մաքուր եւ առողջ օդ մը, որ կը լնու թոքերն ու նոր կենդանութիւն մը կը շնորհէ իր ոգեսպառ արեան. գարնանազարդ առոյգագեղ բնութիւնն կը յիշեցնէ իրեն նաեւ իր երիտասարդութեան — ու նման տեսարանաց առջեւ իր առաջին — (յոյզերն. տարփերն), եւ, միօք փոխադրուելով հին օրերու մէջ, կը մոռնայ — ու կ'ապրի մի պահ — (ներկայ. անցեալ) կեանքով, կը տեսնէ վարդայտ երիտասարդներն որ մերթ աշխոյժ մերթ տխուր ման կուգան եւ կը գոչէ «Ո՛հ, եթէ — գիտնայր, եթէ — (ծերութիւնը. երիտասարդութիւնը) կարենայր...)։

Այո՛, ամէն հասակ, եւ ամէն սլացման ու ամէն խառնուած ու սրտի ամէն վիճակ բնութեան տեսիլներուն մէջ իրենց յատուկ —, մտածութեանց —, խանդաղատիչ —, համակիր —, յափշտակութեան — (թեւեր. առարկայներ. հաճոյք մի. շարժումներ. նիւթեր) կը գտնեն եւ կը սիրեն զայն: Եթէ հարուստն կը վայելէ զայն իր ծովեզերեայ —, իր ծաղկաւէտ հոտաւէտ — եւ իր գեղեցկազարդ — (նաւակներուն. բուրաստաններուն. ամարաստաններուն) մէջ, ոչինչ նուազ կը վայելէ աղքատն ալ ծովուն եզրը քարի մը վրայ — կամ բլրոյն կուշտն — (նստած. ընկողմանած). փարթամք միայն մուտ ունին փարթամաց պալատից ու ոսկեձեղուն սրահից մէջ, բայց բընութեան ռամկավարական սեղանին որ կը տրուի բաց օդին մէջ կաղնեաց եւ մայրեաց սիւներով բռնուած երկնակամար առաստաղին տակ ու ծաղկահիւս դալարեայ գորգերու վրայ՝ արեւուն կամ աստեղց լուսոյն ու ծառոց տերեւազարդ ոստոց վրայ բազմած թեւաւոր երաժշտաց նուագներոյն՝ հրաւիրուած են անխտիր նաեւ աղքատն ու մուրացիկն: — ը նորա մէջ զմայլմամբ կը դիտէ բնական զօրութեանց գործունէութիւնը եւ կը խոկայ տիեզերական օրինաց ու նոցա զանազանութեան՝ բայց մի եւ նոյն ատեն ներդաշնակութեան վրայ. — կ՚ապշի այն անվերջ երեւոյթներուն վրայ որոց տակ կը յայտնուի կեանքը եւ պատճառներու եւ արդեանց անծայր շղթայն նկատելով սկզբան ու վախճանի խնդիրներու մռայլին մէջ կը խորամխի. — հսկայ լուսաւորին ու ոսկեփայլ միջատին, անսահման ծովուն ու ցօղոյ կաթիլին, երկնածրար կաղնւոյն ու կարծաբերձ խոտին վրայ կը տեսնէ մի եւ նոյն անհուն էակին կարողութեան, իմաստութեան եւ սիրոյն դրոշմը իսկ — ին (գիտուն.

արուեստագէտ իմաստասէր․ բարեպաշտ կրօնասէր ո-գին) համար բնութիւնը դիւթութիւն մ'է անդիմադրելի, անհուն հոգի մ'որ ինքզինք կ'արտայայտէ անթիւ ձեւերու տակ, որ — կը նայի, — կը խոկայ, — կը հնչէ, — կը մռնչէ, — կը գժդմի, — կը ժպտի, — կը սիրէ, — կը ցասնու, — կ'սպառնայ, — կը փայփայէ, — կ'երազէ, — կ'երգէ ու — կ'աղօթէ, (ծաղկամբ․ համայնից բերնով․ գիշերով․ շանթով․ արեգակով․ ջնակով․ աստեղաց աչքով․ թռչնոց բերնով․ ովկէանով․ սղոխով․ ղոյսով հողմով․ ամպերով)։

Թէ եւ ամէն եղանակի մէջ բնութիւնը կենդանի է ու գործօն, թէեւ ամէն եղանակի մէջ նա ունի իր գեղեցկութիւնքն ու հրապոյրները, բայց մանաւանդ գարնային եղանակի մէջ հիասքանչ է նա, կենսայորդ եւ բազմահրապոյր։ Երկիրն, իբրեւ թագուհի մ'որ կը զարդարուի, կը բանայ իւր գոհարատուփերն ու սապատներն ու կը պճնուի ճոխապաճոյճ, եւ ամենուրեք կը զարթնու կեանքը, խոտոյն տակ միջատներ, օդոյն մէջ —, տերեւոց ետեւ — կան։ — իր ցօղագին քրքմաթոյր ճաճանչներն ունի վերստին, — իր լուսախառն մեղամաղձիկ ստուերներ, — իր խոհալից հովանին, — իր դդչող առուակ (ծոռծոռն․ աշակայլյան․ պուռակն․ վերջալոյսն), եւ ամէն ինչ սէր է ու սիրով կը դրկախառնի, — զետերեւ կը փայփայէ, — գլարդ կ'երգէ եւ —՝ հանդարտ՝ երկնի լոյսերն կ'օրորէ իւր ծոցոյն մէջ (առիակն․ զեփիւռն․ ովկէան)։

Հրաչեայ․ (յԵրկրագունդ)

## ՀՐԱՀԱՆԳ Ձ.

## ՈՂՈՐՄԱԾՈՒԹԻՒՆ

Աշակերտը պարտի շեղագիր բառերուն տեղ իրենց հոմանիշը դնել առանց խօսքին իմաստն այլայլելու.

*Մարդ մի իւր աշխատութեամբը կ'ապրէր եւ կը պա-*

հէր իւր կինն ու մանուկները. եւ որովհետեւ առողջ կազմուած եւ ուժեղ բազուկներ ունէր, դիւրութեամբ գործ կը գտնէր եւ կրնար քիչ յոգնութեամբ իւր եւ ընտանեաց պիտոյքն հոգալ:

Բայց ժամանակ եկաւ զի այն երկրին մէջ նեղութիւն վրայ հասաւ, աշխատանքը շատ չբերելով նուազեցաւ, եւ միանգամայն կենաց կարեւոր նիւթերը սղեցին:

Ուստի աշխատաւորն ընտանեօք սկսաւ շատ նեղիլ, յետ սպառելու այն փոքրիկ գումարն զոր խնայողութեամբ պահած էր, ստիպուեցաւ նախ կարասիները կտոր կտոր ծախել, ապա հագուստներուն մէկ մասն, եւ այսպէս ամէն բանէն մերկանալով ի զուր կը մաքառէր անողորմ քաղցին հետ. բայց հիւանդութիւնն, քաղցին հետ, իւր բնակարանին մէջ մտեր էր:

Արդ այս մարդն երկու դրացի ունէր, մին հարուստ միւսն ոչ այնչափ:

Գնաց հարուստին եւ ըսաւ. «Ամէն բանէ զրկուելով կարօտ եմք պատառ մի հացի, ես, կինս եւ որդիքս. ողորմէ մեզ:»

Հարուստը պատասխանեց նմա. «Ես ի՞նչ ընեմ. երբ ինձ համար կ'աշխատէիր, միթէ վարձդ ճշդիւ չվճարեցի. ոչ քեզ եւ ոչ այլում վնաս գործեցի. ձեռներս անարատ են յանիրաւութենէ: Կը ցաւիմ թշուառութեանդ վրայ, բայց ամէն մարդ ինքզինքը միայն կը մտածէ այս նեղ ժամանակին մէջ որ ո՞վ գիտէ դեռ որչափ պիտի տեւէ:»

Խեղճ հայրը լացեց եւ սրտին լի դառնութեամբ, մինչդեռ դանդաղաքայլ դառնայր ի տուն, միւս դրացին զինքը դիմաւորեց՝ որ շատ հարուստ չէր:

Այս վերջինը տեսնելով աշխատաւորին տխուր եւ յուսահատ դէմքն, հարցուց իւրեան. «Էր ճակտիդ

վերայ տրտմութիւն եւ աչացդ մէջ արտասուք կը տեսնեմ։»

Եւ Հայրն իւր ձախորդութիւնը պատմեց դողդոջաձայն։

Երբ յանգ հանեց. «Է՞ր, ըսաւ նմա միւսն, այսպէս յուսահատիս. միթէ եղբարք չե՞նք. եւ կրնամ վշտացեալ եղբայրս լքանել. ե՛կ, եւ բաժնենք ի միասին այն պարգեւներն զոր Աստուած տուաւ։»

Այսպէս ահա այս ընտանիքն ազատեցաւ նեղութենէ մինչեւ որ ինքն իրեն կարողացաւ հոգալ իւր պիտոյքը։

Յետ անցանելու բազում ամեր երկու հարուստքն եկան Երկնից Թագաւորին առջեւը՝ որ կը դատէ մարդկան գործերն։

Եւ դատաւորն ըսաւ առաջնոյն. «Երկրիս վերայ աչքս զքեզ տեսաւ. յիրաւի ոչ ուրիշի վնասեցիր եւ ոչ ուրիշի իրաւունքն յափշտակեցիր. յիրաւի արդարութեան օրէնքը խստիւ պահեցիր, բայց այս օրինաց միայն հետեւելով, քեզ համար միայն ապրեցար. ցամաք եւ կարծր ոգիդ չըմբռնեց սիրոյ օրէնքն։ Եւ հիմա այս նոր աշխարհիս մէջ, ուր կը մտնես աղքատ եւ մերկ, այնպէս պիտի ընեմ քեզ. ինչպէս դու ուրիշներուն ըրիր։ Քեզ բաշխուած բարիքներն անձիդ միայն սեպհականելով, եղբարցդ մաս չհանեցիր. դու ալ հիմա մաս չունիս յինէն. ինքզինքդ միայն մտածելով, ինքզինքդ միայն սիրեցիր, գնա եւ հիմա ինքնիրենդ ապրէ։»

Եւ դառնալով առ երկրորդն, դատաւորն ըսաւ. «Որովհետեւ դու ոչ միայն արդարութիւնը գործեցիր, այլ եւ սիրտդ գթութեան բացիր, որովհետեւ քեզ աւանդած բարիքներս առատապէս թշուառ եղբարցդ վերայ սփռեցիր եւ իւրեանց արտասուքը ջնջեցիր, քեզ պահած եմ մեծագոյն բարիքներ։ Գնա

*եւ վարձդ ընդունէ դու որ պարտաւորութիւններդ, այսինքն արդարութեան եւ սիրոյ օրէնքներն լիովին կատարեցիր։»*

Լամընէ (Գիրք ժողովրդեան)



## Ե. ԶԱՆԱԶԱՆՈՒԹԻՒՆ

**1**. *Հ. Ի՞նչ է ոճոյ Զանազանութիւնն.*

*Պ. Ոճոյ զանազանութիւնն է խօսքին ձեւին ու եղանակին փոփոխութիւնն. միօրինակ ոճ մը, միաձեւ ու միաշար պարբերութիւնք տաղտուկ կ'ազդեն. «Ո՜հ, գեղեցիկ տաղեր, կ'ըսէր Ֆոնթընէլ, ո՜հ, գեղեցիկ տաղեր. այլ չգիտեմ ե՛ր կը յօրանջեմ մինչ կ'ընթեռնում զանոնք։ Որովհետեւ կը կարդար քերթուած մը որոյ ոճը զանազանութիւն չունէր։*

**2**. *Հ. Ոճոյ մէջ զանազանութիւն գտնելու համար ի՞նչ պէտք է ընել.*

*Պ. Ոճոյ մէջ զանազանութիւն գտնելու և միօրինակութենէ խոյս տալու համար պէտք է՝ այն գաղափարաց և զգացմանց համեմատ զորս կուզեմք հաղորդել ումեք, մերթ բարձրանալ, մերթ խոնարհիլ, է զի ուժգին, է զի թեթեւ, երբեմն շնորհալից և երբեմն զուարճախօս իսկ լինել։ Հարկ է նաեւ կտրուկ ոճը* (style coupé) *խառնել ճարտարապէս պարբերական ոճոյն* (style périodique) *հետ. վերջապէս բացատրութիւնն, ձեւն ու եղանակը պատշաճեցունել պարագային։*

3դ. Հ. Կտրուկ և Պարբերական ոճ որո՞ց կ'ըսուի.

Պ. Կտրուկ կ'ըսուի այն ոճոյն յորում պարբերութիւնք կարճ են և գրեթէ գլխաւոր նախադասութիւններէ միայն բաղկացած. իսկ պարբերականն այն է՝ որ կը պարունակէ երկար պարբերութիւններ յորս կը տեսնուին բազում միջանկեալ նախադասութիւնք։

## ՁԵՒՔ ՊԱՐԲԵՐՈՒԹԵԱՆ

(TOURS DE PHRASE)

1. Հ. Ձեւք պարբերութեան ըսելով ի՞նչ կը հասկցուի.

Պ. Ձեւք պարբերութեան կ'ըսուին այն զանազան ձեւերն որովք մտածում մի կարէ ներկայանալ, գրեթէ բոլորովին պահելով միեւնոյն բառերն։

Այսպէս այն մտածումն՝ որով Ռասին իւր ԳՈԹՈՂԻԱ ողբերգութիւնը կ'սկսի,

Այո՛ կուգամ իւր տաճարին մէջ Անմահին երկրպագել.
(Oui je viens dans son temple adorer l'Eternel.)

Մարթի ըսել հետեւեալ ձեւերով ալ.

Ո՛չ, առ այլ ինչ չեմ գար այսր բայց Անմահին երկրպագել։

Ի՞նչպէս չը գամ երկրպագել Անմահին իւր տաճարին մէջ։

Է՞ր չը գամ երկրպագել Անմահին իւր տաճարին մէջ։

*Թոյլ տուր ինձ երկրպագել Անմահին իւր տաճարին մէջ։*

*Հարկ չէ ըսել թէ լաւագոյնն յայս ձեւոյ այն է անշուշտ զոր բանաստեղծն ընտրած է. բայց գոն պարագայք յորս մի տարբեր ձև աւելի նախամեծար համարելի է։ Ուստի գրագ. խոհնպարտ է գիտել թէ ո՞րք են այս ձեւերն և ո՞ր նոցա յարաբերական նախընտրութիւնն։*

**Հ**. *Քանի՞ են պարբերութեան ձեւք.*

**Պ**. *Հռետորք շատ ձեւեր կը հաշուեն պարբերութեան, այլ մեք նոցա գլխաւորները միայն կ'ընտրեմք, որք հինգ են.* 1) ՀԱՍՏԱՏԱԿԱՆ (Affirmatif). 2) ԺԽՏԱԿԱՆ (Négatif). 3) ՀԱՐՑԱԿԱՆ (Intérrogatit). 4) ՀՐԱՄԱՅԱԿԱՆ (Impératif). 5) ԲԱՑԱԳԱՆՉԱԿԱՆ *կամ* ԶԱՐՄԱՑԱԿԱՆ (Exclamatif)։ *Ո և իցէ միտածում այս ձեւերէն միոյն կարէ գալ ի յայտ, և գրողին ճարտարութիւնը կը նախընտրէ զայն ձեւն որ բացատրութեան աւելի յստակութիւն կամ ճշգրութիւն, աւելի կորով կամ վայելչութիւն, աւելի ուժգնութիւն կամ շնորհ, աւելի պայծառութիւն կամ խորութիւն կուտայ։ Բայց այս ձեւոց գլխաւոր առաւելութիւնն այն է զի ոճոյն զանազանութիւն կուտայ։*

### I. ՀԱՍՏԱՏԱԿԱՆ ՁԵՒ

**1**. **Հ**. *Ո՞րն է Հաստատական ձեւն.*

**Պ**. *Հաստատական ձեւն այն է որ պարզ և բնական կերպով բան մի կը հաստատէ և որոյ*

գործածութիւնն յաճախագոյնս կը ներկայանայ մտաց. զոր օրինակ,

*Մարդ իւր սխալը կամ պակասութիւնը ճանչելով՝ կը հաստատէ թէ դիւցազնութեան ծիլ մի կը կրէ յինքեան։* **(Դանիէլ Սթէրն)**

*Այն մարդն է արժանի ուղղորութեան որ խօսքը մտածման համար միայն կը գործածէ, եւ մտածումը ճշմարտութեան եւ առաքինութեան համար։* **(Ֆենելոն)**

*Ճշմարտութիւնը դշխոյ մի է որոյ յաւիտենական գահն է յերկինս։* **(Պոսիւէ)**

*Սրտով եւեթ մեծ է մարդ։* **(Մասիյոն)**

## 2 · ԺԽՏԱԿԱՆ ՁԵՒ

**2դ**. Հ. Ո՞րն է ժխտական ձեւն։

Պ. Ժխտական ձեւը գոգցես ներկայ կամ անցեալ հակառակախօսութիւն մի կ՚ենթադրէ, եւ գրողը մի հակառակ կարծեաց դէմ պատասխանելու երեւոյթն ունի, հետեւաբար այս ձեւն աւելի բուռն եւ աւելի յուզիչ է, զոր օրինակ,

*Նա որ չճանաչեր ժամանակին յարգն, չէ ծնած փառաց համար։* **(Վօվնարկ)**

*Աշխարհի փառքն, առանց Աստուծոյ երկիւղին, չունի ինչ իրական։* **(Մասիյոն)**

## 3 · ՀԱՐՑԱԿԱՆ ՁԵՒ

**3դ**. Հ. Ո՞րն է հարցական ձեւն.

Պ. Հարցական ձեւն աւելի բուռն եւ աւելի յուզիչ է քան զերկրորդն զի յառաջ կը կոչէ իրական կամ մտացածին խօսակից մի, եւ, թուի թէ, պա-

տասխանելոյ կ'ապասէ ի նմանէ. զոր օրինակ,

Կուզէք դատել զոք, դիտեցէք թէ ո՞վ են նորա բարե-կամներն: (Ֆենելոն)

Ի՞նչ արժէք եւ ինչ պատասխանատուութիւն ունի այն մարդն որ այնպէս կը մտածէ, կը հաւատայ եւ կը գործէ, ինչպէս կը հրամայեն իւրեան: (Լամնէ)

Եթէ վերոգրեալ երկու ասացուածներն, առանց հարցական ձևի, ըսէինք

Երբ կուզէք դատել զոք, դիտեցէք եւայլն.

Արժէք եւ պատասխանատուութիւն չունի այն մարդն որ եւայլն.

Իւրեանց ազգութիւնը պիտի կորնչէր:

### 4. ՀՐԱՄԱՅԱԿԱՆ ՁԵՒ

4դ. Հ. Ո՞րն է հրամայական ձևն.

Պ. Հրամայական ձևն է որով պաղատանք մի կամ հրաման մի կը նեմք ումեք. զոր օրինակ,

Աստուած իմ, ջուր տուր աղբերաց. (Լամարթին)

և

Գնացէք եւ այլ եւս մի մեղանչէք.

5դ. Այս ձևն ո՞ր ձևի տեղ կրնայ գործածուիլ,

Պ. Այս ձևն ինչ ինչ պարագայից մէջ հաստատական ձևին տեղ կրնայ գործածուիլ և իւր սեղմութեամբն, արագութիւն և ուժգնութիւն կու տայ խօսքին, զոր օրինակ, սա մտածութիւնը

Պէտք է որ մանկունք հնազանդին իւրեանց ծնողաց.

Ի՞նչ զօրութիւն չստանար, եթէ ըսեմք

Մանկունք, հնազանդեցէք ձեր ծնողաց

Նոյնպէս սա մտածութիւնն

Եթէ աշխատիս եւ խնայես, ոչ ումեք կարօտ պիտի չինիս։

Ոյժ եւ թռիչ մի կ'առնու երբ ըսեմք

Աշխատէք եւ խնայէք, ոչ ումեք կարօտ պիտի չինիս։

---

Սիրեցէք եւ պաշտպան կացէք կրօնի. ամենայն ինչ կը մեռնի, անմահ է կրօնն։ (Ֆենելոն)

### 5. ԲԱՑԱԳԱՆՉԱԿԱՆ ԿԱՄ ԶԱՐՄԱՑԱԿԱՆ ՁԵՒ

ՃԴ. Հ. Ո՞րն է Բացագանչական ձեւն.

Պ. Բացագանչական ձեւն ամենէն կրքոտ ձեւն է զոր մարդկային երեւակայութիւնն կարէ ի կիր արկանել։ այս ձեւն կը ծառայէ վառ ու բորբոք զգացումներ բացատրելու. զոր օրինակ,

Ո՜վ գիշեր աղիտաբեր, ո՜վ գիշեր ահաւոր, յորում որոտման ճայթիւնի նման, այս սոսկալի գոյժն հնչեց. Տիկինը կը մեռնի, Տիկինը մեռաւ։»

(Պոսիւէ)

Քանի՜ օն անազդեցիկ ու ցուրտ պիտի լինէր, եթէ այսպէս ըսէր Պոսիւէ

Աղիտաբեր եւ ահաւոր էր այն գիշերն, յորում որոտման ճայթիւնի նման, այս սոսկալի գոյժն հնչեց թէ Տիկինը կը մեռնէր, թէ Տիկինը մեռած էր։

Նոյնպէս

Ո՜վ օր երիցս երանաւէտ,
Օրհնեալ չինի երկինք որ զքեզ ըղձիցս կը պարգեւէ։

(Ռասին. յԵսթեր)

Բայց այս ձեւն բացառիկ պարագայից մէջ կը ներկայանայ, ուստի պարտ է ի ճահ գործածել զայն եթէ չուզեր ոք ծաղրելի լինել։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի պարբերութեանց ձեւերն որոշել, այսինքն նշանակել հաստատական, ժխտական, հրամայական, բացագանչական, հարցական ձեւերն.

1. *Ձեռնտու լեր միշտ տառապելոց։*

2. *Նոքա են մեզ բարի խորհրդական, որք կը խրատեն զմեզ թէ որչափ ի վեր քան զայլս բարձրանամք, այնչափ աւելի խոնարհ եւ համեստ պէտք է լինիմք։*

3. *Ո՜հ, որչա՜փ դժուարին է լինել մեծ եւ խոնարհ միանգամայն։*

4. *Յոյսը մեծագոյն մխիթարութիւնն է թշուառաց. նա կը սրբէ արտասուքն եւ՝ կը բերէ արիութիւն, համբերութիւն եւ խնդութիւն։*

5. *Մի՛ հպարտանար յաջողութեանց մէջ։*

6. *Վա՜յ այն մարդուն որ կը դնէ իւր յոյսը մարդոյ վերայ եւ որ կը ջանայ մսեղէն բազկի յենուլ։*

7. *Ի՜նչ փառասիրութիւն, ի՜նչ տղայական նախանձ, մարդոց մէջ անուն ունենալու հետամուտ լինել՝ հասնելու համար համբաւին որ հողմոյ խաղալիկ եղող ծուխէն ոչ նուազ ցնդելի է։*

8. *Երանի՛ այն թագաւորին որոյ հպատակք երջանիկ են։*

9. *Բնաւ ծաղկասփիւռ ճանապարհ մի չտանիր ի փառս։*

10. *Անմշակ երկիրը բերք չտար իւր տիրոջ։*

11. *Բարի մարդն օգտակար չտեսներ ինչ որ պարկեշտ չէ, եւ երբեք չգործեր կամ չխորհէր այնպիսի բան մի՝ զոր անհնար լինի համարձակութեամբ յայտնել աշխարհի։*

12. *Ամէն բնաւորութենէ յոռի է ծաղրող մարդուն բնաւորութիւնն, որովհետեւ շատ թշնամի կ'ունենայ, եւ բարեկամ եւ ոչ մի. մանաւանդ թէ շատ անգամ*

անհաշտ թշնամի կը դարձունէ ընտիր բարեկամներն։

13. Աղքատաց, որբոց եւ տառապելոց հայր ըսուիլ, ի՜նչ գեղեցիկ պատուանուն։

14. Քանի՜ քաղցրութիւններէ զուրկ է նա որուն կը պակասի կրօնն. ի՞նչ զգացում կարէ մխիթարել զինքն իւր վշտաց մէջ, ո՞ր հանդիսատես շունչ կուտայ այն բարի գործոց՝ զորս կը գործէ նա ի ծածուկ, ո՞ր ձայն կարէ խօսիլ իւր հոգւոյն, ի՞նչ վարձք կարէ սպասել առաքինութենէն։

15. Չեմ կարծեր որ մարդ կարենայ առաքինի լինել առանց կրօնի։

16. Հայր, մայր, որդիք, եղբարք եւ քորք, միթէ կա՞ն աւելի սուրբ եւ աւելի անոյշ բարբառք եւ առ իմէ՞ ուրիշ անուանք ալ կը գտնուին երկրիս վերայ։

17. Ճշմարիտ հարստութիւնն՝ հոգւոյ հարստութիւնն է։

18. Ագահութենէն աւելի վտանգաւոր հիւանդութիւն մի կա՞յ։

19. Ամէն բարի գործ ողորմութիւն մի է։

20. Ողորմութիւն ընելով՝ մարդ իւր հարստութեան չվնասեր։

21. Ո՜վ սրբազան հաճոյք բնութեան, ո՜վ հեշտալից ստուերք խորհրդաւոր անտառաց, ձեր ծոցոյն մէջ ո՛րչափ անզգալի կը սահին ժամերն, եւ մարդ այդ ծաղկազարդ զառիվայրից վերայ քանի՜ աշխուժիւ կը վազէ կ՚ոստոստէ։

22. Չքաւո՞ր է բարեկամդ, դու առատաձեռն լեր. ի վտանգի՞ է, օգնէ նմա. տգէ՞տ է, լուսաւորէ զայն. այլք կը խաբե՞ն զայն, դու ճշմարիտն ասա նմա, այլք կը վշտացունե՞ն զայն, դու մխիթարէ. բնակարա՞ն, հանդե՞րձ, հա՞ց չունի, մասնակից արա զայն քո տանն, քո հանդերձին եւ քո սեղանոյն եւ յայնժամ զքեզ առաքինի պիտի կոչեմ։

23. *Կամ լռեցէք, կամ քան զլռելն լաւագոյն բաներ ըսէք։*

24. *Կամքի ոյժը մեծ մարդոց գործակատարն է։*

25. *Վա՜յ ամպարշտին, որ խուժադուժ փառք մի կը փնտրէ իւր համարիւն եղբարց արեան ճապաղեաց մէջ։*

26. *Բոլոր մարդկային ազգն ․ոչ այլ ինչ է, բայց մի ազգատոհմ համասփիւռ ընդ երեսս երկրի։*

27. *Մարդավար եւ անոյշ կերպերը միշտախօս յանձնարարական նամակներ են։*

28. *Նա որ կ՚սպասէ այլոց պնակին շատ անգամ անօթի՝ միայն աչք առնլու է։*

29. *Մարդոյ ազնուականութիւնն առաքինութենէ է եւ ոչ թէ զարմէն։*

30. *Ի՜նչ կուրութիւն, փափաքիլ միշտ այնմ զոր չունիմք եւ չշատանալ բնաւ այնու զոր ունիմք։*

31. *Ճշմարտութիւնը իմացական աշխարհին արեւն է։*

32. *Չէ ոք մարդ եթէ միայն զիւր անձը կը սիրէ:*

33. *Մարդոյ ամենէն անհրաժեշտ գիտութիւնն է, ծանօթութիւն անձին։*

34. *Արդարութիւնը սրբազան կապն է մարդկային ընկերութեան։*

35. *Ողջմտութիւնն է տէր մարդկային կենաց։*

**ՀՐԱՀԱՆԳ Զ.**

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել խօսքին հաստատական ձեւ տալով.

1. *Բարերարութիւնը չկորնչիր։*

— *Բարերարութիւնն անկորուստ է։*

2. *Եթէ շողոքորդութիւնն իժի պէս սողոսկելով չսպրդի սրտիդ մէջ, եւ զքեզ չսարտուցանէ անաչառ խրատներէ, կորուստ չպիտի հասնի քեզ։*

3. *Փառքը չէ վայելուչ այն սրտին որ չժուժկալեր վշտաց եւ առ ոտն չկոխեր զգրգանս։*

4. *Փառք եւ յաջողութիւնք չարաց չեն երկարատեւ։*

5. *Նա որ իւր կոչման մէջ հաւատարիմ չէ, ցոյց կուտայ թէ՝ արժանի չէ բարձրագոյն վիճակի։*

6. *Բարի մարդը դժուարաւ չմոռնար նախատինքն։*

7. *Ով որ հաւատարմաբար կը ծառայէ իւր հայրենեաց, անարժան չէ անոր յարգանացն ու երախտագիտութեան։*

8. *Մարդոյ բարի ու չար գործերը չեն մեռնիր, թէպէտեւ ինքը մեռած լինի։*

9. *Մեծամեծ իրաց համար ծնած չէ ոք, եթէ չունի զօրութիւն իւր անձին յաղթելու։*

## ՀՐԱՀԱՆԳ 3.

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել խօսքին ժխտական ձեւ տալով.

1. *Փոքրիկ եւ անտառոր մոքերն, բարկութեամբ եւ վրէժխնդրութեամբ լեցուած, թշնամւոյն ներելու վսեմ հաճոյքն անկարող են զգալու։*

— *Փոքրիկ եւ ախտաւոր ... չեն կարող զգալ։*

2. *Քաջութիւնն եթէ խոհականութենէ ուղղեալ է՝ առաքինութիւն է։*

3. *Մոլեգին քաջութիւնը կասկածելի է։*

4. *Նա որ կարէ համբերել վշտաց մեծ սիրտ մի ունի։*

5. *Նա որ աւելի բարձրանալու բաղձանօք՝ իւր ներկայ վիճակին մէջ բարւոք կը գործէ, թէ իւր ներկայ վիճակին եւ թէ քան զայն բարձրագունին է արժանի։*

6. *Սահած ժամանակն անդարձ է, ու կորսուած առիթն՝ անգիւտ։*

7. *Ճշմարտութիւնն անծերանալի եւ անմահ է։*

8. *Մօր մի սիրտն անծերանալի է։*

## ՀՐԱՀԱՆԳ 4.

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել առանց հարցական ձեւ գործածելու․

1․ *Միթէ, Նախանձն ամենէն ցած ու տանջող ախտերէն մին չէ՞։*

— *Նախանձն ամենէն ցած ու տանջող ախտերէն մին է։*

2․ *Մարդասիրութիւնն անբաժանելի յատկութիւն եւ որոշիչ նշան մի չէ՞ մեծութեան։*

3․ *Գիտութի՞ւնն է միթէ որ մեծ կ'ընէ զմարդիկ թէ գործունէութիւնն ու յարատեւութիւնն։*

4․ *Այս աշխատութենէն ի՞նչ պտուղ կրնաս քաղել։*

5․ *Ի՞նչ օգուտ է քեզ անհանգիստ լինել ապագայի մի համար որ քոյդ չէ։*

6․ *Ո՞վ ի մէնջ ամենէն յետոյ պիտի մեռնի։*

7․ *Կա՞յ վայրկեան մի որ զմեզ ապահովէ թէ բոպէ մի եւս պիտի ապրինք։*

8․ *Ջիս ո՞վ կը կարծեն։*

9․ *Կ'արգելո՞ւս ընկերիդ որ դասը պատրաստէ։*

10․ *Վստահի՞մ խաբեբայի մի խօսքերուն։*

11․ *Կուզե՞ս երջանիկ լինել, սանձ դիր կրիցդ։*

12․ *Միթէ ազգ եւ ազինք եղբարք չե՞ն միմեանց, եւ չէ՞ պարտ նոցա որպէս զեղբարս սիրել զմիմեանս։*

13․ *Անվեհեր արիութիւնն ու երկայնամիտ աշխատութիւնն ի՞նչ խոչ եւ խութ չեն տապալեր։*

14․ *Անօթի՞ է թշնամիդ՝ կերակուր տուր որ ուտէ, ծարաւի՞ է՝ ջուր տուր որ խմէ։*

## ՀՐԱՀԱՆԳ 5.

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել խօսքին հարցական ձեւ տալով։

1․ *Օգուտ մի չէ շահիլ զաշխարհ եւ կորուսանել մեր անձն։*

— Ի՞նչ օգուտ է մեզ շահել զաշխարհ եւ կորուսանել մեր անձն։

2. Աշխարհ չկարէ քեզ ընծայել բան մի որ բաւական լինի գոհացունել սիրտդ։

3. Չիք ինչ լաւագոյն քան զլեզու։

4. Չիք ինչ յոռեգոյն քան զլեզու։

5. Հեշտասէր մարդը նման է անասնոյ որ բնազդմամբ կը գործէ եւ ոչ բանականութեամբ։

6. Բարկութիւնն, նախանձն եւ ագահութիւնն ախտեր են որք հոգւոյն վերայ աղետալի ազդեցութիւն մի կ'ընեն։

7. Աւա՜ղ, հակառակ հարստութեանս, յարատեւ ձանձրութեան եւ անհանգստութեան մէջ եմ։

8. Առաքինութիւնն անուն մի չէ միայն։

9. Անկարելի է տեսնել առաքինութեան գեղոյն ճաճանչներն եւ չսիրել զայն. անկարելի է սիրել զայն եւ չլինել երջանիկ։

10. Չէ արժան նենգութեան դէմ նենգութիւն գործել։

11. Նա որ կը ստէ անարժան է լինել ի համարի մարդկան։

12. Եթէ գինովութեան դեղ կուզես՝ մի գինովի նայէ։

13. Եթէ չես ուզեր որ բան մի իմացուի՝ մի ըներ զայն։

14. Եթէ առողջութիւն ունիս, հարուստ ես առանց գիտնալու։

15. Ոչ ոք կրնայ լաւ խօսիլ, եթէ իմաստութեամբ չխորհի։

16. Եթէ կուզես երջանիկ լինել՝ երեք ինչ պիտոյ են քեզ. առողջ մարմին, ազատ միտք ու մաքուր սիրտ։

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել առանց հրամայական ձեւ գործածելու.

1. *Փախիր մեղկութենէ, անափառ պերճանքէ, ու չռայլութենէ, եւ պարծանք համարէ քեզ անպաճոյճ պարզութիւնն։*

*— Պարտ է քեզ փախչիլ մեղկութենէ, անափառ պերճանքէ ու չռայլութենէ, եւ պարծանք համարել անպաճոյճ պարզութիւնն։*

2. *Ցառաջատես լեր հետեւանաց այն իրաց յորս կը ձեռնարկես։*

3. *Գիտցիր որ ստոյգ քաջութիւնն այն է զի նախատես լինիս վտանգաց, եւ արհամարհես զայն անհրաժեշտ հարկին մէջ։*

4. *Լուր ամենեցուն, այլ սակաւուց հաւատ ընծայէ։*

5. *Նախ հասկցիր եւ ապա խօսէ։*

6. *Ամէն տեսակ վէճ ու կռիւ վազուան թող եւ կը շահիս։*

7. *Ագքատութեամբդ մի նուաստանար, հարստութեամբդ մի հպարտանար։*

8. *Միշտ պատրաստ լեր։*

9. *Այլոց ամէն ինչ ներէ, իսկ քեզ՝ ոչինչ։*

10. *Մտացդ առողջութիւնը պահելու համար նախ մարմնոյդ առողջութեանը խնամ տար։*

11. *Եթէ խիստ դատաստան պիտի ընես, նախ քո անձին վերայ ըրէ եւ յետոյ այլոց վերայ, եւ ընդհանրապէս նախ քո թերութեանց լեր ուշադիր։*

12. *Մի մոռնար չարութիւն քո բարեկամին համար որ քեզ կռթնած եւ յուսացած է։*

13. *Եթէ ոք թեթեւամտութեամբ կը խօսի քեզ, մի՛ լինիր ուշադիր. եթէ յիմարութեամբ կը խօսի, ցաւէ՛ նորա վերայ. եթէ զքեզ նախատելու մտօք կը խօսի, ներէ նմա։*

## ՀՐԱՀԱՆԳ Դ.

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութիւններն հրամայական ձեւով բացատրել.

1. *Զախորդութեան մէջ չէ պարտ ընաւ զի յուսահատիս, յաւուր միում կը հասնի բախտին մի ժպիտն եւ կը փարատէ տրտմութիւններդ:*

— *Զախորդութեան մէջ մի յուսահատիր ընաւ, յաւուր միում կը հասնի բախտին մի ժպիտն եւ կը փարատէ տրտմութիւններդ:*

2. *Պարտ է ձեզ փախչիլ ամպարշտէն, զի իւր շունչը կ'սպաննէ. բայց չէ պարտ ատել զայն, զի ո՞ գիտէ թէ արդեօք Աստուած չէ փոխած արդէն նորա սիրտն:*

3. *Պարտ է քեզ մոռանալ ինչ որ տուած ես, եւ յիշել ինչ որ ընդունած:*

4. *Պարտ է փախչիլ այն ներկայ հաճոյքէն որ կարէ չարիք պատճառել քեզ առ յապա:*

5. *Պարտ է ձեզ ագահ լինել ժամանակին նկատմամբ:*

6. *Պարտ է քեզ յոտն կալ նորա առջեւ որ աղեբեկ մազեր ունի, եւ պատկառիլ ծերոյն ներկայութենէն:*

7. *Չէ պարտ ընաւ թողուլ վաղեմի բարեկամդ, վասն զի երիկեան մի բարեկամ չէ կարող նմին նման լինել:*

8. *Պարտ է քեզ զգուշանալ յայնմանէ որ զիւր բացակայ բարեկամէն կը չարախօսէ, կամ չպաշտպաներ զայն երբ այլք զնմանէ կը չարախօսեն:*

9. *Պարտ է քեզ թշնամի լինել ստութեան, եւ ճշմարտութեան լեզուաւ միայն խօսիլ առ մարդիկ:*

10. *Եթէ կարի յարած չէք հաճոյից, դիւրաւ պիտի կրնաք հրաժարիլ ի նոցունց:*

11. *Եթէ սեղմես տունկ մի այլ եւս չաճի, կը թօշ-*

*նի. եթէ կապես նորածին մանկան մի անդամները, տձեւ, տկար ու խեղ կը մնայ. եթէ ճնշես, կապես հոգին, տնկոյն պէս կը խամրի, փոխանակ բարձրուղէշ ամբառնալու, եւ մանկան պէս հրէշ մի կը լինի ժանտատեսիլ, փոխանակ զօրեղ եւ գեղեցիկ աճելու:*

12. *Եթէ ձեր երջանկութիւնն առաքինութեան մէջ փնտրէք, բնութեան դէմ գանգատելու բան՝ մի չպիտի ունենաք:*

13. *Եթէ ըսես ինձ թէ առ ո՞ կը յաճախես, քեզ պիտի ըսեմ թէ ով ես դու:*

14. *Չէ պարտ զի բռնաւորք ցանկալի համարեն պատերազմը փառք ստանալու համար, քանզի չիք իսկ եւ չիք ճշմարիտ փառք արտաքոյ մարդասիրութեան:*

15. *Որդեակ իմ, պարտ է քեզ չվստահիլ երբեք ներկային, այլ պինդ կալ առաքինութեան խիստ ու դժուարուտ ճանապարհին մէջ, եւ անբիծ վարուք ու սիրով արդարութեան պատրաստել քեզ տեղ մի խաղաղութեան երանաւէտ օթեւանին մէջ:*

16. *Եթէ կուզես որ գործդ կատարուի՝ դու անձամբ պարտիս երթալ. իսկ եթէ կուզես որ չկատարուի՝ զայլ ոք պարտիս ղրկել:*

17. *Իմաստութիւն է նախախնամութեան բարիքը վայելել. առաքինութիւն է զայն վայելել տալ այլոց:*

### ՀՐԱՀԱՆԳ 8.

Աշակերտը պարտի միեւնոյն իմաստը բացատրել առանց բացագանչական ձեւ գործածելու.

1. *Ի՞նչ հեշտալի օր մի անցուցի ձեր քով:*

*— Հեշտալի օր մի անցուցի ձեր քով:*

2. *Քանի՜ն երկայն կը թուի գիշերն անքուն հիւանդին:*

3. *Սիրելի հայր, ո՜հ, ո՛րչափ կը սիրեմ զքեզ:*

4. Ո՜րքան երկար եղաւ մեր աքսորն։

5. Աւա՜ղ, ո՜րչափ կը ցաւիմ քո վրայ։

6. Իցի՜ւ թէ յոյսդ իրականանար։

7. Ո՜հ, պատերա՜զմ, կ'անիծեմք զքեզ։

8. Քանի՜ քանի մարդիկ կը զոհեն իւրեանց առաքինութիւնն ու երջանկութիւնն իւրեանց համբաւոյն։

9. Ես զքեզ մոռնա՜մ, երբե՜ք։

10. Քաղցրիկ գարունն ինչպէ՜ս կը վերակենդանացունէ զերկիրն։

11. Անպիտա՜ն։

12. Քանիո՜ն անյաղթելի էր իւր զօրութիւնն։

13. Ո՜հ, քանիո՜ն բարի եւ գթած է Աստուած։

14. Երանի՜ շինականաց։

15. Վա՜յ ամբարշտին։

16. Մա՜հ մատնչաց։

17. Կեցցե՜ն քաջերն։

18. Քանի՜ քանի՜ անգամ ահագին ամպերը փարատած են առանց կաթիլ մի անձրեւ իջեցունելու։

## ՀՐԱՀԱՆԳ Թ.

Հետեւեալ խօսքերը բացագանչական ձեւով բացատրել.

1. Դու անմիտ ես։

2. Հազար անգամ շնորհակալ եմ քեզ։

3. Կը փափաքիմ որ երջանիկ լինիք ձեր ուղեւորութեան ժամանակ։

4. Օգնութեան հասէք ինձ։

5. Մանկունք ուշադրութիւն թող ընեն։

6. Շատ կը ձանձրանայի երբ հիւանդ էի։

7. Այն ժողովուրդն որ իմաստուն օրինօք կը կառավարուի երջանիկ է։

8. Կը յորդորեմ զձեզ, բարեկամք իմ, զի արիութիւն ունենաք եւ յառաջ քալէք։

9. Կարելի չէ որ օտարականներ գան հոս հաստատուելու։

10. Նա որ կը հաւատայ, երջանիկ է։

11. Ուսուցչաց պաշտօնը տաժանելի է եւ ապերախտ. շատ տաղտուկ կ'զգ՛ան նոքա։

12 Ես երբեք վատ չպիտի լինիմ։

13. Աշխարհս յոյժ երջանիկ կը լինէր եւ մարդկային ազգը մեծ արագութեամբ կը դիմէր յառաջդիմութեան շաւղին մէջ, եթէ իրաւունք միշտ յարգուած եւ պարտաւորութիւնք միշտ լցուած լինէին։

14. Շատ անգամներ մահաշունչ բուռն քամիներն՝ հեզասահ զեփիւռին առջեւ խոնարհեցան։

15. Մարդասպանութիւնը չկարէ հաճոյ լինել Աստուծոյ, որ ըսաւ մարդուն. «Մի՛ սպանաներ։»

16. Երջանիկ է այն թագաւորն ում առընթեր կան իմաստուն խորհրդականք։



## 7. ՊԱՏՇԱՃՈՒԹԻՒՆ

1. Հ. Ի՞նչ է ոճոյ պատշաճութիւնն.

Պ. Պատշաճութիւնն է յարմարութիւն ոճոյ ընդ նիւթոյն զորմէ կը ճառէ ոք։ Նիւթոց իւրաքանչիւր տեսակն, նման ամէն արուեստական կերտուածի, իւրեան յատուկ ոճն ունի։ Որպէս թատրոնի յօրինուածը կը տարբերի եկեղեցւոյ յօրինուածէն, նոյնպէս պատմութեան ոճը՝ դամբանական ճառի մի ոճէն. և բնագէտն ու բանաստեղծը միեւնոյն կերպով՝ չեն բացատրեր տուընջեան լոյսն։

Զդ Հ. Ոճոյ պատշաճութիւնն ի՞նչ կը պահանջէ.

Պ. Ոճոյ պատշաճութիւնը չորս բան կը պահանջէ, որք են՝

1. Նիւթոյն համեմատ իմաստներ գործածել, այսինքն, պարզ՝ պարզ նիւթոց մէջ, հաճոյական՝ հաճոյական նիւթոց մէջ։ Արդարեւ առ ի՞նչ կը ծառայէ բառից եւ ձեւոց գեղազան յօրինուածն, ճոխ ընտրութիւնն և փափկասոյլ դաշնակութիւնն՝ եթէ այդ ամենայն բացատրեն այնպիսի իմաստներ՝ որք անյարմար են նիւթոյն եւ, հետեւաբար, մեր փափաքած ազդեցութիւնը չեն ըներ մեր ունկնդրին մտքին եւ սրտին վերայ։

2դ. Նիւթոյն համեմատ զգացումներ բացատրել. իւրաքանչիւր կիրք տարբեր ցնցումն կուտայ հոգւոյն և իւրեան յատուկ ձեւերով կը բացատրուի, կամ, որ նոյն է ասել, ամէն կիրք իւր յատուկ լեզուն ունի.

Որատիոս կ'ըսէ,

«Քերթածաց չէ բաւական գեղեցկութիւն, լիցին քաղցունք ,
Եւ զոգի ունկընդրին յո՛ եւ կամին առեալ ածցեն :
Ձեռդ խընդան ընդ խընդացող՝ նոյն ընդ լացող լան դէմք մարդկան։
Արտօսր յինէն թէ խընդրես՝ նախ քեզ վայել է սուգ ունել...
Զանկսըդ անճահ թէ խօսիս՝ ծիծաղեցայց կամ նիրհեցից :
Թաղծադիմին դէպ են տըխուր, սըրտմըտելոյ՝ սպառնալից ձայնք ,
Խայտացելում՝ ցընծալի, ծանրաբանին՝ լուրջ եւ զգօն ։
Զի բնութիւն նախ ընդօւստ առ ամենայն բախտի պայման,
Ցերիւրեալ ըզմեզ բերկրէ, կամ թէ ըղրդէ ի բարկութիւն ,
Կամ յերկիր ծանրաթախիծ սըգով հակէ տառապագին,
Ապա լեզուին թարգմանաւ ըզկիրս հոգւոյն բերէ ի դուրս»

Ա.ր. Քերթ. 100

3դ. Ուրաքանչիւր իմաստին եւ զգացման սեպհական բառերն ու ձեւերն ընտրել։

4դ. Վերջապէս, ամէն անձի բերանն իւր վիճակին յարմար լեզու մի դնել. ծառայ մի և ազատ մի, երեւելի ոք եւ աննշան ոմն միեւնոյն կերպով չեն խօսիր։ Որատիոս կ'ըսէ,

Խըտիր մեծ է թէ ստրուկ եւ թէ դիւցազն որ խօսիցի,
Ծեր հասուն, թէ ծաղկափթիթ տիօք աշխոյժ երիտասարդ,
Եւ տիկին տիրուհի, եթէ դայեակ որ ժըրագլուխ,
Թանգար աստանդական, թէ բուսաբեր անդոյ մըշակ,
Ասորի, Եզերացի, յԱրգոս սընեալ թէ ի Թէբէ :

Ար. Քերթ. 114

## ՎԵՐԱԴԻՐՔ

(DES EPITHÈTES)

1. Հ. Ի՞նչ է վերադիրն.

Պ. Բանաստեղծութեան եւ պերճախօսութեան մէջ վերադիր կ'ըսուի այն ածականին, առանց որոյ գլխաւոր գաղափարը թէպէտև ըստ բաւականի կը բացատրուի, բայց այնու աւելի շնորհ, աւելի ազնուութիւն և կամ աւելի ազդուութիւն կ'ստանայ. զոր օրինակ,

Բանտ մահասուեր, բացվէ՛ հոգւոյս իմ առջեւ...
Ես պատերէն քո չեմ սարսիր թանձր ու սեւ,
Ես խորշերէն քո չեմ խորշիր գէճ խաւար,
Ես չեմ փախչիր շղթաներէդ ժանգահար.—
Բանտ մահասուեր, բացվէ՛ հոգւոյս իմ առջեւ։

Խորէն Եպ. Նար-Պէյ (Սօսուերք Հայկ.)

Եթէ վերոգրեալ հատուածին մէջէն վերցունենք վերադիրներն, խօսքը կը կորուսանէ իւր ազդուութիւնն։

Արեւն էր ծագել, արեւ հայկական
Կարմրուկ ցոլքերով նորահաս գարնան,
Մասիսու զարկեր ճակտին սպիտակ
Ու չուրջ կը պատէր վարդաձոյլ պսակ.

Թռչնոց արթընցան երգեր քաղցրալուր,
Ու լըցին լըռիկ դաշտերն ու ձորձոր,
Ծաղկունք վերուցին աչեր ցօղալից,
Ու ծաւալեցին բոյրեր խընկալից.

Նոյն

Վերցունենք վերադիրներն, խօսքն ալ իւր շնորհն ու ազնուութիւնը կը կորուսանէ։

**Զդ**. Հ. Վերադրաց գործածութեան մէջ ինչ պէտք է դիտել.

Պ. Վերադիրք յայնժամ լաւագոյն և կարեւոր են, երբ կը տեսնուի որ խօսքն առանց անոնց ցամաք, վտիտ և անշուք պիտի ըլլայ. բայց պէտք չէ նոցա անչափ կուտակութեամբ խօսքը ծանրաբեռնել. զի թերութիւն մի է այն և նշան տըկար և չքաւոր մտաց՝ որ առ ի չգոյէ գլխաւոր գաղափարաց, երկրորդական գաղափարներով խօսքը կը խուկէ։ Կուինտիլիանոս այս տեսակ ճառերը կը նմանցունէ բանակի մի ուր աւելի զօրապետ կայ քան զինուոր։

**Յդ**. Հ. Քանի՞ տեսակի կը բաժնուին վերադիրք,

Պ. Վերադիրք երեք տեսակի կը բաժնուին. 1) Վերադիրք բնականք. 2) Վերադիրք նկարագրականք. 3) Վերադիրք պարագայականք։

ՎԵՐԱԴԻՐՔ ԲՆԱԿԱՆՔ

Հ. Ո՞րք են բնական վերադիրք.

Պ. Բնական վերադիրք այնոքիկ են որք իրաց բնութենէն առնուած են, և առակայից սեպհական ու ծանօթ յատկութիւններն ու հանգամանքները կը յայտնեն. այս վերադիրք, միշտ անբաժան գոյականէն, բարձր քերթուածոց մէջ մանաւանդ կը գործածուին և գրեթէ նոր ինչ չեն յաւելուր գաղափարի մի վերայ։

Յոյն եւ Լատին քերթողք յաճախակի կը գործածէին այս վերադիրներն, ուստի եւ իւրեանց քերթուածոց մէջ գործածուած կը տեսնեմք միշտ՝ կոր մանգաղ կամ մահ, սեաւ ոսկիազ, խարտեաշ կամ շիկակարմիր ցորեան, գեղմնաքարձ խաշն, երգեցիկ թռչուն, ցուրտ եղեամն, խոնեսող սղոց, ապիտակ կարապ, կարծր բահ, ցուրտ հիւսիս, խոնաւուտ հարաւ, ապիտակ ձիւն, մթին գիշեր եւն. զոր օրինակ,

... եւ կոր մաճոյն բերող ի լոյս պատանեկին.

Վիրգիլ. Մշակ. Ա. 21

Բեր տեսցուք զինչ եւ անօթք իցեն եւ զէնք պինդ մշակաց,
Ցոյց վրէպ՝ ոչ վար եւ ցան եւ ոչ հընձոց յառնեն հասակք։
Գալարուն ծանր արօրոյ նախ եւ յառաջ կորով եւ խոփ...։

Նոյն Ա. 164

Խընտրանք եւ ոչ մի՝ չը հրամայեն առուս հանել,

*Ցանկապատս յօրինել զարս, հաւերամին նիւթել դարան,*
*Հարկանել հուր ի փուշ, եւ զխաշնարօտըն թառաչոս*
*Անուշ բըշել լուանալ ի կենսաւէտ ջուր վըտակաց:*

**Նոյն Ա. 277**

*Իսկ ի հունձ զայ կարմրորակ ցորեան ի տապ տօթաժամու*
*Եւ կամնէ զմըրկեալ արդիւնս ի միջօրէ տօթ կալորայ.*

**Նոյն Ա. 306**

*Եւ նապաստակս ակըռչեղ վանել հարուլ անդ այծեմունս*
*Ճախր ի ճօպան ցըլեալ ի Թոպ Բալէարեան պարսաւեկաց ։*

**Նոյն Ա. 317**

*Անդ ուրեմն անսասս ալիք ի կոր նաւաց չաւնուն նահանջ.*

**Նոյն Ա. 372**

***Հ. Եղ. Հիւրմիւզ ճարտար հեռեւողութեամբ կը գործածէ ըսելով՝***

*Ջըմեռունք քեզ զայն եռրեակ ի Թօնընկէցս ողողեսցեն,*
*Եւ տպիսակ ըզնովաւ հալեալ լուծցի ծեան կերպարան:*

**Բուրաստան. Ա. 31**

*Այն ինչ անդք ի քաղցրաշունչ եղկեալ ի սիւք զարնանաբեր,*
*Մինչ զուռս ի սայր կոր յօտոցին բըշէ մըշակ ի յայգեստան...*

**Ի Ձմին Ա. 47**

***Սակայն չէ պարտ զեղծանիլ այսու, զի ծաղրելի կը լինինք Շաբըլէնի նման որ կը գովէ «Գեղանւոյն Աֆնիսի անհաւասար մատներն»։***



## ՎԵՐԱԴԻՐՔ ՆԿԱՐԱԳՐԱԿԱՆՔ

***Հ. Ո՞րք են նկարագրական վերադիրք.***

***Պ. Նկարագրական վերադիրք այնոքիկ են որք անձի մի կամ իրի մի կուտան այնպիսի յատկութիւններ որք կ'որոշեն զայն ուրիշ անձերէ կամ իրերէ. այս տեսակ վերադիրք աւելի բացատրիչ***

*են զի աւելի սաստկութեամբ և վայելչութեամբ կը յայտնեն իրի մի հանգամանքն. վասն որոյ քերթողը կ'երեւակայէ միշտ*

*Մշակը խնամող, հողագործը հուժկու, բրիչը* ծանր, *յօտոցը* սուր, *երիվարը* ահիպարանոց, *առիւծը* ամեհի, *հովանին* մեծատարած, *անտառը* նսեմաստուեր, *բաղեղը* սեաւ, *վարազը* թաւաստեւ, *օձը* երկայնաձիգ, *կինը* պարոնական, *ծիրանին* տիւրացի *են. Համառօտ ըսելով, զամէն չար եւ բարի բան՝ երեւակայութիւնն կ'ստուարացունէ նորա աչաց։*

**ՀՐԱՀԱՆԳ 1.**

Աշակերտը պարտի գծերուն տեղ դնել մի վերադիր նկարագրական

*1 — եւ — շուշանը խորհրդանշան է անմեղութեան։ 2 Մայիս ամսոյն մէջ — անտառք կը հնչեն սոխակին — երգերով եւ կկուին — քուքերով։ 3 — եղեգան — ցօղունը կը կքի զեփիւռին — շնչոյն տակ եւ կը դիմանայ — մրրկին դէմ։ 4 Փախէք, մանկունք, — ծերութեան — գրգանքներէն։ 5 Երբ գիշերը կը սփռէ իւր — քօղն երկրի վերայ, վաստակաբեկ երկրագործք — քնոյ մէջ կը փնտրեն իւրեանց — աշխատութեանց մոռացումն։ 6 Քանի՜ մարտիրոսներ փչած են իւրեանց հոգին առիւծուց եւ վագերց — ժանեաց տակ։ 7 — մահը չմեծարեր աւելի արքայից — պալատներն՝ քան — երկրագործաց — հիւղակն։ 8 Բանականութիւնը ջահ մի է —, զոր Աստուած տուաւ մեզ, եւ մեք պարտիմք մեր ձեռօք պահպանել նորա — լոյսը։ 9. Աղօթքը նման է — արշալուսոյ որ կը ծագի մեր ցաւոց վերայ՝ խաւարն անտի փարատելու՝ եւ անդ ցոյց տալու համար զերկինս՝ մեր — աչաց։*

## ՀՐԱՀԱՆԳ Զ.

Աշակերտը պարտի հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրոյն նկարագրական յարմար վերադիրներ գտնել.

1 *Վարդ*։ 2 *Քուն*։ 3 *Դատաւոր*։ 4 *Վագր*։ 5 *Ձմեռն*։ 6 *Ցաւ*։ 7 *Աշակերտ*։ 8 *Շուն*։ 9 *Պատերազմ*։ 10 *Պտուղ*։ 11 *Կին*։ 12 *Ծաղիկ*։ 13 *Ծառ*։ 14 *Հաց*։ 15 *Անապատ*։ 16 *Հոգի*։ 17 *Հողմ*։ 18 *Ձայն*։ 19 *Բարեկամ*։ 20 *Գեղեցկութիւն*։ 21 *Աշխատութիւն*։ 22 *Լեզու*։ 23 *Դէմք*։ 24 *Ջուր*։ 25 *Գիշեր*։ 26 *Գետ*։ 27 *Լեռ*։ 28 *Կեանք*։ 29 *Հոտ*։

### ՕՐԻՆԱԿ

*Վարդ. — կարմրագեղ, ծիրանագեղ, ծիրանեփեան, գեղեցիկ, թարշամ, փշալից, քաղցրաբոյր, գեղափթիթ, դեռափթիթ։*

## ՀՐԱՀԱՆԳ Է.

### ԵՐԿՈՒ ՀԱՍԿԵՐՆ

Աշակերտը պարտի գծերուն տեղ նկարագրական յարմար վերադիր մի դնել.

*Օգոստոս ամսոյ — առաւօտ մը, հայր մը իր — որդւոյն հետ դաշտերուն մէջ կը ճեմէր։ Երկնից կապոյտը ջինջ էր, եւ առաւօտեան ցօղը կը փայլէր տակաւին, ասդ անդ, հասկահասուն ցորեններուն վրայ։ — Հարսնուկներն, երեկոյեան ծիրանեփայլ ամպոց նման հեզիկ հեզիկ կը տատանէին զեփիւռին — շունչէն, — հասկերուն մէջտեղ։ Մանուկն այսր անդր կը վազէր, ամենուրեք ուր որ կը տեսնէր այս — ծաղիկներն, եւ, լի ձեռամբ, կը վերադառնայր առ իր հայրն։ «Տես, հայրիկ, կ'ըսէր, ի՜նչ քաղեցի. գիտէ՛ մանաւանդ այս երկու հասկերն որոնք իրարմէ տար-*

քեր են։ Մին ուղղաբերձ կը կանգնի — հպարտութեամբ մի, միւսն գոգցես յերկիր կը խոնարհի վայրահակ։ Է՞ր երկուքն ալ միեւնոյն բարձրութիւնը չունին»։ Ցայնժամ հայրն ըսաւ նմա բարութեամբ.«Որդեակ իմ, ճշմարտութիւնն իւր — դասերը կուտայ մեզ — երեւոյթի մի տակ։ Այն հասկն՝ որ գոռոզութեամբ կը կանգնի, սակաւ հատիկներ կը պարունակէ. իւր գլուխը դատարկ է։ — արտունձը զայն միայն կը յարգէ եւ կը հնձէ որ, դէպ յերկիր խոնարհած, այս — դիրքովն, կը յայտնէ արժէքն այն — հարըստութեան զոր կը պարունակէ։ Այսպէս դու ալ, սիրելի որդեակ իմ, մի վստահիր սնափառութեան — փայլին. ի ներքուստ աղքատ է նա եւ փցուն։ Սիրէ — համեստութիւնն. իւր տեսիլն շողշողուն չէ, բայց երբեք չխաբեր զմեզ։»

### ՀՐԱՀԱՆԳ 4.

Աշակերտը պարտի հետեւեալ գոյականաց իւրաքանչիւրոյն նկարագրական յարմար վերադիրներ գտնել.

1 Ձի։ 2 Ոճ։ 3 Սէր։ 4 Միտք։ 5 Վարք։ 6 Ծով։ 7 Պատասխան։ 8 Շանթ։ 9 Հանդերձ։ 10 Հասակ։ 11 Մահ։ 12 Մայր։ 13 Մանկութիւն։ 14 Ցոյս։ 15 Երազ։ 16 Փառք։ 17 Սիրտ։ 18 Երկինք։ 19 Օր։ 20 Օրէնք։ 21 Տուն։ 22 Տիւ։ 23 Նաւահանգիստ։ 24 Նամակ։ 25 Որթ։ 26 Ալիւր։ 27 Երկիր։ 28 Լուսին։ 29 Անտառ։ 30 Պալատ։ 31 Հիւղ։ 32 Մարգագետին։ 33 Աչք։ 34 Դեղ։

### ՎԵՐԱԴԻՐՔ ՊԱՐԱԳԱՅԱԿԱՆՔ

Հ. Ո՞րք են պարագայական վերադիրք.

Պ. Պարագայական վերադիրք գեղեցկագոյն և

ազնուագոյն տեսակն են վերադրաց. սոքա իրի մի վայրկենական յատկութիւնը կը ցուցանեն, և մասնաւոր պարագայի մէջ միայն կը պատշաճին նմա. թէև մի բառ է, այլ կը պարունակէ մերթ խորախորհին մտածում մի և մերթ բարձրաթռիչ երեւակայութիւն մի, է որ նմանութիւն մի և է որ փոխաբերութիւն մի և այլևայլ ձևեր եւ իմաստներ։

Վիրգիլիոս ուրեք ուրեք արծաթի կը կոչէ լուսինը եւ ոսկեղինիկ՝ արեգակը, յայտնելով միոյն արծաթի նման փայլումն եւ միւսին ոսկւոյ նման շողիւնն։

Ցամր կը կոչէ ամառան ամիսներն եւ ձմերան գիշերներն, ու եռագընթաց՝ աշնանային արեւն, ակնարկելով ամառան ցերեկներուն եւ ձմերան գիշերներուն երկարութեան, եւ աշնան ցերեկներուն կարճութեան։

Ծոյլ կը կոչէ անբեր ծառաստաններն ու արտերն, նմանութեամբ մարդկային բարք տալով նոցա։

Փայլուն կը կոչէ խոփն, ակնարկելով արօրադրին անդուլ աշխատութեան։

Լուռ կը կոչէ անտառներն եւ համր ծառերն, միոյն ամայութիւնն եւ միւսին երգեցիկ թռչնոց դադար չլինելն յայտնելով։

Ամպարիշտ կը կոչէ այն դարերն յորս ամպարիշտ մարդիկ եղան։

---

## Ց. ԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ

**Հ**. Ի՞նչ է դաշնակութիւնն.

**Պ**. Դաշնակութիւնն է բառից և պարբերու-

թեանց այնպիսի ընտրութիւն և դասաւորութիւն մի զի նոցա ամբողջութենէն ականջն ախորժ տըպաւորութիւն մի կրէ։ Դաշնակութիւնն ոճոյ հըրապոյրը կ'առաւելու, և հետևաբար, մատենագրին յաջողութեան կը նպաստէ։ Պուալոյ իրաւամբ ըսած է. «Ազնուագոյն իմաստ մի չկարէ հաճոյ լինել մտաց երբ ականջը վիրաւորեալ է»։ Գրուածքի մը լեզուն պարտի միշտ ախորժ հնչէ ականջին, թէ արձակ լինի այն, թէ ոտանաւոր. զի ընթերցողը կամ ունկնդիրն զգայուն է նաև առ որ կը դիւթէ զիւր ականջն. «Յաճախ, կ'ըսէ Կիկերոն, յաճախ տեսած եմ զի համայն հրապարակն (forum) կը ծափահարէր ի լուր դաշնակաւոր պարբերութեան մի։»

Զդ. Հ. Քանի՞ տեսակ դաշնակութիւն կայ.

Պ. Երեք տեսակ. 1) Դաշնակութիւն բառից (l'harmonie des mots). 2) Դաշնակութիւն պարբերութեանց (l'harmonie des périodes). 3) Դաշնակութիւն նմանաձայն կամ նմանաձայնութիւն (l'harmonie imitative)։



## ԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ ԲԱՌԻՑ

Հ. Յորո՞ւմ կը կայանայ բառից դաշնակութիւնն.

Պ. Բառից դաշնակութիւնը կը կայանայ քաղցրահնչիւն և ախորժալուր բառեր գործածելու մէջ. ընդհանրապէս այն բառերն ականջի ա-

ւելի ախորժ կը հնչեն որք անուշ և հեշտալուր ձայներով են ձևացած, և ձայնաւորաց ու բաղաձայնից վայելչահիւս խառնումովք են կազմուած։ Ուստի ներդաշնակ ոճ ունենալու համար պէտք է զգուշանալ խորթ եւ անախորժ հնչում ունեցող բառերէ, բաղաձայն գրելու կուտակութենէ, և նոյնաձայն վանկերու յաճախակի կրկնութենէ, բացի այն պարագայէն յորում խորհրդով կրկնուած կը լինին նոքա նմանաձայնութիւն յառաջ բերելու համար։

Հետևեալ պարբերութիւնք ոճոյ դաշնակութեան հակառակ օրինակներ են։

«Այլ այլազգիք այլայլեցան, երբոր թշնամեաց բանակին մօտենալը տեսան։»

«Վայ այն ազգաց որ տգիտութեան խոր խաւարին մէջ կը խարխափեն։»

«Միմիայն միմեանց միութեան կը փափաքէին։»

Բագրատունւոյն հետևեալ տողերը կը մեղանչեն ոճոյ դաշնակութեան դէմ զի աւելի բառախաղութիւն են քան թէ նմանաձայնութիւն.

Կային ջիրդ դէտակն եղեալ դէտք ի դիտակ տեղիս դաշտին .

Հ. Դիւց. Դր. Թ.

Ջրօսնուիր ի ցանց ի կարթ, ի զազանացն որսոց հանգիստ
Ի շիւղիր յալիսն ի շիւղ շեղ շուղակաց նախանձաւոր :

Նոյն. Դր. Թ.

Բուռն ի փանդիռ Բիբոր բամբիշըն վարդակաթ կըցէր մասամբ ։

Նոյն. Դր. Ժ.

Վարազն ոյր ծայր՝ ծիրանի ծիածանին ծրարէր ի ծոց ։

Նոյն. Դր. Ժ.

Դառնայր հայեր հօրն ի վրան , եւ զհետ Հրանդայ ի հրոսքն կոյս ,
Աչք յերկինս եւ ձեռս ի հասլ ի զեղուն լանջսըն կայր անմռունչ

Նոյն. Դր. ԺԳ.

Մխի սլաքն ի կառափըն ճերմակին , մոլի զազանն ,
Կանգնի կիցս ընկենու յողըս վազս առեալ շուրջ մեծամեծս ,
Ճօճէր ճոկանըն ճապուշկ, ճախր ի ճակատըն ճեմելով,
Մինչեւ պարզեալ ըզչորեսին սրունսն յորովայն տախտապարի ։

Նոյն. Դր. Գ.

## ԴԱՇՆԱԿՈՒԹԻՒՆ ՊԱՐԲԵՐՈՒԹԵԱՆՑ

1. Հ. Ցորո՞ւմ կը կայանայ պարբերութեանց դաշնակութիւնն.

Պ. Պարբերութեանց դաշնակութիւնը կը կայանայ պարբերութեան մի անդամներուն զուգաչափ եւ բարեյարմար դասաւորութեան մէջ։

2դ. Հ. Պարբերութեան մի անդամներն ո՞րք են.

Պ. Պարբերութեան մի անդամներն են այն նախադասութիւններն յորոց բաղկացած է պարբերութիւնն.

3դ. Հ. Պարբերութիւն մի քանի՞ անդամներէ կրնայ բաղկանալ.

Պ. Պարբերութիւն մի կրնայ երկու, երեք, չորս եւ, դուն ուրեք, հինգ անդամներէ բաղկանալ. զոր օրինակ ։

Պարբերութիւն երկանդամ

Երջանկութեան հասնելու համար բոլոր մարդիկ

հաստատութիւն կը փնտրեն, | բայց եւ այնպէս երջանիկ հարուստներ յոյժ սակաւ կը գտնուին։

Պարբերութիւն եռանդամ

Եթէ արդարութիւնը թագաւորէր մարդոց սրտին մէջ, | եթէ ճշմարտութիւնն եւ առաքինութիւնը առաւել սիրելի քան զգրգանս եւ զինչս լինէին նոցա, | ոչինչ պիտի կարէր վեր ի վայր շրջել նոցա երջանկութիւնը։

**Մասիյոն**

Պարբերութիւն խառանդամ

Երկնային իմաստութիւնը սփռեց իւր բարիքներն երկրի վերայ, | որպէս զի մարդ, ծոցովելու համար զայնս, շրջի նորա այլեւայլ կողմերն, | զարգացունէ բանականութիւնն իւր գործոց զննութեամբն, | եւ բոցավառի իւր սիրով՝ զգալով իւր բարիքներն։

**Պէրն. տը Սէն Բիէր**

## ԴԱՍՆԱԿՈՒԹԻՒՆ ՆՄԱՆԱՁԱՅՆ
## ԿԱՄ
## ՆՄԱՆԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ

Հ. Յորում կը կայանայ նմանաձայնութիւնն.

Պ. Նմանաձայնութիւնը կը կայանայ բառից ձայներով առարկաները նկարելուն կամ կերպարանելուն մէջ, այսինքն առարկայ մի կամ իրողութիւն մի այնպիսի յարմար բառերով բացատրել զի եթէ այդ առարկային կամ իրողութեան ձայնին ականջալուր լինէինք, միեւնոյն ձայները պիտի իմանայինք։

Ազգային բանաստեղծք բազում օրինակներ կ'ընծայեն մեզ, յորս զարմանալի հարազատութեամբ յառաջ բերուած կը տեսնուին զինուց, ձիոց, զօրաց, քամիի, ալեաց եւն. ձայները.

Ի Հ. Արսէն Բագրատունւոյ

Գլինծք շողան, գոռան ոգիք, լանջք ընդ հագագս ըզբոց շընչեն,
Ի հրաշունչ ի փըրփրերախ երիվարաց դռոթեն զրընգիւն
Ցասակք երկրին դըղըրդին, Թընդան դողան սանդարամետք։

Հայկ Դիւցազն. Գր. Բ.

Սայլից թիւրք ճըռընչեն, արք երիվարք տոփեն ’ի դաշտ։

Նոյն. Գր. Ա.

Գայր Ցոլակըն բոցաշունչ դափր հասանէր սանձակոտոր,
Ոտնատրոփ յահեղ խըրխինջ տայր ընկերաց պատասխանի։
Ոտն ածեալ ոտնոյր ի նիւս դիւցազնըն զէնս ’ղասպար շկահեալ.
Շկահէին զոյգ զօրագլուխք եւ խրոխտաձայն կըցէին փողք,
Ծընծղայք սրինգ դափիլ Թըմբկաց, արուեստականըն Ցոքալոյ.»

Նոյն. Գր. Դ.

Հայկեանց ցրուեալ ի մայրիսն յալսկոյս յայնկոյս յառաջս առաջս,
Ի հաջել հետազօտել շանց՝ ի դղորդից ասպատակին
’Դոստուցեալ բոյլք էրէոց վազեն վարգին ի վեր ի վայր.
Անդ քառատրոփ դըռոյթ, անդ զոռ, անդ ոտն ի դոփ, մըկունդ ի կոփ
Թունդ առ անտառ, թումբ ի թըմբկին Թումբ ի Թըմբիւն զանգք արձանաց։

Նոյն, Գր. Զ.

Տարմատարմ նըստին բանակք, հընչեն երկայն կոր ծովափունք
Ի կարկաչ ուր կառաչիւն անհուն կերկեր աղաղակին.

Նոյն. Գր. Ժ.

Մըրըկատարափ կուռ կարկուտ կըռփէր կոծեալ ի կառափունս։

Նոյն. Գր. Ժ.

Նա Թեւեւս ընդ միտ եւ սիրտ իւր՝ նըկարել իցէ բաւակ
Զօրինակ տհազնադղորդ զռոց կոփոց Թուղոց հայԹմանց
Երկախումբն բախելոյ հըսկայախրոխտ կուռ՝ բանակաց.

Նոյն. Գր. ԺԹ.

Որ զթըւչնիկըն թիթեռնիկ թեթեւ թեւօքըն թրթըռուն
Ի թըրթուռն արկեալ պահէ յանարգ զեռուն տաղաւարեալ.

**Նոյն. Դր. Դ.**

Կերկերեալ մըռընչիւն, կարկամ հազագ, ճիգն անօգուտ,
Ձայնք ըզձայնս թախէին, աստի անտի մըղին աւաչք,
Ոչ բան ոչ միտք ի նոսա, ժըխոր եւ խռով խառնակութեան,
Խուժադուժ կարկաչ, խանչիւն խափարածայն եւ խաղտախուղտ:

**Նոյն. Դր. Ե.**

Եւ վիշապք այլ եւս մանունք յուսոցն ըզվիզսն ամբարձեալ
Շըչէին ճըչող սուլիւք՝ ճօճեալ լեզուս սուր եռասայր:

**Նոյն. Դր. ԺԹ.**

Ինքն ի սոյլ սուր սրընգի մարգ ի ծործորըս կարկաչուն
Դուոյթ տայ սպիտակ իւր խաշին եւ մակաղէ միշտ արթուն.

**( Տաղք Կրօնականք )**

## Բաղդատութիւնն թարգմանութեանց մէջ անգամ ուշադիր է նմանաձայնութեան.

Անդ ի նեղ որկոր ագռաւք եռակ քառեակ վըճիտ բարբառ
Ի յեղյեղուկս արկանեն, եւ.....

**Վիրգիլ. Մշակ. Ա. 24**

Ո՛հ, յայնժամ ուռ սաղարթուն ոչ փրկեսցէ զփափկիկ ուլկոյզս,
Այնչափ ընդոստ դղոյթ ընդ տամալ տայ կուռ կարկուտ զոռ բար-
կաճայթ: **Նոյն. Ա. 461**

Փութաղռոյթ անդրուվարեան ոտին դըրնդիւն՝ դունկն իմ թընդէ:

**Հոմեր. Իլիա. Երգ. Ա.**

## Ի Հ. Եդ. Հիւրմիւզեանէ.

Շուրջ մեղուք անուշահոտ հիւթոցն ի ծուծ կան անձկաւէտք,
Նկարէն ճախրէ թեւովքն ըզմեւք թիթեռըն շուրջ ի թիռ.

**Բուրաստան. Գիրք. Ա.**

Ձեւ կըռչածայն կըռընկաց հընչեալ յամպոց կերկեր բարբառ.

**Նոյն. Գիրք. Բ.**

Ճռընչէ ճըպուռն ի ճըղին, ճըճուեն ճընճղուկք ճըռուողականք:

**Նոյն. Գիրք. Դ.**

## Ի Հ. Ղ. Ալիշանէ

*Հայկեան փանդռանց որոտընդոստ ղռընչին բարբառք մարտազոռ.*
*Դառնակոռոչ անդրաձայնէ պարսիկ կերկեր ի շեփոր.*

**Նուագք** (Հայրունի)

*Ի զուպարել մարտայարղար զարշապարաց Արամայ*
*Գոռան Կորդրիք, մռնչեն Մասիք, հռընչեն սահմանք Երասխայ.*
*Ի դռոհ ի դռոհ տալ բխրուցն ոտնատրոփ,*
*Տատանին դաշտակք, յառնէ շռինդն ապշոպ.*
*Կռուփ առ կռուփ կոփեն կմբայք, տէգ առ տէգ.*
*Գղորդ առնուն տարերք կորովեացն ի վէգ.*

**Ի նմին**

## Ի Խորէն Արքեպիսկոպոսէ Նար—Պէյ

*Շռինդ ի շառաչ պատառեցաւ ծով Պոնտոս...*

**Սօնէթք Հայկականք**

*Գոռաց փող կերկեր*
*Խիզախ քաջալեր.*
*Ճախրեն սուրան ծիք*
*Թօթափեալ շանթիք,*
*Եւ փառաց վակծոյժ*
*Քաջք առնուն աշխոյժ։*

*Դափր անդ ի դրընդիւն*
*Նժուգից վրնջիւն,*
*Որոտրդաց զոչիւն,*
*Բարակաց հաչիւն,*
*Երէոց բաջիւն,*
*Ջինուց շառաչիւն,*

*Աղեղանց ճայթիւն,*
*Նետից ճարճատիւն,*
*Շըռինդ ընդ թմբիւն,*
*Անդ յընդոստ թընդիւն՝*
*Ցանտառ, ծոր թըմբիւն*
*Դըղըրդեն զանգիւն։*

**Նոյն**

Եւ ոտեա՛ւ անդէն խուժան այսաքեկ.
Եւ սուր քարանցըն շառաչէր խիտ երթեւեկ.
Իբրու յամպոց դղրդիւն յամառնակէզ օդոց մղձկուտ
Ի շանթեռանդըն թօթափիւն ընդոստ ի դղույթ տոփէ կարկուտ.

**Թեար Պանդխտին**

Ակօսք ի ճռինչ բեկանին, ապառք յոտից ելին թինդ,
Կառաց շաչիւն հեծելոց, սալք թոպին յուռն ի շըռինդ.
Սըրինգ ի հեշտ սոյլ շըշըչէ, ջեփոր ի մարտ հրաւիրակ...

**Ի. Եմին**

---

## ԴԱՇՆԱԿԱՒՈՐ ՈՃՈՅ ՕՐԻՆԱԿՆԵՐ

### ԼՈՒՍԻՆ

Ողջոյն տամ քեզ անհուն սիրով, ո՛ լուսնակդ իմ,
Առանձնակեաց տըխուր հոգւոյս դու մըտերիմ,
Թէ չըլլայիր դու, եւ փափուկ՝ քո այդ շողեր
Զըր գըրգուէին սըժգոյն ճակատն իմ սգաստուեր,
Շատ իսկ կանուխ դառն արտասուաց մէջ ես, աւա՜ղ,
Կը փըշէի կեանքս, որ կանթեղ մ'է նուաղ.
Նուաղ՝ այո՛, եւ գոգ երազ վաղասալացիկ
Սեւ աշխարհիս հորիզոնէն կանցնիմ մենիկ։

Բընաւք զիս ցուրտ կարծեն զուարթ կամ անտարբեր,
Այլ դու միայն, դու կը տեսնես սըրտիս կայծեր։
Մինչդեռ երկնից անդունդներէն ինձ կը նայիս,
Կարծես սըրտիս տըխուր պատկերն ի քեզ ունիս,
Եւ անհամար բոյլերն աստեղց թողած հեռուն՝
Ամայութեանց մէջ կը շըջիս գիշերն ի բուն,
Ո՛վ դու լուսնակ, քանի՛ չըքնաղ ես եւ փափուկ,
Քո նըշոյլներ սրտիս խորէն քաղեն արցունք։

Տիեզերաց ոգի՛ն ես դու արդեօք, թէ Տէր
Քո հայելւոյդ մէջ կը դիտէ զիւր վեհ պատկեր։

Հոգւոյս համար մի խունկ ես դու աստուածավառ.
Իսկ աչերուս նոյն ինքն էին թուխս տիպար.
Այդ անոյշ գեղ քոյ եւ շընորհ մելամաղձիկ
Ծածկեն յինքեանս ոգի խոկուն երկնազդեցիկ,
Զի գըթացեալ ընդ խոր աղէտս հէք մահացուաց՝
Խորհրդաւոր դամբաններու ելնես ի յայց,

Եւ ըղնաձեաց գըգուել կատարս սրեւախիտ
Փիլոմելեայ տըրտում երգոց յար դընես միտ:
Զէ քեզ հաճոյ ոսկեձեղուն ճոխին պալատ,
Քո սիրելի վայրք են, դաշտերն, անտառքն ազատ,
Ցոր հոգիք մեծ յածին թաւուտ թըփոց ներքեւ,
Ցոր մի մըրմունջ թողու վըտակ, ծաղիկ՝ տերեւ:
Վիշտ քեզ համար մի հրապոյր է, եւ աւերք սեաւ
Ոգեւորեալ փայլին ի շող լուսոյդ անբաւ:

Մի սիրտ ես դու, ըզգամ ես զայդ, սիրտ քերթողի,
Երազներով, հըրով, տենչով եւ խանդով լի,
Կամ հայրենեաց գաւառներէն նըժդեհ մի կոյս,
Որ քօղի տակ ծածկես արցունքդ, հառաչդ ու յոյզ:
Զունիս բարբառ, լուսնակ, այլ ես գիտեմ քանի՛
Հուր եւ աշխոյժ քերթողական ի քեզ վառի,
Այդ տըխուր դէմք քո պերճախօս է բաւական
Ինձ յայտ առնել թէ չես ուրիշ աստեղց նըման:

Ես ալ քեզ պէս տըրտում եմ, ա՜հ, եւ տարագի՛ր,
Ինձ համար ալ չունին հրապոյր վայելք պատիր.
Քեզ տամ ի ձօն հոգիս անբաւ սիրոյս նըշան,
Պատմէ նըմա խորհրդաւոր վըշտերդ համայն.
Նա զերդ քընար թըրթըռալով յաստեղց յաստեղս՝
Քո հառաչներ պիտի սփռէ ի տիեզերս,
Եւ յաւիտեան կեցած անհուն դարուց վերայ
Միշտ սուրբ սիրոյդ քո երգարան պիտի ըլլայ:

**Օր. Զ. Խաննեան (Տիկ. Տօնէլեան)**

## ՎԵՐԱԴԱՐՁ

Ասէր ոգեակ մանուշակին ,
«Թերթք իմ անկան , բեկաւ ծըղօտ .
Քոյր իմ, երթամ, եւ ցօղագին,
Լացցէ վաղիւ զիս առաւօտ.
Այլ ոչ ընդ բաղդն իմ հառաչեմ.
Որ զիս ընկճէ ի դալարւոյ,
Յորժամ գարուն գայ ծաղկաձեմ.
Նազիմ դարձեալ ես յիմ բողբոջ։»

Իսկ ես , ասէր , այգուց ցօղիկ ,
«Ի տերեւոց գըգուիմ ի ծոց .
Ինձ փարելի ծաղկանց ցեղիկ,
Նոցա այտեր ինձ հանգստոց .
Այլ զիս կիզու ո՛հ , արեւակ . . .
Մի՛ , մի՛ տխրիր վարդ սիրեցեալ ,
Գայցէ գիշեր եւ կարմրորակ
Ի քո ծոցիկ եկից դարձեալ։»

Անդրուստ սոխակ ի պուրակին ,
Յետին նուագ զայս յեղյեղէր .
«Ողջամբ մընայք ջուրք առուակին ,
Ողջամբ ծըմակք նըսեմաստուեր .
Այլ մինչ նորոգ գայ Ապրիլ ,
Եւ զարթիցեն դեղ դալարիք.
Յիմ հովանի եկից թառել ,
Սլացցին դարձեալ իմ դայլայլիկք։»

Եւ դու վըտակ տխրակարկաջ ,
Զի այդ մըմունջ քո սրտացաւ ,
«Լուարուք դաշտք ո՛հ , զիմ հառաչ ,
«Ըղձից աղբիւրս ցամաքեցաւ ,
Այլ ձիւնաբերք մինչ ի լերանց .

Գայցեն զերկիր արբուցանել,
Ես ի միջոյ փախուկ ծըղեաց·
Եկից դարձեալ հեզիկ սահել։»

Շողն արփենւոյն ընդ երեկոյս ,
Յիւրն օրհասին ամպոց վերայ·
Աղօտափայլ դողդոջ մի լոյս ,
Տայր ընդ ոլորտըս բացակայ ·
«Սակայն , ասէր , երկիր ծաւալ,
Ծով ծիրանի , առնում ձեզ այց
Ընդ աշալուշ վաղիւ դարձեալ,
Յոյժ տեսանել եւ փայլեցայց։»

Այսպէս ահա ծաղիկ եւ ցօղ,
Սոխակն անոյշ, անոյշ առուակ,
Եւ արփենւոյն կենսաբեր շող,
Մեկնին, սակայն դառնան երագ.
Եւ դո՛ւ կուսիկ, դու որ դեռ նոր,
Ծածկեալ ի հող մատաղ ըզտիս·
Տարեր ըզգեղդ, ըզբոյր եւ շնորհ,
Ա՜հ, դո՛ւ միայն ո՛չ եւս դարձցիս։

Մ. Պէշիկթաշլեան

## ԱՌ ԶԵՓԻՒՌ

### Ա.

Զեփի՛ւռ, գարնան ո՛վ դու աղջիկ գեղապար,
Դու բընութեան փափկասուն հարս օդավար,
Թո՛ղ մի վայրիկ զանհունութիւն եւ կեցիր·
Վար առ մանո՛ւկ թեւերդ անխոնջ, ունկընդիր։

Յաճախ հազիւ 'զառաջին վարդ համբուրած.
Հողմածածան զայն քեզ տապան ես գըտած.
Հազիւ շոյած մատղաշ առուս կենսաւէտ՝
Օ՛հ, շընչասպառ կորար յալիս վէտ ի վէտ։

Օճառածին զերդ պըղպըջակ ծիրանի,
Զերդ արծաթի ծուխ կընդըրկան սըրբենի,
Զերդ կաթնածիր շաղեր ցրուած ի Դանքրիւռ,
Կեանքդ անտեւ է, լաւ զայն վարէ, խո՛լ Զեփիւռ։

Ինչո՞ւ վատնես ոսկի ժամերդ խաղալով
Քեզ պէս մանուկ, թեթեւ, անմիտ թիթռանց քով.
Ի՞նչ շահ թէ դուն ծաղկէ ծաղիկ վազս առեալ
Հասնիս, բըռնես նոցա քըղանց փայլ ի փայլ։

Ի՞նչ շահ, ո՜վ չար, թէ վարատես ըզ յայսմեր
Եւ վարդերու փետտես կարմիր ըզթերթեր,
Կամ թէ պահպահ խաղաս ի գոգ շուշանաց։
Զեփի՛ւռ, ուսիր դեղանա՛լ ծիր քո կենաց։

Բ.

Լուսափետուր Այգ նոր թռուած ի ծայր բլեր՝
Գընա կապտել 'զվարդ, շահոքրամ խընկաբեր,
Եւ մանուշակ, ոսկեծաղիկ, նարդ, յասմիկ.
Լից յայդ բուրմունս 'զեթերեայ քո ծոցիկ։

Յետոյ գիտ դու հոնաւ թեւօքդ իմ Երէս,
Ականջն ի վար դու ճըլուըլա. «Սիրէ 'զքեզ,»
Եւ ջերմ համբոյրս, 'զոր աւանդեմ դողդոջուն,
Օ՜հ, թըրթռացո՛ւ ընդ իւր շուրթեր մեղրասուն...։

Լուսինն ահա մելամաղձոտ նոճեաց ծայր
Գլորէ թեթեւ լուսոյ ալիս ոսկեսայր,
Զեփի՛ւռ, ոգել գնա շիրմաց վրայ 'զերգ մահուն.
Քեզ քնար նոճին լինի, ձայնկից՝ լալկան բուն։

Պէշիկթաշլեայ գնա գիտ տապանն, ո՜վ Զեփիւռ,
Դեգերէ հոն, գըրկէ բազկօքդ համասփիւռ.
Հոն մեծութիւն հանգչի, մի վեհ սաղ հընչես,
Որոյ յանկերգ լինի. «Ցաւէ՜տ անմահ ես։»

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . .

*Եւ գնա մեռիր, մանուկ Զեփիւռ, սուրբ յԵդեմն*
*Ուստի առ սէր Եւայ եկար դու երբեմն .*
*Հրեշտակազուարճ առուք լինին քեզ տապան*
*Եւ դըրախտին վըճիտ այերն քեզ պատան ։*

**Մ. Չերազ**

## ԶՈՒԳՈՐԴՈՒԹԻՒՆ ԲԱՌԻՑ

(DES ALLIANCES DE MOTS)

*Հ. Ցորո՞ւմ կը կայանայ բառից զուգորդութիւնն.*

*Պ. Բառից զուգորդութիւնը կը կայանայ միացունելու մէջ երկու կամ աւելի բառեր որք միմեանց հակառակ եւ անհաշտ կը թուին եւ որոց միութիւնը սակայն կատարելապէս ճիշտ իմաստ մի կը կազմէ ։ Բառից զուգորդութիւնը կը ճոխացունէ լեզուն՝ արդէն ծանօթ բառերը նոր եղանակաւ մի ի կիր արկանելով. զոր օրինակ, .*

*Եւ ի կատար անդր ամբարձած, կը փափաքի իջանելու*

**Քոռնէյլ. Կիննա, Բ. 1**

*Քոռնէյլ, միացունելով սոյն երկու բառերն, փափաքիլ եւ իջանել, որք իրերաց հետ գործածուելու համար շինուած չեն թուիր, կը ցուցունէ մեզ փոփոխամտութիւնն այն մարդոյ որ տաղտկացած է ի մեծութեանց որոց այնքան ըղձակերտ էր եղած ։*

*Ռասին խսկ կը զարմանար այս տողին գեղեցկու-*

թեան վերայ։ Արդարեւ, փափաքիլ բառն որ սովորաբար բարձրանալին հետ կը գործածուի, իջանելին հետ գործածուելով՝ նոր գեղեցկութիւն մի կը ծնի։

Ռասին բառից զուգորդութեան բազմաթիւ գեղեցիկ օրինակներ կ'ընծայէ մեզ։

Ագամեմնոն կ'ըսէ Իփիգենիին մէջ.

Ըզգիս դըսրովեցի, եւ ստունգանեալ զամենայն՝
Ուխտ եդի զբագնոք նոցին՝ ապստամբիլ ի նոցունց։

Հանդէս Ա. 1

Ես ինքնին պատկառանօք իւիք լինիմ խոստովան,
Կախարդեալ իշխանութեամբս եւ մեծութեամբ սոնքացեալ,
Արքայից արքայի անուն, պետի Հելլենաց,
Ըզորրոխս ամբարհաւան տըկարութիւն խըռովըղէր։

Ի նմին

Բրիտանիկի մէջ (Ողբերգ. Ռասինի) Բուռոս՝ դատելով Ներոնի մարդելայզ պալատականներն՝ կ'ըսէ,

Որ ըզմիմեամբք ի պատիւ վաստարեղոյ զինքն եւցեն,
Առնիցեն աշեւորեշ նմա յերկայն մանկութեան։

Հանդէս Ա. 2

Ազգային մատենագիրներէն եւս ունիմք զուգորդութեան գեղեցիկ օրինակներ յորոց մի քանին ի մէջ բերեմք.

Անյուսութիւն, գերեզմանի
Այդ սեւ կաթը շատ ըմպեցինք,
Քեզ արբեցուց այդ ըմպելիք,
Եղար երկնից տժգոյն որդի.

Պ. Դուրեան

*Եւ զոր ո՛չ զէնք քո մըշտայաղթ ուժին քեզ՝*
*Եւ փաղաքուշ ո՛չ խուժան,*
*ՉԱնմահութիւն, — զայն քեզ շնորհեց Ա՛րտաշէզ՝*
*Մահուդ վերջին անմահ բան:*

**Խոր. Արքեպիս. Նար-Պէյ**

*Բայց ի՞նչ է այդ sկar էակին qorութիւնն որ այդքան հզօր ազդեցութիւն մի կարենայ գործել մարդկային սեռի միւս կիսուն կենաց եւ ճակատագրին վրայ:*

**Ռ. Ց. Պէրպէրեան**

*Երեք կարգ մարմարէ աւազաններ ջուրը կ'ընդունին, եւ իւրեանց արուեստական ծերպերէն վիժելով զայն կը գլորեն ծոցէ ծոց. կիճk փեքակներ, որք ամէն կողմէ արծաթավառ հեղուկ կը ծորեն:*

**Մ. Չերազ**



**ՀՐԱՀԱՆԳ 1.**

Աշակերտը պարտի հետեւեալ պարբերութեանց իւրաքանչիւրոյն մէջ ստորագծել այն բառերն որ *զուգորդութեամբ* գործածուած են.

1. *Ջրաճճին* (infusoire)- *կը նաւէ ցօղոյ կաթլի մի ովկէանին վրայ:*

*— Ջրաճճին կը նաւէ ցօղոյ կաթլի մը ովկեանին վրայ:*

2. *Բարիք ոչ այլ ինչ է բայց եթէ անապատ մի բնակաւէտ:*

3. *Կը տապալեն կաղնիները, երկրի այս հինաւուրց մանուկներն:*

4. *Հօգին կը վշտակիր անդ իւր հաճոյքներովը:*

5. *Մտէք, կ'ըսէր քահանայն, մի ցաւիք իմ ընչաւէտ աղքատութեան վրայ:*

6. Քրիստոս պսակուեցաւ ծանականօք։

7. Անտառաց սօսափիւնը կը ձգէ զհոգին անուշ տխրութեան մը մէջ։

8. Մանկան թերութեանց համար ներողամիտ բարութիւնն անգութ բարութիւն մի է։

9. Բիւրեղացած հեղեղներ եւ սառած քարավազներ կը ննջեն մարմարեայ կոհակներով ծառուղեաց զառ ի վայրին վերայ։

10. Մոնմորանսի դքսուհին կը վայելէր զիւր վիշտն, գիտելով իւր ամուսնոյն պատկերն։

11. Ո՛վ Յիսուս, շնորհէ ինձ վշտակրելու երջանկութիւնն։

12. Վշտաց գանձերով կը զեղու իմ հոգիս, կ՚ըսէր Ժիլպէր բանաստեղծն։

13. Ողջո՛յն գեղածիծաղ աքսոր անտառա՜ց։

14. Ի՛նչ հաճոյական սուգ մի է ագահի մի ժառանգորդին սուգն։

15 Անտառաց լռութիւնն երգ մի է առ Տէր զոր կը լսէ ուշադիր հոգին։

16. Իմաստունը կորստեամբ կենաց կը շահի զկեանս։

17. Անափառութեամբ լի մարդն խօթամտութեան երանութիւնն ունի։

18. Այն ատեն իսկ երբ մարդ երջանիկ է, իւր հաճոյից մէջ դառնութիւն մի ունի, չգիտեմ ի՛նչ է այն, զոր մարթ է կոչել տրտմութիւն երջանկութեան։



## ԳԼՈՒԽ Գ.

# ՄԱՍՆԱՒՈՐ ՅԱՏԿՈՒԹԻՒՆՔ ՈՃՈՅ



1. Հ. Ո՞րք են ոճոյ մասնաւոր յատկութիւնք.

Պ. Ոճոյ մասնաւոր յատկութիւնք այնոքիկ են որք նիւթոց տեսակին համեմատ կը զանազանին։

2դ. Հ. Նիւթերը քանի՞ տեսակի կը բաժնուին.

Պ. Նիւթերը գաղափարաց եւ զգացմանց բնութեանը նայելով՝ երեք ընդհանուր կարգի կը բաժնուին. պարզ, միջակ և վսեմ, ուստի երեք տեսակ ալ ոճ կարեմք զանազանել որք, բաց ի ամենուն հասարակաց եղող ընդհանուր յատկութիւններէն, պարտին իւրեանց առանձին յատկութիւններն ունենալ։ Ոճոյ այս երեք տեսակներն են. 1) Պարզ ոճ (style Simple). 2) միջակ կամ բարեխառն ոճ (style Tempéré). եւ 3) վսեմ կամ բարձրագոյն ոճ (style Sublime)։



## I. ՊԱՐԶ ՈՃ

1. Հ. Ո՞րն է պարզ ոճոյն նկարագիրն.

Պ. Պարզ ոճոյն նկարագիրն է խորհիլ, զգալ եւ բացատրել ճշդիւ ինչ որ պէտք է միայն, առանց շատ սաստկութիւն տալու իւր բացատրութեանց,

շատ ուժգնութիւն՝ իր զգացմանց եւ շատ փայլ իր մտածմանց։ Այսպէս պարզ ոճը դոյզն զարդ կը պահանջէ. մանաւանդ պէտք չէ որ արուեստ երեւի անոր, զի իր բովանդակ արժանիքը բնականութեան մէջ կը կայանայ։ Հետեւեալն պարզ ոճոյ գեղեցիկ օրինակ մի է։

## ԶԱՒԱԿԱՑ ՊԱՐՏԻՔ ԱՌ ԾՆՈՂՍ

Մանուկ կաթնկեր, որ թէպէտ դեռ իմացականութիւն չունի, բայց բնազդեցիկ բերմամբ մօր գրկին մէջ առաջին անգամ կ'զգայ եւ կը ճանչնայ սէրն։ Մանուկը, եթէ չեմ սխալիր, մօր միջնորդութեամբ եւ վկայութեամբ կը ճանչնայ նաեւ իր հայր. եւ ահա սոյն ճանաչման մէջ կը ծնի ծնողասիրութեան զգացումն եւ որչափ ինքն կ'աճի եւ կը զարգանայ, պէտք է այնչափ մեծնան իր սրտին մէջ ծնողասիրութեան պարտիքը։

Եւ ի՞նչ են այս պարտիքները. ահա մի առ մի բացատրեմ քեզ։ Բնական եւ Աստուածային պարտիք է նախ եւ առաջ ճանչնալ, թէ իր կենաց եւ գոյութեան պատճառը՝ իր ծնողքն են. եթէ չլինէին ծնողք ինքն այս աշխարհիս վերայ ոչ լոյս պիտի տեսնար, ոչ արեւ, եւ ոչ մարդ պիտի կոչուէր, եւ կամ մարդկային ընկերութեան կարգ խառնուէր. այլ պիտի մնար չգոյութեան մէջ անծնունդ եւ անանուն։

Այո, զաւակաց պարտիքն է ճանաչել զծնողս, եւ ծնողական ծայրագոյն սէրը չափել պէտք է. թէ չկայ աշխարհիս վերայ ուրիշ ոք, ոչ եղբայր, ոչ քոյր, ոչ բարեկամ, ոչ ազգական եւ ոչ իսկ ամուսին. որ ինքն այնչափ գորովով սիրէ ու խանդաղատի. անձն՝ անձին եւ հոգին՝ հոգւոյն փոխան տայ, ինչպէս ծնողք։

Ուստի ծնողական սիրոյ այս մեծ իրաւունքը՝ նոյն փոխադարձ սէրը կը պահանջէ զաւակներէն. զոր սրտի մտօք պէտք է հատուցանեն ու պարտական չի մնան:

Ճանաչել եւ հպատակիլ պէտք է, ընտանեկան կենաց եւ տանին փոքրիկ թագաւորութեան մէջ՝ քանի՞ բարձր ու փառաւոր է ծնողաց իշխանութեան աթոռ. Թէպէտ եւ ստրուկ լինին նոքա, աղքատ լինին եւ իբրեւ անքաղաքացի՝ շինական խրճիթին մէջ ապրին, դարձեալ միշտ մեծ են ծնողք, որ քաղցր եւ անբռնադատ սիրով կը հրամայեն, որոց կամակատար հնազանդութիւն մատուցանել արժան է, ինչպէս տիեզերք աստուածպետական աթոռին առաջ...:

Ճանաչել պէտք է նաեւ թէ որդիքները ո՞րչափ երախտապարտ են առ ծնողս, որք ոչ միայն երկանց վիշտերով ծներ են զիրենք, այլ եւ բազմադիմի չարչարանքներ, տառապանքներ եւ կարօտութիւններ կրելով՝ պահեր ու դարմաներ են զիրենք. որոց որիտուր եւ փոխարէն պէտք է հատուցանեն որդիք երբ ծերութիւն կը հասնի ծնողաց վերայ, կամ մերթ եւս տարաժամ հիւանդութիւնք եւ փորձութիւնք կը հրջապատեն զիրենք: Այս դառն տառապանաց մէջ ո՞վ մխիթար պիտի լինի ծնողաց սրտին. եթէ ոչ զաւկըները, որոց անհրաժեշտ պարտականութիւնն է, ամենայն սիրով դարման տանիլ ծնողաց մինչեւ գերեզմանին դուռը, եւ ձեռքով ի հող դնել նոցա խոնջեալ գլուխ եւ աշխատեալ անձն:

Հայրիկ (Դրախտի ընտանիք)

Զդ. Հ. Պարզ ոճն ի՞նչ նիւթերու կը պատշաճի.

Պ. Պարզ ոճը կը պատշաճի ընտանեկան խօսակցութեանց, սովորական եղելութեանց զրոյցներու, առակի, հովուերգութեան, նամակաց,

վերջապէս այն տեսակ նիւթերու յորս գրողին նպատակն է ուսուցանել։

3դ. Հ. Ո՞յք են պարզ ոճոյ սեպհական յատկութիւնքն.

Պ. Պարզ ոճոյ սեպհական յատկութիւնքն են. 1) *Պարզութիւն* (la Simplicité). 2) *Սեղմութիւն* (la Concision) եւ 3) *Միամտութիւն* (la Naïveté)։



### ՊԱՐԶՈՒԹԻՒՆ, ՍԵՂՄՈՒԹԻՒՆ, ՄԻԱՄՏՈՒԹԻՒՆ

1. Ի՞նչ է Պարզութիւնն.

Պ. Պարզութիւնն անջան, բնական եւ անզարդ ձեւ մի է բացատրելու, յորում արուեստը բնաւ չերեւիր։ Այսպէս են Սըկրէի (մատենագիր գաղիացի) հետեւեալ տողերն ուր անպաճոյճ պարզութեամբ մի նկարագրուած է չինական անդորրութիւնն.

Երանի նմա որ կը սնանի իւր ոչխարաց լոկ կաթամբ,
Եւ կը տեսնէ զի իւր հանդերձք չինուին նոցա նուրբ գեղմամբ.
Որ Սէն գետէն եւ կամ Մառնէն զատ ուրիշ ծով չը ճանչեր
Եւ կը կարծէ թէ յանգին բնաւք անդ ուր յանգին իւր արտեր։

2դ. Հ. Ոճոյ պարզութիւնը կը մերժէ՞ իմաստից մեծութիւնն.

Պ. Ոճոյ պարզութիւնը չմերժեր իմաստից մեծութիւնն, և անխնամ երեւութի մի տակ կարէ

պարունակել ստուգապէս ցանկալի գեղեցկութիւններ։ Յաճախ հասարակ բացատրութիւնն աւելի կորովի է և վսեմ իւր պարզութեան մէջ։

Այսպէս են Պօսիւէի հետեւեալ խօսքերն.

Որպիսի սոսկում մի բռնեց զամէնքն, երբ, որոտաձայն թնդիւնի նման, այս անակնկալ գոյժն հնչեց. Տիկինը կը մեռնի, տիկինը մեռաւ։

Ահա պարզ բացատրութիւն մի որ եթէ աւելի զարդարուն կամ արուեստով ըսուէր, անազդեցիկ պիտի լինէր։

3.ᵍ Հ. Յորում կը կայանայ Սեղմութիւնն.

Պ. Սեղմութիւնը կը կայանայ պարբերութիւնն անձկացունելու և միայն անհրաժեշտ և կարեւոր բառերու վերածելու մէջ, ի բաց մերժելով որ և է զարդարանք կամ ընդլայնում, առանց սակայն ստացուածն իւր յստակութիւնը ու վայելչութիւնը կորուսանելու։ Այսպէս է Պուալոյի սա տողն.

Վայրկեանն՝ յորում կը խօսիմ, արդէն հեռի է ինէն։

Գոռնէյլի Պողիկտոսին մէջ սա երկու պատասխաններն

ՊԱՒԼԻՆԷ

Ո՞ւր կը տանիք զայն

ՓԵԼԻՔՍ

Ի մահ.

ՊՈՂԻԿՏՈՍ

Ի փառս.

ոճոյ սեղմութեան օրինակներ են։

4ᵍ. Հ. Ի՞նչ բանէ պարտի զգուշանալ ոճոյ սեղմութեան մէջ.

Գ. Սեղմ ոճով գրել ուզողն պարտի զգուշանալ խրթնութենէ, խստութենէ և ցամաքութենէ որ սովորական խութերն են այն յատկութեան։ Հնոց մէջ Տակիտոս (լատին պատմագիր) եւ նորոց մէջ Մոնթէսքիէօ (մատենագիր գաղիացի) ոճոյ սեղմութեան ընտիր օրինակներ են։

5ᵍ. Հ. Սեղմ եւ Լակոնական ոճերու մէջտեղ տարբերութիւն մի կա՞յ։

Գ. Այո, պէտք չէ շփոթել սեղմ ոճը լակոնականին հետ. առաջինը միայն կարեւոր եղած բառերը կը գործածէ, իսկ երկրորդը բացարձակապէս քիչ բառ։

Տիւպէյլուայի սա գեղեցիկ տողն,

*Որչափ պանդուխտ տեսայ՝ այնչափ աւելի սիրեցի հայրենիքս.*

Կը պարունակէ ճշմարիտ զգացում մի որ զարմանալի սեղմութեամբ մի բացատրուած է։ Ուրիշ մատենագիր մի՝ ուզելով գերազանցել այն գաղափարն, ըսած է՝

*Հայրենիքդ սիրելու համար՝ մեկնէ անտի.*

Եւ ուղիղ գաղափար մի, սխալ գաղափարի փոխած է, զայն լակոնականութեամբ բացատրել ուզելուն համար. քանզի ճշմարիտ չէ որ բացարձակապէս հարկ լինի մեկնիլ իւր հայրենիքէն զայն սիրելու համար։

6ᵍ. Հ. Լակոնական ոճ ինչո՞ւ կ՚ըսուի.

Գ. Լակոնական ոճը Լակեդեմոնացւոց յատուկ խօսելու կամ գրելու եղանակն էր։ Լակեդեմոնացիք երբեմն կը շատանային միավանկ բառ մի

և ելթ արտասանել, պատասխանելու համար երկայն ճառի մը։

—Փիլիպպոս, Մակեդոնացւոց արքայն, պատգամաւոր ղրկեց նոցա յորդորելու համար զանոնք որ անձնատուր լինին, ըսելով որ եթէ պատերազմաւ առնէ քաղաքին, զամենայն ինչ ի հուր եւ ի սուր պիտի մաշէ. նոքա պատասխանեցին՝ նմա, «Եթէ։» այսինքն եթէ կարենայ առնել։

— Լակեդեմոնացի մայր մի որդին պատերազմի ղրկելով՝ ձեռքը կուտայ վահանն ու կ'ըսէ. «կամ տակը, կամ վերան.» այսինքն կամ յաղթելով ինք բերէ վահանն, կամ յաղթուած մեռնելով զինքը վերան դնեն ու բերեն։

Տպ. Հ. Ի՞նչ է Միամտութիւնն.

Պ. Միամտութիւնը բնականին կատարելութիւնն է. յատկութիւն մի է սա որ կը կայանայ այնպիսի բնական ասացուածներ ըսելու մէջ, ուր մտքի կամ սրտի ծայրայեղ պարզութիւն մի կը յայտնեն, և աշխատութեան կամ խորհրդածութեան արդիւնք չեն թուիր։

Հետեւեալ օրինակներն սիրուն միամտութեամբ կը վերջանան.

ՀԱՆՐԻ Դ. ԵՒ ՆԱՒԱՎԱՐՆ

Հանրի չորրորդ օր մի կ'անցնէր Լուառ գետէն նաւակաւ.
Նաւավարն էր այր կոշըմբուռն եւ յիսնամեայ հասակաւ
Ալեծաղիկ ունէր մազեր
Բայց քաջաթուխ մօրուաց թելեր։
Բարի իշխանն ընտանեբար
Ուզեց սորին գիտել պատճառ։

«Եհէ՛, Տէր իմ, դորա պատճառն է շատ բնական
Ըսաւ, առանց ամաչելու, մեր շինական.
Զի քսան ամօք են ծերագոյն
Քան ըզմօրուսս հերք իմ գլխոյն։»

## ՄԱՅՐՆ ՈՒ ՄԱՆՈՒԿՆ

*Մայրն*

Երկինք նայէ, տըղա՛ս, եղբայրդ հոն տարուեցաւ
Հրեշտակներէն որք զայն յինէն խըլեցին,
Զի իւր մօրկան չը պատճառեց նա վիշտ բընաւ։

*Մանուկն*

Մայրի՛կ, որպէս զի հրեշտակը չուզէ իջնել
Երկիր, զիս քո բազուկներէն խըլելու,
Ասա, ինչպէս հնար է մայրիկն վշտացունել։

**Լէոն Մանեիէ**

## ԱՆՑԱՒՈՐՆ ԵՒ ՏԱՏՐԱԿՆ

Անց. «Զի՞ գործես ի տըխուր անտառիս,
Ո՛վ տատրակդ ողբերգու, ասա ցիս։
Տատր. Հեծեմ աստ, զի աւաղ կորուսի
Զվարուժանն իմ միակ ցանկալի։
Անց. Զերկինչի՞ս զի հաւորսն եւ զքեզ
Թակարդեալ ըսպանցէ նոյնպէս։
Տատր. Եթէ ոչ նա դահիճ արիւնառուշտ,
Սախրայն ցաւք իմ լիցին ինձ անշուշտ։»

**Պ. դը Ժուրֆրուա** (Թարգ. Հ. Եղ. Հիւրմիւզ)

Ծդ. Հ. Միամտութիւնը կը մերժէ՞ իմաստից կորովութիւնն.

Պ. Միամտութիւնը չմերժեր իմաստից կորովութիւնն. և շատ անգամ միամիտ խօսքերու տակ չանթահարող զօրութիւն մի կը ծածկուի. բայց ասոր՝ երբեմն նաեւ չարամտութեան ճար-

տար ու սիրուն եղանակն է այն։ Գոթողիա, Ռասինի համանուն ողբերգութեան մէջ կ՚ըսէ Յովասին (Հանդ. Բ. 7).

Կամ է ինձ ունել ըզքեզ որպէ՞ս որդի սեան եւ սերտ։

ՅՈՎԱՍ

Զի՞ս որպէս որդի քո։

ԳՈԹՈՂԻԱ

Վա՛չ, օ՛ն եւ օ՛ն... դու լո՞ւռ կաս։

ՅՈՎԱՍ

Եւ զո՞ր հայր թողից փոխան...

ԳՈԹՈՂԻԱ

Օ՛ն, մի զօղիր։

ՅՈՎԱՍ

Ընդ հում մօր։

Կը տեսնուի որ զայրոյթն, վայրկ մի յապաղելէ յետոյ կը պայթի յանկարծ միամիտ, այլ բուռն ու ազդու, խօսքով մի։

Հետեւեալն չանթիչ միամտութեամբ մի կ՚աւարտի։

## ՊԱՊՆ

Պապը սաստիկ ծերացեր էր։ Նորա աչքերը լաւ չէին տեսներ, ականջները ծանրացեր էին, ձեռներն ու ոտները ծերութենէ կը դողդողային, այնպէս որ դդալը մինչ կը տանէր ի բերան կերակուրը կը թափթըփէր։ Նորա որդին ու հարսն այս բանէն չէին ախորժեր։ Ծերունին իւրեանց հետ միեւնոյն սեղանը չէին նստեցուներ, այլ առանձին անկիւն մի, հացն առջեւը կը դնէին եւ հողէ ամանով մի կը կերակրէին խեղճն։ Անգամ մի, մինչ կը ճաշէր, ծերունւոյն ձեռներն դողդղացին. ամանը վար ինկաւ եւ կոտրեցաւ։ Հարսն ու որդին սաստիկ բարկացան, եւ այնուհետեւ փայտէ ամանով կերակուր կուտային նմա։

Ծերունին թոռն մի ունէր։ Օր մի սա, գետինը նստած, փայտի կտորուանքով բան մի կը շինէր։

Մայրն հարցուց նմա. ի՞նչ կ՚ընես զաւակս.

— Փայտէ աման կը շինեմ, որ երբ դու եւ հայրիկս ծերանաք՝ այնու կերակուր կերցունեմ ձեզ։

Միամտութիւնը Լաֆոնթէնի առակաց գլխաւոր յատկութիւնն է։



# ՊԱՐԶ ՈՃՈՅ ՕՐԻՆԱԿՆԵՐ

## 1. ԱՍՏՈՒԱԾ

Մայրի՛կ, նայէ՛ ինչպէս սիրուն
 Են այս ծաղիկներ,
Կարմիր, ճերմակ եւ ոսկեգոյն,
 Դաշտն է լեփ լեցուն։
Ի՞նչ ալ անոյշ հոտ ունին, մա՛յր.
 Սիրեմ ես զանոնք.
Մին է զմրուխտ, միւսը գոհար,
 Գոյն ունին վառ վառ։
Մա՛յր, ո՞վ արդեօք զանոնք ըրաւ.
 Ո՞վ ցանեց այսպէս։
— Աստուա՛ծ, տղաս, Նա՛ որ տըւաւ
 Մեզ բարիք անթաւ։

Մա՛յրիկ, նայէ՛, ի՛նչպէս աղւոր
 Են այս թռչուններ,
Ունին փափուկ թեւ գունաւոր,
 Հանդերձ փառաւո՛ր։
Ճիւղէ ի ճիւղ կը թռչըտին,
 Անտառն է բուներ
Իրենց ճիվճիվ. ու երբ կամին՝
 Կը թեւեն յերկին։

Մա՛յր, ո՞վ արդեօք զանոնք ըրաւ,
Այսպէս գեղեցիկ։
— Աստուա՛ծ, տըղաս, Նա՛ որ տըւաւ
Մեզ բարիք անբաւ։

Մա՛յրիկ, նայէ՛, ինչպէս պայծառ
Են այդ աստղիկներ.
Կը փայլփըլին յերկնից կամար,
Ու են անհամար։
Մին քան ըզմիւսն է լուսազեղ,
Եւ մըթութեան մէջ
Իբրեւ մէյմէկ վառուն կանթեղ.
Քանի՜ են չքեղ։
Մա՛յր, ո՞վ արդեօք զանոնք ըրաւ.
Ո՞վ վառեց այդպէս։
— Աստուա՛ծ, տըղաս, Նա որ տըւաւ
Մեզ բարիք անբաւ։

**Ռ. Ց. Պէրպէրեան**

## Զ. ԳԻՇԵՐ

Արեւը մայրը մտաւ. գիշերուան ցօղը գետնին երեսը կը թրջէ. օդը՝ որ ցորեկը չափէ դուրս տաք կ'ընէր՝ հիմա կը պաղըշտըկի։

Ծաղիկներն իրենց խատուտիկ թերթերը կը գոցեն, գլուխնին կը ծռեն իրենց կոթին վրայ կը կախուին։

Վառեակներն իրենց մօրը թեւին տակ կը քնանան։

Թռչուններն երգերնին դադրեցուցեր են, բոյներնին ծառերուն վրայ դրած՝ գլուխնին ալ թեւիկներուն տակը առած կը հանգչին։

Ձայն մը չելլար այն փեթակէն՝ ուր որ մեղուները խժիր կը մտնէին ու կ'ելլէին. իրենք ալ թողուցեր են իրենց աշխատութիւնը, ու ամենն ալ իրեն ընկերին քով մոմէ սենեակներու մէջ կը քնանայ։

Ոչխարները իրենց կակուղ բուրդին վրայ պառկեր են. ալ չի լսուիր բլուրներու վրայ իրենց մայելը։

Տղաքն ալ մոռցեր են իրենց խաղը. ամենեւին ոտքի ձայն չկայ. ճամբաները մարդ չկայ. դարբինն ալ չզարներ իր կռանը սալին վրայ։

Հիւսան սղոցը ճռլթոց մ'ալ չի հաներ. ամեն արարած կը քնանան, մարդիկ ալ, անբանք ալ։

Երկինք երկիր մութ պատեր է. գիշեր...։

Ո՞վ է որ աս ամեն քնացողներուն վրայ հոգ կը տանի, ու անոնց չկրցած ատենը զիրենք կը պաշտպանէ։

Կայ մէկ աչք մը որ քնանալ չունի, որ առանց արեւու լուսոյ կը տեսնէ. ճամբու մէջ իրեն լուսին պէտք չէ, տան մէջ կանթեղի կարօտ չէ. երկնքի վրայ աստղ չի փնտռեր։ Աս աչքը ամեն տեղ կը տեսնէ, ամեն մարդ կը հոգայ. աս է Աստուծոյ աչքը, որուն ձեռքը միշտ մեր վրայ է։

Աստուած տուեր է քունը որ յոգնութիւն առնունք. գիշերը մեզի տուեր է՝ որ հանգչինք

Իրիկունը մայրը մատը բերնին դրած՝ կամաց կամաց քալելով չորս դին կ'երթայ ամեն շշնկոց դադրեցընելու, որ չըլլայ թէ իր տղայն անուշ քունէն արթննայ. անկողնին վարագոյրը կը քաշէ, ճրագն ալ կը վերցընէ որ աչքին լոյս չզարնէ։

Աստուած ալ ասանկ մեզի համար սեւ վարագոյր մը կը քաշէ. ամեն բան կը խաղաղցընէ, որ իր մեծ ընտանիքը հանդարտ քուն ըլլան։

Հանգիստ քուն եղիք յոգնած աշխատողներ, պզտիկ տղայք, դուք ալ սըզըզացող միջատներ. Աստուած ձեր վրայ արթուն կեցեր է. իր աչքը միշտ բաց է՝ զձեզ պաշտպանելու համար։ Երբոր մութը քաշուի ու արեւուն ճառագայթներն աչուընուդ զարնեն՝ շնորհակալ եղիք Աստուծոյ որ գիշերը զձեզ պահպանեց։

Ծաղիկները բուրեն Աստուծոյ իրենց անուշ հոտը, Թռչունները իրենց ընկերը չկանչած՝ անոր շնորհակալութիւն երգեն։ Աստուծոյ անունը սրտին մէջ դրած՝ պստիկ մարդն ալ, ու ելած ատենը նորէն սկսի փառք տալ։

Հ. Ղ. Ալիշան (Ցոյց Աստուծոյ)

## 3. ԱՐՄԻՆԷ

Հինգ տարեկան
Մի աղջըկան
Մեքենայ մի կարեց տարաւ
Ալ թեւն (ինչ աղէտ սրտագրաւ)
— Մանկիկն այնքան հեծեց լացաւ
Թափեց այնքան արցունք եւ ցաւ
Որ հայրաբար
Աստուածն արդար
Գթութեան շող մ'ուղղեց վրան .
— Ամենաբոյժ սպեղանի
Որ փոյթ գոցեց վէրքին բերան
Եւ միաթեւ այլ կենդանի
Հատոյց իւր մօր
Մանկիկն անզօր։

— Անցան օրեր, եւ Արմինէ
(Արմինէ էր անունն, ըսի՞,)
Ալ զերծ վէրքէ, դառնութենէ
Ամէն առտու կ'երթար դասի
Եւ անդադար
Գիրք կը կարդար։

Եւ իւր պարտուց խիստ ուշադիր
Ձախոմն այնքան լաւ գըրէր գիր
Որ վարժատան յարկին ներքեւ

Ինքն առնելով նիշ ու պարգեւ՝
    Միւս աղջկանց
    Առթէր նախանձ։
— Յանկարծ մի օր մեծ եւ բարի
Կին մ՝ (ամուսին թագաւորի)
Գիւղին մէջէն անցած ատեն
Կանգ առաւ եւ գիւղապետէն
    Խնդրեց իսկոյն
    Որ փոքրագոյն՝
Այլ խելացի յառաջադէմ
Մի աշակերտ բերեն իւր դէմ.
— Մարդ ղրկեցին եւ Արմինէն
Առին բերին վարժատունէն։
    Աղջիկն անվախ
    Կազմ եւ ուրախ
Այլ թեւազուրկ, երբ երեւցաւ
Ազնիւ տիկնոջ աչքը լեցաւ.
Եւ գըգուանօք ու քաղցրաձայն
Իւր գրկաց մէջ առնելով զայն
    Տըւաւ պաչիկ
    Եւ «Փոքր աղջիկ»
Ըսաւ «Գոհ եմ որ դու այդպէս
«Աշխատասէր եւ խոհեմ ես.
«Լաւ կը գըրես, լաւ կը կարդաս
«Եւ կ'ունիս ինչ որ տան քեզ դաս.
    «Արդ, փոխարէն
    «Առատօրէն
«Քեզ վարձատրել կ'ուզեմ այսօր,
«Ըսէ՛, ինչ տամ, գրքո՞յկ մ'աղուոր
«Հագո՞ւստ, պատկե՞ր թէ խաղալիք
«Կ'ուզե՞ս շաքար կամ ուտելիք.
    «Կուզե՞ս օղեր,
    «Մի՛ վախեր,

«Ըսէ չիտակ». Իսկ Արմինէ,
Հոգին լցուած գնծութենէ
Բացաւ շրթունքն եւ խնդագին
Գոչեց. — «Թէ՛ւ մի տուէք, տիկին...:

**Աղեք. Գ. Փանոսեան**

## Ա. ԵՐԿՈՒ ԴՐԱՑԻՔ

*Երկու մարդիկ դրացի էին, եւ իւրաքանչիւրն ունէր կին մի եւ բազմաթիւ մանր տղայք, եւ զանոնք սնուցանելու համար ոչ այլ ինչ բայց միայն իւր աշխատութիւնն։*

*Եւ այս երկու՝ մարդոցմէ մին անհանգիստ կը լինէր ու կը մտատանջուէր ըսելով. «Եթէ մեռնիմ ես կամ հիւանդանամ, ի՞նչ պիտի լինի իմ կնոջս ու որդւոցս։»*

*Եւ այս մտածութիւնն յարաժամ իրեն հետ էր, եւ կը կրծէր իւր սիրտն ինչպէս որդ մի կը կրծէ պտուղն յորում ծածկուած է։*

*Արդ, թէպէտ եւ նոյն մտածութիւնն ունեցեր էր նաեւ միւս հայրն, բայց չէր կեցած անոր վերայ. «Վասն զի, կ'ըսէր, Աստուած՝ որ իւր արարածները կը ճանչէ եւ կը հսկէ նոցա վերայ, պիտի հսկէ նաեւ իմ, կնոջս եւ զաւակացս վերայ։»*

*Եւ այս վերջինը խաղաղ ու հանդարտ կ'ապրէր, մինչդեռ առաջինը գոնէ վայրկեան մի անդորր ու ներքին խնդութիւն մի վայելած չունէր։*

*Օր մի, մինչ ի դաշտին կ'աշխատէր, թաղծադէմ ու վհատ իւր մտատանջութեան մէջ, տեսաւ մի քանի թռչնոց մացառի մի մէջ մտնելն, անտի դուրս ելնելն ու ընդ հուպ հոն վերադառնալն։*

*Եւ մօտ գնալով, տեսաւ իրարու քով դրուած երկու՝ բոյներ, եւ իւրաքանչիւրին մէջ ոչ սակաւ ձագեր նորածին եւ դեռ անփետուր։*

Եւ երբ իր աշխատութեան վերադարձաւ, պահ ընդ պահ կը վերցունէր աչերն, եւ կը դիտէր թռչուններն՝ որք կ'երթային ու կուգային բուստ բերելով իւրեանց ձագուց։

Արդ, ի պահուն՝ յորում մայրերէն մին իր աւարաւն կը դառնայր յիւր բոյն, անդր մի վայն բռնելով կը յափշտակէ, եւ խեղճ մայրն, ի զուր նորա մագիլներէն զերծանելու ճիգեր ընելով, սուր ու ցաւագին ճիչեր կ'արձակէր։

Ցայս տեսիլ մարդն՝ որ կ'աշխատէր, իւր հոգին առաջուընէ աւելի խռովեալ զգաց. «վասն զի կը խորհէր, մորը մահը զաւակաց մահն է։ Իմքս ալ բաց յինէ ոչ զոք ունին։

Ի՞նչ պիտի լինի նոցա՝ երբ չլինիմ ես այլ եւս։»

Եւ օրն ի բուն թաղծալից ու տխուր եղաւ, եւ գիշերը չքնացաւ բնաւ։

Հետեւեալ օրն, դաշտերը դառնելով, ըսաւ իւրովի. «Կ'ուզեմ սա հեք մոր ձագերը տեսնել, շատերն անտարակոյս արդէն կորսուած են։» Եւ դէպ ի մացառն ուղղուեցաւ։

Եւ տեսաւ որ ձագերը ողջ առողջ էին եւ ոչ մին վնասուած կ'երեւէր։

Եւ, զարմանալով ընդ այս, ի թագստի մնաց այս սքանչելեաց պատճառն իմանալու համար։

Եւ, խուն ինչ յետոյ, թեթեւ ճիչ մի լսեց, եւ տեսաւ երկրորդ մայրն որ փութանակի կը բերէր ժողոված սնունդն՝ զոր անխտրաբար բաժնեց ամէն ձագերուն, եւ ամէնքն ալ իրենց բաժինն ունեցան, եւ որբերն լքեալ չմնացին իւրեանց չուառութեան մէջ։

Եւ այն հայրն՝ որ տարակուսած էր նախախնամութեան վերայ, երեկոյին պատմեց միւս հօր զոր ինչ տեսած էր։

Եւ վերջինն ըսաւ, «Ի՞նչ հարկ է անհանգիստ լինել։ Երբեք Աստուած չլքաներ իրեններն. իւր սէրը գաղտնիքներ ունի՝ որք անծանօթ են մեզ։ Հաւատա՛նք, յուսա՛նք, սիրե՛նք, եւ խաղաղութեամբ յառաջ վարե՛նք մեր ճանապարհն։

«Եթէ հասնի ինձ յառաջ քան զքեզ մեռանել, դու իմ զաւակացս հայր պիտի լինիս. եթէ դու նախ քան զիս մեռնիս, ես քոյոցդ հայր պիտի լինիմ։

«Եւ եթէ երկուքս ալ մեռնինք, չեւ հասած նոքա իւրեանց պիտոյքն ինքնին հայթայթելու հասակն, իւրեանց պիտի ունենան Հայր որ յերկինս է։»

Լամընէ. (Բանք հաւատացելոյ ուրուք)

## 5. ԽՈՐՀՈՒՐԴ ՄԿԱՆՑ

Տան մը մէջ Կատու մը կար
Անանկ կատղա՜ծ, անանկ չար,
Որ խեղճ Մըկանց անդադար
Անտանելի ջարդ կուտար։
Տակէն ելլողը Կատուին ճանկը կ'իյնար,
Տակէն չելլեր՝ քաղցէն հոգին հոն կուտար։
Տեսան Մըկներն որ բաներնին խիստ գէշ է,
«Աս Կատու չէ, ըսին, մեզի պատիժ է.
Ասանկ չըլլար, եկէք խորհուրդ մը ընենք,
Ասոր մէկ ճարը տեսնենք.
Ժողվինք նայինք ո՛ւր պիտ՝ երթայ վերջերնիս,
Ընկերներնիս մէյմը խորհինք մէջերնիս»։
Ատեն դըրին, խորունկ ծակ մը ժողվեցան,
Տըրտում տըխուր հոն խորհըրդի նըստեցան,
«Ասանկ սասանկ է բաներնիս, բարեկամք,
Դուք ի՞նչ կ'ըսէք, ասոր ի՞նչ ճար կը գըտնաք»։
Անդի՜էն ծեր խոհեմ Մուկ մը ձայն հանեց.
«Ես կ'ըսեմ թէ, ըսաւ, քիչ մը մըտածեց,

Ես կ՚ըսեմ թէ ատ բանին մէկ ճար մը կայ,
Ան որ ընենք՝ ալ մեզ կատուէն վախ չը կայ.
Ժամ մը առաջ պէտք է որ մենք սիրտ ընենք,
Անզգամին վըզէն բոժոժ մը կախենք.
Ան բոժոժին ձայնէն հարկաւ կ՚իմանանք
Անոր գալն, ու մէկէն ծակ մը կը մտնանք»:
Բոլոր ժողովքն հաւնեցաւ այս խորհրդին,
Մեծ ու պզտիկ արմըննալով ծափ զարկին:
Մընաց որ մէկն երթայ բոժոժը կախէ,
Ի՞նչ դըժար բան. ո՞ր մուկն ատոր սիրտ ընէ:
Մէկն ըսաւ թէ ափսոս որ ես հիւանդ եմ,
Մէկալը թէ ես ալ այնչափ ճարպիկ չեմ,
Մէկը՝ ծեր եմ, մէկը՝ տըղոց ես տէր եմ.
Մէկն ալ թէ ես սիրով ատ բանը կ՚ընեմ,
Մէկը բըռնէ թող կատուն,
Բոժոժը ես կը կա՛խեմ:
Մըկներն ատ որ լըսեցին,
Լաւ մը վըրան խընտացին,
Իրենք ալ խաղք խայտառակ՝
Փախան ամէն մէկն իր ծակ:

Ասանկ ժողովներ
Ո՞րչափ ես տեսեր,
Որ մեծ խորհուրդներ
Պարապ են ելեր:
Ինչո՞ւ ըսես նէ՝
Լաւ մըտիկ ըրէ.
Նախ շատ տըկարներ
Իրենց ուժէն վեր
Խորհուրդներ կ՚ընեն.
Ի՞նչպէս կատարեն:
Երկրորդ, շա՛տը կայ
Որ խորհուրդ կուտայ,

Գործելու որ գայ
Սուտ հիւանդ կ'ըլլայ։
Երրորդ, կան ոմանք՝
Որ ինչ աշխատանք
Դրնես գլխացնին՝
Կ'առնեն վրանին.
Բայց արդեօք ինչպէս,—
Նտքի մըկան պէս։

**Լաֆոնթէն. ( Բազմավէպ)**

## 6. ԱՍՏՈՒԱԾ ԱՄԷՆ ՏԵՂ Է

Ըսէ ինծի, տղաս, ուսկի՞ց կու գաս, նայիմ ի՞նչ տեսար։

— Մարմանդին վրայ կը պտըտէի. ոչխարները չորս դիս պարարտ խոտերը կ'ուտէին, ու զով շուքի տակ կը պառկէին։ Ցորենը՝ հերկած արտերու մէջ բուսեր էր. խաշխաշն ու հարսնուկն անոր մէջ խառնուեր էին. մարմանդները գեղեցկութեամբ զարդարուած էին։

— Ուրիշ բան չտեսա՞ր, տղաս, ուրիշ բան ալ չդիտեցի՞ր. վասն զի ատոնցմէ վեր բաներ ալ կան. Աստուած ալ դաշտին մէջն էր, չտեսա՞ր զանիկա։

— Խիտ խիտ անտառներու մէջ ժուռ եկայ. հովը ծառերուն մէջէն կը շնչէր. ժայռերուն գլխէն մէկ ջրվէժ մը կ'իջնէր անուշիկ խոխոջելով. սամոյրը՝ ծառէ ծառ կը ցատքըտէր կ'երթար. Թռչուններն մէկ բերան անուշ եղանակ մը կ'երգէին։

— Թէ որ միայն ասոնք է ըսածդ՝ դարձի՛ր նորէն, տղաս, վասն զի ատոնցմէ մեծ բան կայ լսելու. Աստուած այն հովին, այն ջրին ձայնին մէջն էր, իր ձայնը չլսեցի՞ր։

— Տեսայ որ ծառերուն ետեւէն լուսինն արծըթէ

կանթեղի մը պէս կ՚ելլէր. աստղերն մէկիկ մէկիկ ելան. մէկ մ՚ալ յանկարծ սեւ սեւ ամպեր երեւցան, դէպ ՚ի հարաւ սկսան երթալ. փայլակն երկինքը կը լուսաւորէր, կայծակը հեռուէն որոտալով կը զարնէր. ես լսեցի այն սարսափելի ձայնը, վախէս սիրտս փրթաւ։

— Միայն կայծակէ՞ն վախցար. փայլակէն աւելի վախնալու բան չունէի՞ր. եթէ անանկ է՝ նորէն դարձիր տղաս, վասն զի ա՛լ մեծ բաներ կան. Աստուած այն մրրկին մէջն էր, ի՞նչպէս չիմացար։ Աստուած ամեն տեղ է, ամեն մեր լսած ձայնին մէջ, ամեն տեսածնուս մէջ. առանց անոր բան չկայ. պէտք է որ մեր մտքին մէջն ալ ըլլայ միշտ։

Հ. Գ. Ալիշան (Ցոյցք Աստուծոյ)

## Ծ. ՁՄԵՌՆ ԵՒ ԳՈՒԹ

Աշունն ալ կ՚անցնի,
Կ՚անցնին վերջին աղւոր օրեր,
Փչէ ցուրտ քամի,
Եւ կը գուժէ թ՚եկաւ ձմեռ։
Ալ չիք մեզ վազել
Լերանց վերայ, մէջ դաշտերուն,
Ծաղիկներ քաղել,
Դիմել զհետ թիթեռներուն։
Ի՛նչպէս էր աղւոր
Սալորենին մեր պարտէզին,
Մնացեր է չոր,
Տերեւքն ողբան իրեն չորս դին։
Ա՛խ ուր են գառներ
Որ բլրոյն վրայ ճարակէին,
Իրենց զանգակներ
Ի՞նչպէս կը հնչէին։

Հովիւն, հօտին քով
Ընկողմանած ի զառ ի վայր,
Գեղջուկ սրինգով
Կ'երգէր զուարթ, զառն ու խոյատար։
Ցուրտ է, փարախէն
Չ'ելնե՛ն ալ դուրս, ինչպէս մեք ալ
Հեռու մեր տընէն
Մարգերու մէջ չերթանք խաղալ։
Բայց մեզ ի՞նչ փոյթ է,
Տաքուկ է խուց, երկայն՝ գիշեր։
Հանին մեզ պատմէ՝
Շուրջ ջերմոցին՝ սիրուն վէպեր։
Երբոր ծածկէ ձիւն
Անկողնոյ պէս դաշտն ու բլուր,
Ի՛նչ ուրախութիւն
Դիտել խուցէն ուր փայլի հուր։
Բայց արդեօք ընդէ՞ր
Ցանկարծ մշտով սիրտըս լցուի.
— Ո՛հ. խեղճ աղքատներ
Կան ոյց ամէն բան կը պակսի։
Ձիւն բուք օրերուն
Զունին կըրակ, հաց ու չունին.
Դողան օրն ի բուն
Ու կ'արտասուեն, լըսող չունին։
Կան տըղայք ինձ պէս
Որոնք մերկ են հանդերձ չունին.
Ձմրան մէջ ի՛նչպէս
Խեղճ արարածք, ա՛հ կը մըսին։
Ո՛չ, իմ լաթերէս
Պիտ' տամ անոնց, անոնց պիտ' տամ
Իմ կերակուրէս,
Անո՛նց՝ երբ հայրս ինձ տայ դըրամ։

Կաղանդն է մօտիկ,
Պիտի առնում շատ պարգեւներ,
Եւ մեր աղքատիկ
Դրացեաց առատ տանիմ նըւէր։
Զիս պիտի օրհնեն,
Ու իրենց վիշտ պիտի դադրի,
Աստուած երկինքէն
Տեսնէ ու գոհ պիտի լինի։

**Ռ. Ց. Պէրպէրեան**

## Ց. ԱՍՏՈՒԱԾ ՄԵՐ ՊԱՇՏՊԱՆՆ Է

Հովիւն իր ոչխարները կը հոգայ, լեցուն խոտով դաշտեր կը տանի արածելու, յստակ ջուրերու քով կը պտըտցնէ. թէ որ նոր ծնած գառնուկներն յոգնին՝ կռնակը կամ գիրկը կ'առնէ, եթէ ճամբան կորսնցը-նեն՝ իրեն կը կանչէ։

Աստուած ալ հովիւներու հովիւ է, աշխարհքիս տէրն է. ինքն է հոգ տանողը ամեն բանի վրայ, երկիրս իրեն փառքն է, մարդիկ իր հօտն են, բոյսերը իրեն արօտը։

Մայրը կը սիրէ իրեն զաւակը, ծնկանը վրայ կը մեծցընէ, մարմինը կերակուրով կը դարմանէ, խելքը բան սորվեցընելով կը բանայ. թէ որ հիւանդնայ՝ ա՛լ աւելի գթով կը նայի. քնանալու ատեն քովը արթուն կը կենայ. Երբ պիտի ըլլայ որ տղաս մեծնայ, կ'ըսէ. ու իրեն առաքինութեան ճամբան կը սորվեցընէ։

Աստուած է ամեն մայրերու ուժ տուող, զիրենք մխիթարող ու վրանին հոգ տանող։

Աստուած ամեն բանի պաշտպան է, վասն զի ամեն բան ինքն է ըրեր։ Թագաւորը իրեն ժողովուրդը կը կառավարէ, գլուխը ոսկի թագ դրած, թագաւորական գաւազանը ձեռքը, փառաւոր աթոռի մը վրայ

նստած կը հրամմէ. ամենքը անոր կը ծռին պատիւ կու տան. ինքն ալ ամեն աղէկ գործք ընողները կը պաշտպանէ, չարերը կը պատժէ։

Աստուած է թագաւոր թագաւորաց. իր թագն է արեւը, իր աթոռը՝ աստղերու վրայ դրած է. ինքը կը հրամմէ մեզի որ ապրինք՝ ու կ՚ապրինք, հրաման կու տայ որ մեռնինք՝ ու կը մեռնինք։ Իր իշխանութիւնը ամեն աշխարհքի վրայ կը տիրէ. իր երեսին լոյսը ամեն արարածոց վրայ կը տարածի։

Աստուած մեր հովիւն է, պէտք է որ անոր ետեւէն երթանք. մեր հայրն է, պէտք է որ զինքը սիրենք. մեր թագաւորն է, պէտք է որ իրեն հնազանդինք։

**Հ. Գ. Ալիշան (Ցոյցք Աստուծոյ)**

## Գ. ԱՐԱՒՕՏ

Ահա մութը կը փարատի
Կը կարմրի հորիզոն.
Արշալոյսն է որ կը ժպտի
Վարդ ցանելով հոս ու հոն։

Քիչ քիչ մարի բոց աստեղաց,
Յոգնած բբեր որ գոցուին.
Գիշերն ի բուն իւրեանց վառ աչ
Հսկեց վերայ մեր երկրին։
Պահ մի յառաջ լուռ էր ամէն,
Բոլոր էակք հանգչէին.
Շարժում յառնէ, ձայներ ելնեն,
Եւ արարածք կը զարթչին.
Ո՛հ, այս ի՞նչ ռումբ է բոցավառ
Զոր նետէ ձեռք մի անտես.
Նետք հրեղէն, կայծեր հազար
Սփռին երկնից անդ յերկես։

Արեգակն է որ կը ծագի.
Ի՛նչ պայծառ է. դեռ կրնամ
Նայիլ իրեն, կը խտտըղի
Աչքըս ի լոյս ցերեկուան։
Իւր ջերմութիւն նոր կեանք բերէ.
Ծայտայ ամէն կենդանի.
Եռանդագին հաւ գեղգեղէ,
Եւ ուլ կայտռէ ի դաշտի.
Եղան մարդիկ — Գիրքըս կ'ըսէր —
Որ արեւը պաշտեցին.
Բայց ես գիտեմ, ո՛վ իմ Տէր,
Որ նա գործն է քո ձեռին։
Ահա ամէն ինչ որ կ'ապրի
Կը մըխէ ժիր ձեռն ի գործ.
Մեղուն զաւար իւր սկըսի,
Ի բահ կըքի երկրագործ։
Սակայն անշուշտ ամէն էից
Առաջին ձայնն օրհներգ մ'է,
'Ի առաջին բոյր ծաղկանց վարդից
Առ քեզ ելնող մի խունկ է։
Ես այլ կուզեմ քեզ նըւիրել
Նախկին ձայնըս այս օրուան,
Ո՛վ մեծդ Աստուած, եւ խոնարհել
Ասպա ճակատս ի մատեան։

Ռ. Ց. Պէրպէրեան

## 10. ԱՍՏԵՂՔ

Արեւը լեռան ետեւը կ'անցնի, իր ճառագայթները կը կորսուին. գիշերը երկինքէն կ'իջնէ։

Ոչ խոտերուն գոյնը աչքիս կ'երեւի, ոչ ծաղիկներուն խատուտիկ փայլունութիւնը. տուն, ծառ, ոչխար ու հովիւ, ամենն ալ կը ծածկուին. գիշերուան

սեւ վարագոյրը զամենն ալ կը պահէ· աչքիս բան չերեւիր, ինչպէս թէ բան մ'ալ եղած չըլլար։

Խեղճ ողորմելի, բան մ'ալ չես տեսներ. վասն զի կանանչները, ծաղկըները, տուները, ծառերը, ոչխարները ու հովիւները քեզմէ ծածկուած կը կարծուին։ Աչուըներդ մէկ մը երկինք դարձուր, նայէ սա աստղերը որ մէկիկ մէկիկ կ'ելլեն երկընքին երեսը լուսաւորելու։

Լուսինն կ'ելլէ արծաթի պէս փայլփըլելով, լոյսը երկընքի կապոյտ դաշտերուն վրայ կը զարնէ։

Բազմաստեղք, արջն, հայկն, բեւեռային աստղն՝ որ նաւավարներուն առաջնորդն է, փայլ փայլ կը վառին գլուխներուս վրայ։

Իրիկուան վերջալոյսն ալ կ'երթայ. տուներու մէջ ճրագներն կը մարին. բայց երկընքին ջահերը վառած կեցեր են։ Ամեն աստղ իրեն տեղը կը փայլի։ Զանոնք համրելու ետեւէ մ'ըլլար, վասն զի ծովին եզերքին աւազին պէս անթիւ են։ Թէ որ հեռադիտակով նայիս՝ բիւրաւոր աստղ կը տեսնես, բայց անկէ աւելին չես տեսներ։

Հայկն իր փայլուն ճակատն կը ցուցընէ, շնիկն իր ճերմակ լուսաւոր դէմքը։

Աս ամեն աստղերն ալ Աստուծոյ հպատակներն են։ ինքն է որ արեւուն փառաւոր ճառագայթներ տուեր է զաշխարհս լուսաւորելու համար. մոլորակներուն տեղը ցուցեր է. մատովը կը ցուցընէ անոնց ճամբանու. թող չիտար որ անկէ անդին անցնին։

Թէ որ կարելի ըլլար նետի պէս սուր թռչելով անբաւութեան մէջ ճամբայ ընել, միլիոնաւոր տարիներէ վերջն ալ՝ ծայրը չէիր կրնար հասնիլ։

Երկընքի ամենէն խոր տեղն ալ նոր արեւ մը պիտի գտնէիր, նոր մոլորակներ՝ որ շրջաննին կ'ընեն։

Մէկ մը աչուընիդ վեր վերցուցէք, մահացու մարդիկ. Աստուած անոր համար արեւը ետ քաշեց՝ որ սա անթիւ կրակէ գունտերը տեսնէք։ Մութը երկիրս պատեց՝ որ դուք յաւիտենական օրերը յիշէք։

Երկրիս վրայ հազար ու մէկ տեսակ արարած կայ. ասանկ ալ ջրին ու օդուն մէջ անհամար կենդանիներ. ո՞վ կրնայ անոնց բնութիւնը բարքը պատմել. ո՞վ կրնայ անոնց շրջանը չափել, սահմաննին գիտնալ։

Այն ամեն աշխարհներն ալ Աստուծմէ կը կախուին ու անկէ չեն բաժնուիր, ինչպէս որ տղայ մը մօրմէն։

Աստուած է որ Հրատին բնակիչները կը պաղըշտըկցընէ, Երեւակը տաքցընելու համար եօթը կրակէ գունտ ալ քովը կը պըտըտցնէ։ Ամեն աստղ ալ զԱստուած կ'օրհնէ։

Հ. Ղ. Ալիշան (Ցոյցք Աստուծոյ)

## 11. ԿԱՂՆԻ ԵՒ ԵՂԷԳՆ

Մէկ օր մը կաղնին
Ըսաւ եղեգին.
Խեղճուկ եղէգ, ափսոս քեզ,
Ինչո՞ւ ատանկ տըկար ես.
Վըրադ թեթեւ թռչնիկ մըն ալ ունենաս,
Ծանըր բեռան տակ եմ կ'ըսես՝ կը տըքաս.
Բարակ հովիկ մը որ փըչէ յանտառի,
Մէկէն գըլուխըդ դէպ ի վար կը ծըռի։
Իսկ ես բարձրաբերձ Կովկասի նըման
Ճակատըս ամպերուն տըւած կը կենամ.
Ինծմով կ'արգիլուին նըշոյլք արեւու.
Չըկայ փոթորիկ մը ինձ ահարկու։
Քեզ համար ամէն հով մեծ է մըրրիկ,
Ինձ ամէն քամի անուշ զեփիւռիկ։
Գոնէ գայիր իմ շըքիս տակ բուսնէիր,

Այդ խեղճութիւնն ինչո՞ւ համար քաշէիր.
Բայց դուն շատ անգամ հովերուն բերան
Կ'երթաս կը բուսնիս միշտ երերական.
Խեղճ ես, ինչ ըսեմ, կը ցաւիմ վրադ,
Բնութիւնն է ըրեր ըզքեզ տարաբաղդ։ —
Շնորհակալ եմ բարի սրտիդ, ո՛վ պարոն,
Ըսաւ եղէգն իր պարծենկոտ դրացւոյն.
Բայց ինծի համար
Բնաւ մի հոգար.
Պէտք է դո՛ւ վախես
Հովէն՝ քան թէ ես.
Վասն զի ես միշտ կը ծռիմ, չեմ կոտրիր,
Դուն հովերուն մինչեւ հիմա դէմ դըրիր,
Բայց վերջը տեսնենք։ — Այս ըսաւ չըսաւ,
Անդիէն սաստիկ հով մըն էր փըրթաւ,
Ծռեցաւ եղէգն, ո՛հ չըրաւ կաղնին.
Մէյ մըն ալ փըչեց հովը սաստկագին,
Խլեց արմատէն, տապալեց գետին
Այն գոռոզ կաղնին
Որոյ գըլուխն ինչուան երկինք կը հասնէր
Եւ ոտուըներն ինչուան անդունդն էր ձըգեր։

Լաֆօնթէն (Մասեաց Աղաւնի)

## 12. ԲԱՐԵԳՈՐԾ ԱՂՋԻԿՆ

Ցուրտ ու սաստիկ էր ձմեռն։ Փոքրիկ Վարդուհին, միամօր դուստր բարերար ծնողաց, կը ժողվէր իւրեանց սեղանէն ինկած փշրանքներն եւ խնամով կը պահէր զանոնք. յետոյ կ'երթար օրն երկու անգամ, կը սփռէր այն փշրանքներն տանը բակին մէջ, եւ թռչունները կուգային եւ կ'ուտէին զանոնք։ Բայց Վարդուհւոյն ձեռքը ցուրտէն բոլորովին կը դողդըղար։

Իւր ծնողքն օր մի դիտեցին գաղտնի տեղէ մի, եւ նորա այս բարի գործը տեսնելով, հարցուցին. ինչո՞ւ այս բանը կ'ընես, Վարդուհի։

Վասն զի ամեն կողմ ձիւնով ու սառով ծածկուած է, պատասխանեց Վարդուհի. փոքրիկ թռչուններն այժմ բան մի չեն կրնար գտնել, եւ խեղճ են. ասոր համար անոնց ուտելիք կ'ուտամ, ինչպէս որ հարուստ մարդիկ ալ կ'օգնեն աղքատներուն եւ կը սնուցանեն զանոնք։

Բայց դու չես կարող բոլոր թռչունները սնուցանել, կրկնեց հայրն։

Վարդուհի պատասխանեց. Միթէ ամէն տղայք ալ ինձ պէս չե՞ն ըներ ամէն տեղ, ինչպէս նաեւ ամէն հարուստներն ալ չե՞ն հոգար աղքատներն։

Հայրը մօրը նայելով ըսաւ. ո՜վ երկնային պարզմտութիւն։

Քրիւմախէր

## 13. ԱՄԷՆ ԲԱՆ ԿԸ ՄԵՌՆԻ ԵՒ ԿԸ ՎԵՐԱԾՆԻ

### Ա.

Ուսկի՞ց կու գաս, մահու զաւակ. ինչէ՞ն է որ կուլաս ու տրտմեր ես։

— Տեսայ վարդը՝ որ իր կենաց առտուն՝ թերթերը արեւուն բացած գեղեցիկ գունովը կը փայլէր։ Մէկ քանի ժամ վերջը նորէն անցայ, տեսնեմ որ իր կոթին վրայ թոռմեր էր, աղուորութիւնը գացած, գոյնը նետած, հոտը փախած, թերթերը գետինը թափած. ոտքի տակ ընկած։

Դաշտին մէջ մեծ ու բարձր ծառ մը կար. ճիւղերն տերեւով ծածկած չորս դին ընդարձակ շուք մը կը ձգէին. վարի դին ամուր սիւն մը կը նմանէր, արմատներն՝ կեռ ճանկերու։ Քիչ ատենէն նորէն դար-

ձայ. մէկ մ՚ալ ի՞նչ տեսնեմ. արեւելեան հովն՝ չորցած ու դեղնած տերեւները՝ աս դիս անդին կը ձգէր. ճիւղերը փայտահարին կացինին բերանը ընկած էին. որդերը կոճղին մէջ կը վխտային, փայտը փտտած փոշիի պէս կը թափթըփէր։

Տեսայ միջատներ՝ որ արեւուն լուսոյն մէջ կը փայլփլային, ջրի եզերք կը թռչըտէին. թեւերնին ոսկիի ու ծիրանիի պէս պայծառ. մարմիննին զմրուխտի պէս կանաչ, շարժմունքնին շուտ, թիւերնին անհամար։ Իրիկունը դառնալու ատեն տեսայ որ կէսը ջրին մէջ խղդուեր է, կէսը բարակ հովէն զարնուած սատկեր է։ Ծիծառնուկն կերաւ զանոնք, ձուկն ջըրին հետ խմեց, մէկ հատ մ՚ալ չմնաց հոն։

Մարդն ալ տեսայ իր ուժին մէջ. երեսներն դեռ դալար էին, ամեն անդամներն ժիր եւ ուժով. կը ցատքէր, կը վազէր, կը խաղար կը խնդար, ու կը կարծէր՝ որ իրեն պէս կտրիճ չկայ։ Այն տեղէն նորէն անցնելու եղայ. ի՞նչ նայիմ. գետնի վրայ պառկած ու մերկ փռուեր էր. ոչ ոտուըները կրնար շարժել, ոչ ձեռուըները բանալ. կեանքը կորուսեր էր. մեռեր էր...։

Բ.

Ծաղիկն ճղին վրայ ցամքեցաւ, գետինը թափեցաւ։ Նորէն տեսայ որ ծլեր էր, ճիւղը կոկոններով զարդարուած, հոտը սկսեր էր բուրել։

Տեսայ արեւը որ մայրը կը մտնէր. գիշերն պատեց երկինքը մէկ ծայրէն մէկալ ծայրը. բան մը չէր տեսնուէր, ձայն մը չէր լսուէր։ Շատ չանցաւ՝ արեւն նորէն արեւելք երեւցաւ. լեռներուն ծայրը կրակ կտրեց. արտոյտն ելաւ բունէն զինքը բարեւելու. մութն հալածուեցաւ։

*Տեսայ միջատը որ ուժը տեսքը տեղն էր՝ մէկ մ'ալ սկսաւ տկարանալ, կերակուր չուտել. իրեն գերեզմանի ծակ մը փորեց. ապրիշումի պատանքով պատեցաւ. ուժն ալ շարժումներն ալ կորսընցուց։ Մէկ մ'ալ նայիմ՝ որ ծակեց իրեն գերեզման ըսածը, դուրս ելաւ, թեւերը բացաւ, ու սկսաւ ճիւղէ ճիւղ թռչըտիլ։*

*Ասանկ ալ քեզի պիտի ըլլայ, ո՛վ մարդ, թէ որ մարմինդ մահացու է, հոգիդ անմահ է. բայց աս կեանքէդ կախուած է քու յաւիտենական բաղդդ։*

*— Ո՞վ է ատիկա որ գերեզմաններու քարերը կը վերցընէ, եւ մեռելները դուրս կը կանչէ. ո՞վ է ատիկա որ կը ժողվէ ատոնց աշխարհիս չորս դին սփռուած անդամները։*

*Ո՞վ է ատիկա որ կրակէ ամպի մը վրայ նստած՝ փողերու ձայնով հրեշտակներու բազմութեամբ երկիր կ'իջնէ։*

*— Յիսուս է անիկա, որդին Աստուծոյ, աշխարհիս փրկիչն, արդարներուն բարեկամն։*

*Իր յաւիտենական հօրմէն առած աստուածային փառացը վրայ ուրախ՝ իր մօրն ալ կուտայ անկէց. իրեն կը կանչէ ամեն իր պատուիրանքները պահողները ու իրեն համար նեղութիւն քաշողները։*

*Ուրեմն մի տրտմիր, անմահ տղայ. Աստուծոյ արարածները աւրողը յաղթուեցաւ. Յիսուս իր մեռնելովը՝ յաղթեց անոր. ուրախ կեցիր։*

**Հ. Գ. Ալիշան** (Ցոյցք Աստուծոյ)

## 14. ԳԱՅԼ ԵՒ ԳԱՌՆ

*Իրաւունքը որո՞ւնն է. —*
*Ուժովն ո՛վ է՝ անորն է.*

Կուզե՞ս օրինակ,
Կարդա զայս առակ։
Ականակիտ առուակի մը քով կեցեր
Գառնուկը ջուր կը խմէր.
Վրայ հասաւ անդիէն գայլ մը սաստիկ անօթի,
Արիւն կուզէր խմելու, միս կը փնտռէր որ ճըթքի.
Դուն ո՞վ ես որ իմ խմելու ջուրըս եկեր պղտորես,
Կանչեց գազանն անօրէն.
Հիմա պատիժըդ կը գտնաս, ա՛նմերես։—
Մի բարկանար վըրաս, տէր իմ, պատասխանեց գառն իրեն
Նայէ, կ՚աղաչեմ,
Ես որչափ վար եմ
Քու կեցած տեղէդ
Ու խըմած ջըրէդ.
Ի՞նչպէս կրնամ պղտորել այն ջուրն որ քեզմէ ինձ
կուգայ։ —
Կը պղտորե՛ս ըսի քեզի, իմ խօսքիս մէջ սուտ չը կա՛յ.
Հապա հերուն որ քըֆրեցիր ինծի՞...—
Հերու ես աշխարհք ալ եկած չէի.
Ես դեռ կաթ կուտեմ, կը սըխալիս տէր։—
Թէ որ դու չէիր, ուրեմն եղբայրդ էր։—
Եղբայր ալ չունիմ։ —Շա՛տ երկընցուցիր.
Ես սուտ չեմ խօսիր, աս աղէկ գիտցիր,
Ըսել է թէ ազգական էր նա քեզի.
Մի՛թէ չիյտե՞մ ի՛նչ քէն ունիք դուք ինծի,
Ամէնքնիդ ալ, հօտ եւ հովիւ եւ շըներ.
Ալ ճար չըկայ չեմ ներեր։
Աս ըսաւ ու վըրան ցատկեց,
Խեղճ գառնուկը պատռեց լափեց.
Կըսեն թէ միտքն ալ դըրաւ
Թէ շատ արդար բան ըրաւ։

**Լաֆոնթէն (Մասեաց Աղաւնի)**

## 15. ԱՄԷՆ ԲԱՆ ԶԱՍՏՈՒԱԾ ԿԸ ՔԱՐՈԶԷ

Ափով մը աւազ առ ու համրէ. Նայիմ կրնա՞ս. կրնա՞ս դաշտին խոտերը, ծառերուն տերեւները համրել: Իրաւ որ անոնք համրանքի չեն գար, բայց Աստուծոյ գործերը ա՛լ աւելի շատ են:

Եղեւնին բարձր լեռներու վրայ կը բուսնի. ուռենին վազուկ ջրերու վրայ կը ծռի.

Կանգառը սուր սուր փուշերով պատած է. մոլոշը բրդոտ ու կակուղիկ է:

Լուբխասը կը տարածուի կը պլլուի. կաղնին խոր արմատ կը ձգէ ու ձմեռուան հովերուն դէմ կը դնէ. մարգարիտ ծաղիկը դաշտերը կը զարդարէ, լեռներու փէշերուն տակը կը բուսնի. կակաչը պարարտ հող ու հոգացող ձեռք մը կ'ուզէ:

Հիրիկն ու եղէգը մէկմէկու կը պլլուին. կակուղ խոտը մարմանդի մէջ կը բուսնի, փշոտ թուփերը չքանած երկիրներ:

Ջրային շուշանը գետին մէջ կը մեծնայ, իր լայն ծաղկները ջրին երեսը կը բացուին. շոհոքրամը չոր քարի մը վրայ կը բուսնի, ու իր հոտը ժայռերու մէջ կը սփռէ:

Ամէն տերեւ մէկ մէկ ձեւ ունին, ամէն բոյս մէկ մէկ կերպ բնութիւն: Տե՛ս ան խոտերը որ դաշտի մէջ կը մեծնան, ան խոտերն ալ՝ որ նեղ ճամբաներու մէջ ոտքի տակ կ'երթան. զանոնք մարդ չէ սերմանած:

Կան բոյսեր որ բարձր ժայռերու վրայ կը բուսնին, ուր որ մարդ չէ ելած, կան որ խոր անտառներու կամ անմարդի կղզիներու մէջ, ու ամէն տեղ:

Աստուած է՝ որ հունտերը հովով ասդիս անդին կը ցանէ. անոնց մէկ մէկ ձեւ կու տայ. անձրեւով կ'ո-

ռոգէ, ցօղով կը մեծցնէ. ինքն է որ անոնց սիրուն գոյներ ու տեսք կու տայ. անուշ հոտ մը ու թափանցիկ բարակ թերթեր, որ մարդս կը զարմացընեն։

Ի՞նչպէս կ՚ըլլայ որ այն սեւ հողէն՝ վարդը իր ծիրանի գոյնը կ՚առնու, շուշանը իր բեհեզը. Ի՞նչպէս կ՚ըլլայ որ պզտիկ հունտ մեծ ծառ մը կը բուսցընէ. ինչէ՞ն գիտեն բոյսերը իրենց գալուն ժամանակը, իրենց կարգը ու իրենց տեղը։ Ջիւնը իջնալէն վերջը եղնագին գլուխը հողէն դուրս կը հանէ, ու գարունը հասնելուն՝ ահա ես ալ եկեր եմ, կ՚ըսէ։

Կան ծաղկըներ որ ամառուան արեւը կ՚ուզեն. դափնին ձմեռուան տխրութիւնը կը զարդարէ։

Ամեն բոյս կը բերէ իրեն նման բոյսեր. ցորենին հասկը կորիզէ մը առաջ չիգար. խնձորին կուտը չի կրնար կեռաս հասցընել։

Ջիւնը երկրիս երեսը ծածկած, սառը բոյսերը պատած ատենը՝ Աստուած կը հոգայ որ չի չորնան։ Ծառերը կը ցամքին, կը թափթըփին, կարծես թէ միայն ոսկորնին կը մնայ. Աստուած գարնան շունչը կը փչէ անոնց վրայ, մէկ մ՚ալ տերեւներ կը հագնին, կը սկըսին ողջըննալ։

Բոյսերուն պահուիլը՝ Աստուծոյ հրաշալի գործքերուն մէկն է. երբոր ամեն բան զԱստուած կը քարոզէ պէտք չէ որ ես խօսիմ. ամեն դաշտ մէկ բացուած գիրք մ՚է, ամեն ծաղիկ մէկ գրած դաս մը։

Առուակը որ կը խոխոջայ՝ ձայն մը ու լեզու մ՚ունի, ամեն արարած կը պատմեն իրենց ստեղծողը ու փառք կու տան անոր։

Ջենք կրնար զԱստուած տեսնել, վասն զի աչքի տակ չըննկնիր. բայց իր գործքերը տեսնելով՝ զինքը կը պաշտենք։

Որչափ որ մէկուն խելքը բաց է՝ այնչափ աւելի պարտական է զԱստուած օրհնելու. բայց ո՞վ կրնայ Աստուծոյ գործքերուն թիւը ու չափը գտնալ։

**Հ. Գ. Ալիշան** (Ցոյցք Աստուծոյ)

## 16. ԿԱԹՆԱՎԱՃԱՌ ԿԻՆՆ ՈՒ ԿԱԹՆԱՄԱՆ

Բերրէդ՝ գլխուն վերեւ կաթի աման մը բարձած
Լաւ մը բարձով հաստատած,
Հանգիստ ու անարգել քաղաք հասնիլ կը կարծէր.
Կարճ ու թեթեւ ըզգեստովը առաջ կ՚երթար մեծաքայլ.
Դիտմամբ արագ շարժելու՝ նոյն օրն արդէն հագած էր
Բաճկոն, կօշիկ պարզ անփայլ։
Հանգրիճաձեւ ինքն ասանկ,
Հաշիւ կ՚ընէր ո՞րչափ դանկ
Ձեռքը կուգար իր կաթէն. անոր բերած ըստակով
Հարիւր մ՚հաւկիթ կը գնէր, թուխս կը դնէր երեք հեղ
Եւ բանն աղէկ կը յաջողէր իւր մըտադիր խընամով։
«Ինծի համար դըժուար չէ,
Կ՚ըսէր միտքէն, տանըս բոլորը վառեակներ մեծցընել.
Ճարպիկութեամբ՝ մընացածովը ես կըրնամ խոզ մը գնել
Դիւրին է զինքն առանց մեծ ծախք մը բանալու գիր-
ցընել.
Գնած ատենէս լաւ մը լեցուն էր արդէն.
Կըրնամ կրկին ծախելով՝ աղէկ ըստակ ձեռք բերել.
Եւ ո՞վ կրնայ զիս արգիլել որ ախոռին մէջ պահեմ
Կով մը հանդերձ իր հորթով՝ եթէ ձեռք տայ գիններնին,
Որոնց հօտին մէջ հոս հոն պիտի տեսնեմ ցատքելնին»։
Ասոր վըրայ ինքն ալ Բերրէդ վեր կը ցատքէ խընտումով
Կը թափի կաթն. ողջամբ մընան թուխս, վառեակ,
խոզ, հորթն ու կով։

**Լաֆոնթէն** (Բազմավէպ)

## 17. ՁՄԵՌՆ

Ձմեռը հասաւ. դաշտերը աւրուեր են. ձայն ձուն չկայ. ոչ թռչունի ճռճռալ. ոչ միջատներու բզբըզալ։ Վազուկ ջուրը քարի պէս սառ դարձեր է։

Ծառերն տերեւը կորուսած ճիւղերնին կ'երկընցընեն՝ փառուժցած թեւերու պէս. գետնին հիւթը ալ չիքալեր երակներուն մէջ ոչ ծաղիկ կ'երեւի, ոչ երկընքին պայծառ երեսը։

Արեւն ալ տրտում ու առանց տաքութեան կ'երեւի, ու կարծես թէ միայն բնութեան՝ խեղճութիւնը ցուցունելու համար կը ծագէ։

Լա՛ց, լա՛ց զաւկըներուդ վրայ, ո՛վ բնութիւն. քիչ մ'ատեն առաջ հանդարտ քու գանձերդ կը վայլէին. վարդը իր անուշ հոտը կը ձգէր, այգին իր խաղողը կու տար. ամենն ալ իրենց ունեցածը։

Գեղեցի՛կ բնութիւն, Աստուծոյ զաւակ, ըսէ՛ ինծի. ինչո՞ւ սանկ տրտում ես. միթէ հայրդ զքեզ երեսէ թողուցե՞ր է. ի՞նչ, միթէ պիտի կորսուի՞ս երթաս։

Չէ. Աստուծոյ հոգը քեզմէ անպակաս է, ու իր ձեռքը քու վրադ է. կու գայ ատեն որ նորէն կը ծըլին կը ծաղկին ծառերդ, վարդն իր առջի խունկը կ'առնու, երկիր՝ իր կակուղ խոտը. Նորէն կու գայ քեզի քու գարունդ։

Մի՛ տրտմիր, ով բնութիւն՝ անոնց վրայ ալ, որ քու դաշտերուդ տակը կը ծածկուին, ու մէկ մ'ալ չեն երեւիր երկրիս վրայ։

Բայց ինչո՞ւ մուրտն ու վարդն միշտ կանաչնան, միշտ ծաղկին, ու մարդ միշտ մեռած մնայ։

Այնչափ գիտութիւն եւ առաքինութիւն՝ հողուն տակ պիտի կորսուի՞ն։

Գերեզմաններու վրայ թափած այնչափ արցունքները՝ չե՞ն կրնար մեռելները ողջընցընել։

— Անանկ չէ․ իմաստութիւն եւ առաքինութիւն անմահ պիտի ըլլան մուրտին ու վարդին պէս։ Պիտի արբուին մարդուս աչուըններուն արցունքներն ալ, երբոր յաւիտենական տարին հասնի։ Քիչ մ'ալ սպասենք․․․։

Հ. Գ. Ալիշան (Տօյցք Աստուծոյ)

## 18․ ԳԱՅԼՆ ՈՒ ԳԱՌՆՈՒԿՆ

Ոչխարաց հօտ մի ապահովութեամբ կը մակաղէր իւր փարախին մէջ։ Շուները կը քնանային, եւ հովիւը բարձրաբերձ կնձնիի մի հովանւոյն տակ նստած, սրինգ կը հարկանէր ուրիշ մերձակայ հովուաց հետ։ Սովալլուկ գայլ մի եկաւ, փարախին պատառուածքէն, հօտին վիճակը զննելու համար։ Անփորձ մի գառնուկ, որ երբեք բան մի տեսած չէր, անոր հետ խօսակցութեան սկսաւ։ — Ի՞նչ կը փնտրէք հոս, ըսաւ շատակերին։ — Փափուկ եւ ծաղկափթիթ խոտ, պատասխանեց նմա Գայլն։ Գիտէք որ չիք ինչ աւելի քաղցր քան ճարակիլ դալարագեղ ու ծաղկաւէտ մարգագետնի մէջ, իւր քաղցն յագեցունելու համար, եւ երթալ անցունել իւր ծարաւն ականակիտ վտակէ մի. երկուքն ալ գտայ հոս։ Այլ եւս ի՞նչ բանի պէտք կայ։ Կը սիրեմ փիլիսոփայութիւնն, որ սակաւուք շատանալ կ'ուսուցանէ։—Իրա՞ւ է ուրեմն, կրկնեց գառնուկն, որ կենդանեաց միս չես ուտեր եւ դոյզն խոտ բաւ է քեզ։ Եթէ այսպէս է, եկուր եղբայրաբար ապրինք եւ ի միասին արածինք․ — Իսկոյն գառնուկը փարախէն դուրս կ'ոստնու յարօտն՝ ուր մեր սակաւապետ փիլիսոփայն զայն գէշագէշ պատառելով կը կլնէ։

Մի վստահիք գեղեցիկ խօսքերուն այն մարդոց որք առաքինի կը ձեւանան։ Դատեցէք զանոնք իւրեանց գործերէն ու ոչ թէ խօսքերէն։

Ֆենելոն

## 19. ԳԻՏՈՒԹԻՒՆԸ ԿԱՐԵՒՈՐ Է ՄԱՆԿԱՆ

*Տեսէ՛ք սա հինցած կաղնի ծառը, որ գեղին պարծանքն է. ի՜նչ հաստ կոճղ ունի, ի՜նչ ամուր ու շատ ճիւղեր, ի՜նչ խոր արմատ գետնին մէջ՝ որուն վրայ ծառը իր ծանրութեամբը կեցեր է։*

*Թռչունները անոր ճիւղերուն մէջ կը դնեն բոյներնին. ոչխարներն անոր շուքին տակը կը հանգչին. գեղացիներն անոր քով կը ժողվուին կը նստին. անոնց մէջէն ամենէն ծերն ալ ծառին մատղաշութիւնը տեսած չէ. մարդիկ աշխարհ եկեր անցեր են, անտառին ծառը նոյնպէս մնացեր է 200 ձմեռ անցընելէ ետքն ալ։*

*Բայց եղած է ատեն մը որ աս ծառն ալ մէկ խոզակ մ'էր՝ ինչպէս որ հիմայ իր չորս դին սփռած են։ Այն խոզակին՝ որուն վրայ հազիւ քանի մը կաթիլ ցօղ կ'իջնար, ծառը իրեն սերմովը մէջը սղմած էր. աս հաստ կոճղը, աս ճիւղերը, աս անհամար տերեւները, ամէնքն ալ մէկ խոզակէ մ'ելեր են. ծառը կամաց կամաց կը մեծնայ, ճիւղ կը բաժնուի. սնունդը կ'առնու հողէն՝ որ անձրեւով կը պարարտանայ, ու ցօղը կը ծծէ։ Բայց հողն, անձրեւն, ցօղն՝ չեն կրնար առանց խոզակի բան մը բուսցընել, կամ խոզակը բուսնելէն արգիլել որ կաղնի մը չըլլայ։*

*Տղան ալ խոզակի մը կը նմանի, քիչ քիչ կը մեծնայ. ծնած ատենը մէկ տեղ կը բերէ իր ամեն տեսակ կարողութիւններուն սերմը, խելքը, դատողութիւնը, յիշողութիւնը, աղէկն ու գէշը ճանչնալը, արդարը անիրաւէն որոշելը, ասոնք բոլոր իրեն հետն են։*

*Մտածէ մէկ մը ամենէն իմաստուն մարդը որ ճանչցած ըլլաս կամ լսած ըլլաս, կամ ամենէն շատգէտը,*

կամ անիկայ՝ որ մեծ ծառի մը պէս իրեն նման մարդկանց վրայ թեւերը՝ օգնութիւնը՝ կը տարածէ, ու ըսէ մոքէդ. Աս մարդն ալ ինծի պէս տղայ եղած է, ինծի պէս տգէտ. ատեն մը եղեր է որ ոչ չարը բարիէն, ոչ իրաւը սուտէն կրնայ եղեր զատել։

Թէ որ աս խոզակը տեսած չըլլայիր՝ չէիր կրնար հաւտալ կաղնիին մեծութեանը եւ ուժին. թէ որ իմաստունի հետ չխօսէիր չէիր կրնար տղայ մը տեսնելով՝ իմաստութեան հաւտալ։

Գիտութիւնը խելքի կերակուր է, ինչպէս են հողն, անձրեւն ու ցօղն՝ ծառին, որ արմատը գետնին տակ կ'երկընցընէ։ Խելացի գիրքեր միտքն կը սնուցանեն, ու անոր կարողութիւնները կը տարածեն, եւ մեծցընելով կը շատցընեն։

Ուրեմն բանեցուր միտքդ, անոր հարկաւոր եղած սնունդը տուր, որպէս զի մեծնայ։

Կաղնին ինչուան որ աս հասակը հասաւ՝ որչափ տարիներ անցան. քանի եղանակներ փոխուեցան երբոր ան դեռ մատղաշ տունկ մ'էր, անանկ որ տղայ մ'ալ ձեռքով կրնար քաշել հանել. շատ ատեն անցաւ ինչուան որ ծառ ըսուեցաւ։

Ասանկ ալ տղան մարդ ըլլալու համար՝ շատ տարիներ կ'ուզէ։

Կրնար ըլլալ որ խոզակը հողին մէջ կորսուի, մատղատունկն ճիւղերը կորսնցընէ, ծառը կոտրի. բայց մեծնալէն ետքը՝ պէտք էր որ կաղնի ըլլայ. չէր կրնար ըլլալ որ մէկ եղանակին մէջ տերեւ ու ծաղիկ տայ ու մէկալին մէջ չտայ. ինչպէս կան ծառեր որ նոյն տարուան մէջ կը ծլին ու նոյն տարին կը չորնան։

Տղան ալ կրնայ որ խելացի ըլլայ կրնայ որ անխելք, բայց մեծնալուն պէս մարդ կ'ըլլայ. իր բնութիւնը անասունի չնմանիր. իր հոգին անմահ է։

Նայէ որ հոգաս հոգիդ, գիտութեամբ ուժովցընես, գիտնաս որ Աստուծոյ պատկերն է հոգիդ, ու Աստուած է տուեր քեզի զան։

Կաղնին հարիւրաւոր տարիներ կը կենայ. մարդուս միտքը անմահութեան համար ստեղծուած է։

Մի՛ արհամարհեր տղա՛ն. մի՛ աւրըշտըկեր անոր աստուածային պատկերը։

Հ. Ղ. Ալիշան (Ցոյցք Աստուծոյ)

## 20. ԵՐԱԺԻՇՏՔ

Ծըռքլիթ Կապիկն ու Արջ Թաթեղ,
Երկայնականջ Էշն, Այծ մօրուեղ,
Օր մը, չգիտեմ թէ ո՛ր սուրբին էր տօնին,
Դաշնակաւոր երգ մ’ յօրինել ուզեցին։
Գըտան Թըմբուկ մը ծակ, քընար անոլոր,
Հին կիսաձայն տիկ մ’ու սըրինգ ջախջախած,
Ուռենւոյ մը զով շուքին տակ կէս բոլոր
Մեր պարոնայքըն շարուեցան երգասաց.
Կը զարնէին ջանքով ամէնն իր գործիք,
Բայց այլանդակ ձայնէն խլացան լըսելիք։
Վեր ցատկեց հոն մէկէն աշխոյժ մեր Կապիկ,
«Կեցէ՛ք, կեցէ՛ք, սըռաց, փուճ տեղ չըյոգնիք.
Ի՞նչպէս կըրնայ մեր երգն ըլլալ ներդաշնակ,
Խառնաբընդոր երբ մենք բազմինք այս տեսակ.
Դու, Արջ եղբայր, Թըմբկովդ աջ կողմըս կեցիր,
Փողահար, դուն ալ, պարոն էշ, ձախս անցիր,
Ես ալ Այծուն դէմ հոս նըստիմ քնարահա՛ր,
Հա՛պա սկսինք նոր եղանակ ու նոր պար»։
Փոփոխուեցան տեղերն, այլ ոչ եղանակ.
«Այսպէս բան չէ՛լլար, բարեկամք, Արջն ըսաւ,
Թէ որ անուշ երգ մը զարնել կամենաք,
Երիցութեան հարկ է նըստինք մենք կարգաւ»։

Ջուր տեղ Արջուն հետեւեցան նոր գիւտին,
Եկան դարձեալ փոփոխեցին տեղերնին.
Նորէն աղմուկ, նոր աղաղակ, նոր չըփոթ,
Երաժըշտաց ջանիցն արդիւնք համառօտ։
Ցանկարծ ծառին ծայրն էջ Սոխակ մ'երկնքէն.
Ուրախութեամբ մէկէն ասոնք կը կանչեն.
«Բարով եկար, չըքնաղ Հոմեր հրաշախօս,
Շընորհք մ'ըրէ, լաւ մը կարգի դիր զմեզ հոս։
Ունինք ահա քընար ու տիկ եւ սըրինգ,
Ըսէ միայն ինչ կարգով հարկ է բազմինք»։
«Կարգաւ անուշ ձայնի ու կիրթ ականջաց»,
Ըսաւ Սոխակն ու խընտալով թռաւ գընաց։

Կռիլով (Թարգ. Հ. Գ. Հիւրմիւզ)

## 2. ՄԻՋԱԿ ԿԱՄ ԲԱՐԵԽԱՌՆ ՈՃ.

1. Ո՞րն է Միջակ կամ բարեխառն ոճն և ի՞նչ նիւթոց կը պատշաճի.

Պ. Միջակ կամ Բարեխառն ոճն, որ կը կոչուի նաեւ ծաղկալից ոճ, պարզին եւ վսեմին մէջ-տեղ աստիճան մի է, եւ, ինչպէս կ'ըսէ Կիկերոն, տեսակ մի խառնուրդ յերկոցունց. աւելի ճոխ և աւելի զարդարուն է քան պարզն, բայց նուազ կորովի եւ նուազ շողշողուն քան զվսեմն։ Այս ոճը պատշաճ է հաճոյական նիւթոց։ Ահաւասիկ օրինակ մի բարեխառն ոճոյ։

### Գ Տ Ո Ց Տ

Երբ գեղեցիկ եղանակն է, երկինք պայծառ, օդ՝ ջինջ եւ ջեր, ծառերն պճնուած են տերեւազարդ,

մի կանաչ խոտ կը ծածկէ բլուրն, եւ մարգագետինն գոյնզգոյն ծաղկունք կը կկեն, սաղարթուց մէջէն անոյշ կը շնչէ հովիկն, եւ խոտոց տակէն մրմնջածայն կը սողոսկի վտակն արծաթի, քանի՜ քաղցր է ԳՏՈՑՏՆ հովտին մէջ, բլրոյն կուշտն կամ ծովուն եզրն: Անարատ հեշտութեամբ լի եւ օգտաւէտ է միանգամայն այս կըօս. մաքուր օդն կը մաքրէ թոքերն եւ կը դիւրէ շնչառութիւնն՝ մանաւանդ երբ մարդ դուրս կ'ելնէ մի սենեկէ կամ գործարանէ ուր ժամերով փակուած է մնացել. կանաչութիւնն կը պարարէ աչերն, ծաղկանց բոյրն կը գգուէ ռունգն, մինչ հովին ու ալեակին մրմունջն կը դիւթէ ականջներն. ամէն զգայարանքներէ ներս կը թափանցէ մի սուրբ ու առողջ հեշտութիւն որով կը համակի մարդ, մարմին եւ հոգի միանգամայն կ'ընդլայնին՝ կը շնչեն մեծ ու ազատ, հոգք կը փարատին կնճռեալ ճակատէն որ կը պարզի, եւ հաճոյական պատկերներ կը գրաւեն միտքն: Ո՜վ սրբազան հաճոյք բնութեան, ո՜վ հեշտալից ստուերք խորհրդաւոր անտառաց, ձեր ծոցոյն մէջ ո՜րչափ անզգալի կը սահին ժամերն, եւ մարդ այդ ծաղկազարդ զառիվայրից վերայ քանի՜ աշխուժիւ կը վազէ կ'ոստոստէ. ծերն կը կարծէ վերստացած լինել իւր պատանեկան օրերուն աշխոյժն ու կայտառն: Պարզել մի գեղջկական սեղան կակուղ խոտոյն վերայ եւ սաղարթեայ հովանւոյն տակ, նստիլ մամռաշէն բազմոցներու վերայ, դնել միրգն տերեւէ պնակներու մէջ, առնուլ պարզ ճաշն որոյ չափ երբեք քաղցրահամ չեն թուած համադամք, լսելով՝ իւր շուրջն՝ մանուկներու զուարթ շաղփաղփն որ կը խառնուի տերեւոց մէջ սլահուըտող թռչնկին խաղերուն կամ ծովեզեր ալեաց կարկաջին հետ. եւ դառնալ երեկոյին, երբ տակաւ հորիզոնին վերայ կը սրբուին վերջալու-

սոյ յետին նշոյլք, դալարեօք կամարազարդ ծառուղիէ մի կամ մի մակուկի մէջ խաղաղաջուր ծովուն վերայէն հանդարտընթաց, ինչ զուարճութիւն, եւ ինչ օր. այդ աւուր կենսաւէտ բոյրն կը տեւէ բոլոր շաբաթն եւ կը լնկէ ու կը քաղցրացնէ շաբաթական վաստակն .................................:

Բնութեան բանաստեղծութիւնն պէտք է սիրել. նա ամենուս կը խօսի, համեստ գործաւորին որպէս իմաստասիրին եւ բանաստեղծին. բայց ամէնէն խոնարհ գլխոյն մէջ իմաստասիրութիւն եւ բանաստեղծութիւն կայ եւ կրնայ կարդալ բնութեան իմաստներն։ Եւ յետոյ, բնութեան ծոցոյն մէջ այդ ճեմոց եւ պտոյտներու ազդեցութիւնն մարմնոյն վերայ քանի՜ առողջարար է. մանաւանդ երբ չսիրեմք միշտ բազմութեամբ երթալ խռնուիլ միեւնոյն տեղւոյ մէջ. միայն ուր որ մի սրճարան կանգնուած է՝ հոն միայն չէ բնութիւնն գեղեցիկ. ամենուրեք սփռած է նա իւր գեղեցկութիւնքն. լերինք եւ բլուրք ինչ հովիտներ ունին, ինչ հովանաւոր ծործորներ, անտառք ինչ խորհրդաւոր ու զով ստուերներ. պէտք է թափառիլ, դեգերիլ, վազել, արշաւանք ընել՝ յառաջընթաց արձակելով մանուկներն որ ի մէն մի քայլ ետ պիտի դառնան առ մեզ մի ծաղիկ բերելով զոր քաղել են զմայլմամբ կամ մի թիթեռն շղարշաթեւ որ իւրեանց մատիկներուն մէջ կ'ոգորի կամ ցուցնելով մի թռչնիկ որ կ'օրօրի մի ոստոյ ծայրն. եւ նոր ու ախորժագին վայրերն՝ զոր պիտի գտնեմք՝ պիտի հաճոյք առթեն մեզ այնպէս որպէս թէ մէն մի Գոլոմպոսներ լինէինք։

**Ռ. Ց. Պէրպէրեան (Ժողովրդեան զբօսանքներն)**

Զդ. Հ. Բարեխառն ոճոյ պատշաճագոյն յատկութիւնք ո՞րք են.

Պ. Բարեխառն ոճոյ պատշաճագոյն յատկութիւնքն են. 1) Վայելչութիւն (l'Elégance). 2) Ճոխութիւն (la Richesse). 3) Նրբամտութիւն (la Finesse). 4) Փափկութիւն (la Délicatesse). և 5) Շնորհք (la Grâce).

## ՎԱՅԵԼՉՈՒԹԻՒՆ, ՃՈԽՈՒԹԻՒՆ

1. Հ. Ի՞նչ է վայելչութիւնն.

Պ. Վայելչութիւնն է գեղեցկադիր յարմարութիւն բանից. սա յառաջ կուգայ բանից և դարձուածոց ազնուութենէն և ողորկութենէն. ոճոյ այս յատկութիւնը կը պահանջէ որ բացատրութիւնք կոկիկ, սահուն և քաղցրալուր լինին. Հետեւեալը գեղեցիկ օրինակ մի է ոճոյ վայելչութեան:

### Վ Ի Ս Պ Ա Տ

Վիսպատ ենք.

Վայրն է գեղեցիկ ու հանդարտիկ. — Հոս ջուրը ծիծաղ մ'ունի, օդը ծիծաղ մ'ունի, երկինք ծիծաղ մ'ունի, որ անմեղ աղջկան ծիծաղին կը պատասխանեն: Անտառն իր գօս տերեւոց խօշիւնն ունի, իր մամռապատ ծառերն ու ծառի կոճերը, իր քարանձաւը, իր սահանքը, իր բացավայրը եւ իր հովուաց հովիտը: Կը մխիս անտառին մէջ, կը խորասուզիս, եւ նա ի խորոց անհուն մթութեանն կերկերաձայն թռչնոց վայիւններովը ու անհագնագոյշ ծառերուն սօսափիւնովը կը պատասխանէ սրտիդ անհուն աղաղակներուն: Քիչ մ'անդին կը տեսնես որ ահագին ա-

պատուած մը երկնից դէմ կը ցցուի ու կարծես չանթը կ'արհամարհէ. իր լոռուտ կողերուն վայրի կանաչին վրայէն կաթիլ կաթիլ ջուր մը կը մղի վճիտ, փայլփըլուն, զովագին, եւ այն կաթիլը հեղեղ կ'ըլլայ, որ զմայրիս կը խորտակէ ու անհուն հովիտ մը կը փորէ իր ճամբուն վրայ, հոս՝ ջըրվէժ, հոն՝ ջրի առուակ, հոս՝ կը դըդըչէ, հոն՝ կը կարկաջէ, հոն՝ ամպերուն հետ թխագոյն կ'որոտայ, հոս՝ դալարագեղ ծաղկափթիթ խոտերուն եզերքը՝ մանուածապատ ման կու գայ, հոն՝ կը փրփրայ, հոս՝ կը փայլփլայ, եւ արեւուն նախածագ փայլիւններուն առջեւ կը կարմըրի։

Հոն է ներդաշնակութիւնը, կարգը այս անկարգութեան մէջ է. եւ զի մարդուն ձեռքը ոչ ժպիրհ այլ համեստօրէն խառնուած է բնութեան գործոցը, անոր կամացն ու քմացը հնազանդելով. եւ զի բնութիւնն է որ կը տիրապետէ։

Մշուշ չ'ունի երկինքը՝ որ այն մշուշը պատէ նաեւ զսիրտը. կապոյտ կը տեսնես ցերեկը, աստղունք կը տեսնես գիշերը. ամպերն ալ, երբ ամպեր պատեն, զովագին են եւ թափանցիկ արեւին լուսովը։

Գ. Օտեան

2ր. Հ. Ի՞նչ է ճոխութիւնն.

Պ. Ոճոյ ճոխութիւնն է առատութիւն զոյգ ընդշքեղութեան. այսպէս, ճոխ է ոճն երբ կ'ընծայեցունէ մի ճարտար միաւորութիւն պայծառ գաղափարաց, կենդանի պատկերներու եւ մտահար իմաստներու։

3ր. Հ. Բացատրութիւնն ե՞րբ ճոխ կ'ըսուի.

Պ. Բացատրութիւնը ճոխ կ'ըսուի,

1. Երբ քիչ բառերու մէջ շատ իմաստ կը պարունակէ։

Լամարթին անկեալ մարդուն մեծութիւնն ու միանգամայն թշուառութիւնը կը ներկայացունէ ճարտարութեամբ հետեւեալ երկու տողերուն մէջ.

«Իւր բնութեամբ սահմանաւոր, եւ իղձերովն անսահման,
Անկեալ Աստուած մի է մարդ որ միշտ զերկինս կ'ածէ յուշ։»

2. Երբ նկար կամ պատկեր կը յօրինէ.

Պօսիւէ այսպէս կը նկարէ պատրեալ մարդոյն ցնորքն
«Մեր պատիր յուսոց երկար շղթայն ընդ փառս կը տանին զգերեզման։»

Ահաւասիկ ընտիր օրինակ մի ոճոյ ճոխութեան, յորում արագ արագ իրարու կը յաջորդեն գեղեցիկ պատկերներ ճարտարապէս նկարուած.

## ԳԵՂԵՑԻԿՆ

Ի՞նչ է գեղեցիկն. — Հարցուցէք տարօրինակ, գոգցես. զի ամէն օր, ամէն վայրկեան ի տեսիլ կամ ի լուր մի առարկայի որ կը յուզէ զմեզ կամ կը յափշտակէ՝ կը գոչեմք «զի՜ գեղեցիկ»։ Գեղեցի՜կն, ո՞վ չզգայ զայն, երբ տեսնէ մի կոյս նրբահասակ՝ ոսկեհեր եւ աստղաբիբ, մի պատանեկան դէմք կայտառ զոր կը շրջանակեն սեաւ գանգուրք եւ կը լուսաւորեն հանճարալիր աչկունք, մի մանկիկ՝ մօր բնոյն վերայ բուսած ծաղիկ, կամ մի ալեզարդ ծերունի վեհափառ. երբ տեսնէ մի գեղաբաշխ նժոյգ օդապար կամ լսէ մի թռչնոյ երգն յանտառին, կամ դիտէ խաշինքն ճարակաւոր ընդ մարգ. երբ նկատէ ծաղկեհիւս պատմուճանն զոր կ'զգենու գարուն՝ դշխոյն բոյրերու եւ շողերու, կամ անտառն որոյ ստուերք են

*խորհրդաւոր, եւ առուակն արծաթի յոր կը կախին լուսնոյ վարսքն ոսկեթել. եւ կամ երբ աշուն — կոյս հիւծեալ — մի մելամաղձոտ վերջալուսոյ մէջէ կընայի տխուր իւր դեղնած տերեւներուն որ կը թափթըփին տակաւ իւր ոտից տակ եւ որք թուին լինել իւր յոյսքն եւ երազք վաղանցիկ։ Ո՞վ չզգայ գեղեցիկն, երբ կը տեսնէ հաւատացեալն ի ծունր սրբավայրին նուիրական սեմոց վերայ, մի մօր խանդաղատանքն իւր զաւկին վերայ որ կախուեալ է իւր ստինքէն, տարփանքն երկուց տարփածուաց որ զոգցես յիրեար միայն ապրին, եռանդն զինուորին որ զուարթ կը նուիրէ իւր կեանքն հայրենեաց արեւուն, այրին որ ամչկոտ եւ գաղտագողի կը նետէ լումայն գանձանակին մէջ կամ թէ մի մանուկ որ մի պատառ հաց կը կարկառէ մուրացիկ ծերոյն որ կ՚օրհնէ զնա։ Գեղեցիկն ո՞վ չզգայ զայն, երբ մի վեհ ճշմարտութիւն. իբրեւ լուսոյ ճառագայթ, կուգայ յանկարծ, մեր մտքի քօղն պատռելով, մի անծանօթ հորիզոն պարզել մեր առջեւ, կարդալ տալ մեզ բնութեան գաղտնիքն, թափանցել արարչութեան ներդաշնակութեան եւ լուծել իմաստն մի այլ տառի ի տառիցն որովք Աստուած իւր կամքն ու իմաստութիւնն գրել է ի տիեզերս։*

**Ռ. Ց. Պէրպէրեան** (Գեղեցիկն եւ Գեղարուեստ)



ՆՐԲԱՄՏՈՒԹԻՒՆ, ՓԱՓԿՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՆՈՐՀՔ

**1**. *Հ. Ի՞նչ է Նրբամտութիւնն.*

*Պ. Նրբամտութիւնը մտաց մի յատկութիւնն է. սա այն կարողութիւնն է որով միտքը սովորաբար մարդոց ընդհանուրին տեսածէն աւելի հե-*

ռուն կը նշմարէ և աւելի խորը կը թափանցէ։ Մտքին այս յատկութիւնն երբ ոճոյ անցնի, յառաջ կը բերէ իրաց խորին ու նրբին տեսութիւն մի, կիսաքօղ բացատրութիւններ եւ իմաստից արտայայտման անուղղակի ձեւեր։ Լա Ռոշֆուգոյ, Լա Պրիւյէր և Վոժնարկ ընտիր օրինակներ են նրբամիտ ոճոյ. զոր օրինակ,

- «Կեղծաւորութիւնը մեծարանաց հարկ մի է զոր մոլութիւնը կը մատուցանէ առաքինութեան։»

«Գովեստից մերժումն երկիցս գովուելու տենչ մի է։»

«Կը սիրեմք միշտ զանոնք որք մեր վերայ կը զարմանան. եւ չեմք սիրեր միշտ զանոնք՝ որոց վերայ մեք կը զարմանամք։»

«Ամէն մարդ կը գանգատի գիւր յիշողութենէն. ոչ ոք գիւր դատողութենէն։»

—Նաբոլէոն Ա. օր մի զԹալէրան (երեւելի քաղաքագէտ Գաղիացի) յանդիմանելով ըսաւ, «Թերեւս կարծէք որ եթէ մեռնիմ, դուք յանձանձիչ խորհրդոյ մի նախագահ կ'անուանիք..., կը սխալիք չարաչար, թէ որ ծանր ու վտանգաւոր կերպով հիւանդ լինիմ յայտնապէս կ'ըսեմ ձեզի, դուք քան զիս առաջ պիտի մեռնիք։» — «Տէր, պատասխանեց Թալէրան, մեծ շնորհ մի ընդունող մարդու մի դէմքով, Տէր, այդպիսի ազդարարութեան մի կարօտութիւն չունէի, ջերմ մաղթանքներ ուղղելու համար Աստուծոյ, որ Ձեր վեհափառութեան օրերը պահէ։»

— Անգղիոյ Եղիսաբէթ թագուհին իւր պաշտօնեայներէն միոյն կը հարցնէր թէ ի՞նչ անցաւ ժողովոյն մէջ. — Չորս ժամ, Տիկին, պատասխանեց վերջինը։

— Երիտասարդ դատաւոր մի դատարանի գահերէց կ'ընտրուի, եւ Նաբոլէոնի կը ներկայանայ։ Կայսրը

վինքը բաւական չափահաս չգտնելով «Գահեrkց sէr, կ'ըսէ, փոfr մի շաs երիsաարդ էf ։— Ինքնակալ Տէr, կը պատասխանէ Նրբամիտ գահերէցը, ճիշդ այն sարիքն ունիմ յոռում Ձեr վեհափառութիւնը Մարենկոյի պաsերազմին յաղթեց ։» Այս ճարտար պատասխանին վրայ Նաբոլէոն Նորա գահերիցութիւնը կըհաստատէ ։

Մոնթէսքիէօ ուղելով գաղափար մի տալ բանաւորութեան վրայ՝ ըսած է.

«Երբ Լուիզիանայի վայրենիք պտուղ ունենալ ուզեն, ծառը արմատէն կը կտրեն եւ պտուղը կը քաղեն ։ Ահա բանաւորական կառավարութիւնն ։»

Երբեմն կատականաց և ծաղու՝ բանք Նրբամտութեամբ կը բացատրուին հաճոյական ձեւով մի ։

— Թալէրան՝ լսելով որ իրեն յաջորդող ափիկար պաշտօնեաները կը գովէին եւ կ'ըսէին թէ զԳաղիա ափտի ազատեն. «Զարմանալու ի՞նչ կայ, ըսաւ, սագերն ալ զԿապիտոլ ազատեցին ։»

Զդ. Հ. Ի՞նչ պարտ է լինել Նրբամտութեան գործածութեան մէջ.

Պ. Նրբամտութեան գործածութեան մէջ հարկ է ժուժկալ և զգոյշ լինել, վասնզի եթէ կարի յաճախ եւ անճահս գործածուի, գրողին վրայ խելք ցուցունելու ճիգ մի, խելացութեան պահանջողութիւն մի ի վեր կը հանէ, եւ յայնժամ, որպէս կ'ըսէ Կրեսէ,

«Միsքն՝ qոr կուզէ ոf ունենայ, ունեցածն ալ կ'եղծանէ ։»

(L'esprit qu'on veut avoir gâte celui qu'on a.)

*Եւ կամ, որպէս կ'ըսէ Մոնթէսքիէօ,*

*«Երբ հետամուտ լինի ոք հանճարական լինելու, անմտութեան կը հասնի։»*

(Quand on court après l'esprit, on attrape la sottise.)

3ᵈ. Հ. Ի՞նչ է փափկութիւնն.

Պ. Փափկութիւնը մի յատկութիւն է սրտի ինչպէս նրբամտութիւնը մտքի, նոյնն է սա սրտին նկատմամբ, ինչ որ է նրբամտութիւնը մտքին նկատմամբ եւ կը կայանայ ոչ թէ նշմարելու, այլ զգալու մէջ. զգացման նրբութիւնն է այն որ երբ ոճոյ անցնի փափուկ իրաց եւ փափուկ զգացմանց բացատրութիւնք յառաջ կուգան։

4ᵈ. Հ. Փափկութիւնն ինչ բանի մէջ նրբամտութեան կը նմանի.

Պ. Փափկութիւնը յայտ կը նմանի նրբամտութեան զի երբեմն կը լինին զգացումներ զորս չուզեր ոք բացէ ի բաց և անմիջապէս կերպով, իբր յանդիմանութիւն յայտնել, յայնժամ ճարտարապէս քողարկելով կ'արտայայտէ։

Ռասինի Իփիգենին ծայրէ ի ծայր սոյն տեսակ փափկութեան օրինակ մի է։ Իփիգենի կը հեծէ իւր հօր անգթութեան նկատմամբ. բայց սակայն նորա զաւակը նորա արիւնը լինելուն վերայ միայն կը խօսի, քինալից Աքիլլեայ առջեւ, զգացման հանճարեղ եւ նուրբ ձեւով մի։

АՔԻԼԼԷՍ առ Իփիգենի

Արժան է քեզ, բամբիշն, ընդ միտըս իմ լինել հաճ։
Արժան է զի անգութըն՝ որ զիս յընչացըն քերեաց,
Առնուցու ի միտ՝ որով անուամբ իշխեաց զեղծանել։

ԻՓԻԳԵՆԻ

Աւա՜ղ, զիս թէ սիրես, եթէ ի շնորհ ինձ յետին
Հաճեսցիս սիրելւոյդ աղաչանացըն լըսել,
Աստ է, տէր, աւասիկ՝ ուր ցուցանել պարտ է զայն.
Զի անգութն այն հուսկ ուրեմն ում սպառնացեալ խիզախես,
Թշնամին այն խուժադուժ, մարդախոշոշ, անիրաւ,
Ած ընդ միտ, զինչ եւ իցէ արարեալ, տես զի հայրս է։

Հանդէս Գ. 6

*Աւելի հեռուն, սոյն փափկութիւնն լաւագոյնս բացատրուած է այն պատասխանին մէջ զոր կու տայ Իփիգենի իւր հօր, եւ յորում որդիական հլութեան քօղին տակ կը յայտնէ կենաց տենչը։*

Սակայն, հայր
Հանդարտեա յամբոխմանէդ, ամենեւին չես մատնեալ.
Աղէ տուր դու հրաման, ի հնազանդել կամ պատրաստ։
Կեանք իմ քո են պարգեւք, կամիս առնուլ յետս անդրէն.
Գոյր առանց մեղմեխանաց զքո հրամանդ առնել յայտ։
Նովին զոհ ակնարկութեամբ, նովին հլու լի սրտիւ
Որով զայրն ընկալայ զոր խոստացեալ էր քո ինձ,
Գիտացից, թէ պէտք իցեն, ի պատարագ հըպատակ
Կարկառել զանմեղ զգլուխս ի Կալքասայն պողովատ.
Եւ սրրոյն առ ի քէն հրամայելում ակն ածեալ,
Նուիրել քեզ զամենայն զարիւն զոր դու ետուր ինձ։
Բայց թէ այս մեծարանք, եւ եթէ այս հլութիւն
Արժանի յաչսըդ թուին այլում իմիք հատուցման,
Եթէ մօր ողբականի ցաւեն քեզ վիշտք եւ տագնապք,
Յանդըգնիմ ասել քեզ աստ, թէ յորում եմ վիճակի,
Մեծամեծ պատիւք արդեօք շուրջ պատէին ըզկեանս իմ՝
Բաւականք ի փափաքել զի մի՛ առցի այն յինէն,
Եւ ի խիստ ճակատագրին յափշտակել յինէն զայն,
Մի այսպէս հուպ ի ծընունդ իմ լինիցի վախճան իւր։

Հանդէս Դ. 4

**5դ.** *Հ. Զգացման փափկութիւնը քանի՞ դասերու կը բաժնուի.*

*Պ. Զգացման փափկութիւնը գլխաւոր երկու*

դասերու կը բաժնուի. 1) Յանդիմանութիւնք եւ 2) Գովեստք։

1. Յանդիմանութիւնք կը մեղմանան երբ փափուկ եղանակաւ մի ներկայացուին։

— Ռամիլիոյ պարտութենէն յետոյ, Լուդովիկոս ԺԴ. ըսաւ մարաջախտ Վիլըրուայի որ կորուսած էր յաղթութիւնն. Պարոն մարաջախտ, մեր տարիքին մէջ այլ եւս երջանիկ չէ մարդ։

2. Գովեստք եթէ փափկութեամբ տրուին առաւել հաճոյ տպաւորութիւն մի կ՚ընեն լսողին վերայ։

— Մեծն Քոնտէ, Սընէֆի ճակատամարտին մէջ յաղթելէն յետոյ, գնաց յողջոյն Լուդովիկեայ ԺԴ.ի։ Արքայն սանդուխին գլուխը կեցած էր. Քոնտէ ուրնցաւութեան պատճառաւ կը դժուարէր սանդուխէն վեր ելնել, ուստի սանդուխին մէջտեղէն ըսաւ. Տէր արքայ, ներէ ինձ որ Ձեր Վեհափառութիւնը այդպէս կ՚սպասեցունեմ։ Արքայն պատասխանեց նմա. Մի փութար, ով որ քեզ պէս պատիւ բեռնաւորեալ է, չկարէ շուտով քալել։

— Օր մի մէկը խնդրեց Թալերանէն՝ զի Վօտմօն իշխանուհւոյն բնակարանը ցուցունէ իրեան։ «Սեն-Լազար փողոցը կը բնակի, պատասխանեց Թալերան. Իսկ տանը թիւը չգիտեմ, թաղին աղքատներուն հարցուր։»

Այս խօսքով կ՚ուզէր իշխանուհւոյն դթասրտութիւնն ու առատաձեռնութիւնը գովել. զի թշուառաց բարեկամուհին էր եւ աղքատաց նեցուկ։

— Մօնպլէզօն՝ Թալէրանի տունը ճաշի հրաւիրեալ լինելով, սակաւիկ մի յամեցաւ, եւ սկսաւ թողութիւն խնդրել։ «Հոգ չէ, սիրելիդ իմ զօրապետ, գոչեց

նմա Թալերան. «Ամենէն վերջն եկաք դուք, վասն զի պատերազմի դաշտն հրաւիրուած չէիք, այլ ճաշելու։ Թէ որ պատերազմի հրաւիրուած ըլլէիք, սիրելիդ իմ Պայար, ամենէն առաջ կը գտնուէիք։»

— Բանաստեղծ մի կ՚ըսէր իւր սիրելի բարեկամին «Ամենէն ամայի եւ անապատ վայրերուն մէջ իսկ, ինձ համար մեծ ընկերութիւն մի կայ։»

— Տանիմարքայի Թագաւորն երբ կը գտնուէր ի Բարիզ, Գաղիացի բանաստեղծ մի կ՚ուղղէր առ նա քերթուած մի յորում հետեւեալ փափուկ բացատրութիւնը կը գտնուէր. «Սիրելի եւ մեծարոյ թագաւոր մի՝ ամէն երկրի մէջ հպատակներ ունի. ի զուր կը շրջի նա օտար երկիրներ, միշտ իւր իշխանութեան երկրին մէջ է։»

6դ. Հ. Ի՞նչ է Շնորհքն.

Պ. Շնորհքը դժուարին է սահմանել. Լաֆոնթէն «Գեղեցիկ քան զգեղեցկութիւն» կը կոչէ զայն, միաւորութիւն մի է քաղցրութեան, փափկութեան, սիրելութեան, ոչ սաստիկ՝ այլ հեզիկ ու յանկուցիչ հրապուրանաց։

Շնորհալից է Պէշիկթաշլեան երբ կ՚երգէ Զեփիւռն ու հաճոյքն Ալէմտաղի։

## ԱՌ ԶԵՓԻՒՌՆ ԱԼԷՄՏԱՂԻ

Դու փափկաթեւ մանկիկ զեփիւռ,
Աղբերց վրայէն խուսակարկաջ.
Անուշ հոտով ծաղկանց ըմպիւռ,
Ի՞նչպէս թռչիս ինձ ընդ առաջ.
Ու խունկ եւ զով ընծայելով,
Զիս ողջունել հեզիկ շնչով։

Ո՛հ կը սիրեմ ըզքեզ հողմիկ,
Երբ դու փութաս ինծի գալու.
Ի պար ի թռիչ ի սոյլ մեղմիկ,
Այրած ճակտիս իմ այցելու.
Ծաղիկ հոգւոյս քեւ զովացած,
Բացուի ի լոյս ախորժ կենաց։

Սլացի՛ր փափկիկ դու սուրհանդակ,
Լուր տար հովտին ու ձորձորին.
Ու անտառոց բարձրաղխտակ,
Ուր երամով սոխակք թառին.
Թէ մտերիմն ուրեանց եկաւ,
Բիւր ըղձմայլմանց յիշատակաւ։

Ո՛հ կորսըւած իմ հաճոյքներ,
Հոս վերստին գըտնեմ ըզձեզ.
Ծառոց շըքով էք ծածկըւեր,
Ու փըրփըրով առուակին հեզ.
Ահա կայառէք ի յայս ծըմակ,
Ի յայս թըփուտ հովանոցակ։

Հոս դառն հոգեր մէկիկ մէկիկ,
Ճակտէս ի բաց հեռանային.
Ու փունջք ժամուց գեղապարիկ,
Սիրտըս թեթեւ օրօրէին.
Եւ բընութիւն, մայր որդեսէր,
Քնքուշ գրկաց մէջ զիս գըգուէր։

Հոս ճէմէին երեկոյեան,
Ի զով ըստուեր պար մի կուսից.
Մազերն հովուն բազմոբուրեան,
Սիրտք ընծայուած հեշտ վայելից.
Շող լուսնակին, կոյսն ու ծաղիկ,
Զիրար շոյեն սիրատարփիկ։

Մտերմութիւն, Սէր կրակուբոց,
Ի՞նչ անուշ էք յայս տեսարան,
Ուր բիւր դալարք ձեզ հանգըստոց,
Ու անհուն դաշտեր ըզբօսարան.
Մտերմութիւն, ինձ երանի,
Թէ հոս ծոցէդ հոգիս թռանի։
Դու փափկաթեւ մանկիկ զեփիւռ,
Աղբերց վրայէն քաղցրակակաչ.
Անուշ հոտով ծաղկանց ըսփիւռ,
Թռի՛ր, թռի՛ր ինձ ընդ առաջ.
Ու խունկ եւ զով ընծայելով,
Պարէ՛. չորսդիս հեզիկ շնչով։

**Մ. Պէշիքթաշլեան**

Շնորհալից է նաեւ Մ. Զերազ հետեւեալ հատուածին մէջ ուր կը նկարէ զՅՈՅՍ։

## ՎՀԱՏ ՊԱՏԱՆԻՆ ԵՒ ՅՈՅՍ

Յուսահատ էի. կեանքը ինձ ոճիր կը թուէր այլ եւս. վհատումը կը ծանրանար հոգւոյս վրայ։

«Մի՛ վհատիր, ո՛վ պատանի,» ասաց մի մեղմ ձայն մօտաւոր. եւ մի կաթնաթոյր մատ հեռին, շատ հեռին, մի հրեշտակ ցոյց տուաւ։ Դէպ յայն դարձայ մեքենապէս։

Մի խարտեաշ կոյս էր նա. ոսկեզօծ գանգուրներ կը ծածանէին իւր կիձէ ուսերուն, որպէս մի գեղեցիկ ստուեր ալեակին վրայ. իւր կապոյտ աչքերուն մէջ կը պատկերուէր երկինը, իբր արծնուած ապակիի վրայ։ Իւր կարապի թեւիկները կը թրթռային, կարծես շուտ հասնիլ կը տենչային. այլ նա յամր յամր կ'ընթանար սպիտակ դժնիկներու մէջէ։ Մերթ մի ամպի մէջ փաթթուած՝ դէպ յերկին կը սլանար եւ

*մերթ կ'իջնէր երկրի վրայ։ Ամեն տեղ կը ծաւալէր զուարթութիւն եւ կեանք. երբ նա մօտէր, գօսացած ոստը մի ծաղիկ դուրս կը տար, չորցած միջատը մի ճիկ կը հանէր. արեւածաղիկը դէպ յայն կը դարձունէր իւր լայն ճակատը, իբր թէ մի երկրորդ արեւ լինէր նա. Թուփերը նորա քայլերուն առջեւ կը հակէին իւրեանց երփներանգ ծաղիկները, որպէս զի Հրեշտակը նոցա վրայ կոխելով անցնի. իսկ նա, վարդից բաժակներու վրայէ ոստոստելով, կակաչներու շքեղ կոնքին մէջ իւր ոտիկները լուալով, դէպ ինձ կը յառաջէր։*

*Ո՞վ ես դու, բարերար Հրեշտակ, ամեն տեղ կայտառ կը սփռես, յարութիւն կու տաս հոգեվարին, կեանք կ'ազդես դիակին։*

*— Ես Յոյսն եմ. ես եմ որ մարդը իւր խանձարուրին մէջ կ'առնում, թեւերուս վրայ օրրերով կը քնացունեմ զայն, եւ իմ շունչը կը խառնեմ նորա յետին շունչին հետ...։ Գիտեմ, դու ալ ինձ պէտք ունիս, ո՜վ պատանեակ, դու ալ վհատած ես, մի մեծ վիշտ ըզքեզ կը մաշեցունէ. այլ աւետիս քեզ, խոցերդ պիտի բուժուին։*

**Դուրեան փորձեր**

*Շնորհալի է նաև պատկերն՝ յորում Հոմեր կը նկարէ զՀեկտոր երբ սա իւր հրաժեշտի ողջոյնը կու տայ իւր կնոջ և որդւոյն.*

Ասացեալ զայս՝ տարածեաց Հեկտոր 'անեղ գիրկս առ որդեակն,
Եւ մանկիկն յետս ի ծոց գեղեցկամէջ իւրոյ սնընտուին
Ճիչ բարձեալ խոնարհեցաւ՝ ի տես սիրուն հօր զարհուրեալ,
Պակուցեալ ի պղընձոյն ու ի ձիազէս զարդմանակէն,
Զահաւոր տեսեալ ճօճելն ի գագաթանց գըլխանոցին,
Ընդ որ հայրըն սիրելի եւ մեծարոյն ծըմտեցաւ մայր։
Եւ անդէն բարձ ի գըլխոյն ըզսաղաւարտն անեղն Հեկտոր.

Եւ առեալ զայն ի վայր՝ ճաճանչաւէտ եդ ի գետնի.
Եւ զմանկիկըն սիրուն ողջագուրեալ ճօճեալ ի ձեռսն,
Յաղօթս եկաց եւ ասէ առ Արամազդ եւ առ այլ դիս.
Արամազդ եւ այլ աստուածք, տուք եւ ըզսա զիմըս որդեակ
Լինել, որպէս եւ եսս, արժանափառ ի տրովացիս,
Այսպէս հըզօր զօրութեամբ եւ քաջաբար տէր յիլիոն.
Եւ իցէ ոք ասասցէ, բամ սա քան զհայրն արիագոյն,
Ի մարտէն յորժամ դարձցի եւ արիւնոտ բերցէ կապուտ՝
Սատակեալ զախոյեանն, եւ մայրն ի սիրտ իւր խընդասցէ:
Զայս ասաց եւ ամուսնոյն զորդեակն ի ձեռս ետ սիրայնոյ,
Որ առեալ ընկալաւ ըզնա ի գիրկս իւր բուրազուարթ
Արտասուախառն խընդութեամբ. առն յայն տեսիլ խանդաղատեալ՝
Փայփայեաց ձեռօքն ըզնա, կարդաց զանուն իւր եւ ասէ.
Նազելիդ իմ, մի անչափ զինեն ի սուգ հարցի քո սիրտ,
Զի յառաջ քան ըզհրամանսն ոչ ոք ի դժոխս ընկեսցէ զիս,
Իսկ յօրհասէն՝ եւ ոչ զոք ի մարդկանէ կարծեմ փախչել,
Ոչ ըզվատ եւ ոչ ըզքաջ, յետ միանգամ ի լոյս գալոյ.
Այլ երթեալ քո ի տուն՝ քոյոց իրաց առնիջիր պէտ.
Ոստայնիդ եւ իլոյդ, եւ աղախնայցըդ տուր հրաման
Ըզգործովք գալ իւրեանց. հոգասցեն արք ի պատերազմ
Որ ծնեալքն են յիլիոն ամենեքին, ես մանաւանդ.

Իլիակ. Երգ Զ.

**Ծ՛. Հ. *Ի՞նչ է Ծեքծեքումն* (Afféterie).**

***Պ. Ծեքծեքումը չնորհաց հակառակ թերութիւն մի է որ յառաջ կուգայ բնականին հակառակ վարուելէ և զմիտն բռնազբօսելէ։***



# ԲԱՐԵԽԱՌՆ ՈՃՈՑ ՕՐԻՆԱԿՆԵՐ

## 1. ՆԵՐԿԱՅՆ ԵՒ ԱՊԱԳԱՅՆ

*Կ՚անցնին մարդիկ հանգոյն ծաղկանց՝ որ կը փըթթին յառաւօտուն եւ յերեկոյին թառամելով ոտից կոխան կը լինին։ Ազգք մարդկան սըրնթաց գետոյ*

*ալեաց նման կը սահին. ոչինչ կարէ կասեցունել ժամանակն, որ կ'առնու կը տանի իւր հետ ամէն ինչ որ անշարժ կ'երեւի։ Դու իսկ, որդեակ իմ, որ այժմ առոյգ եւ բերկրապատար երիտասարդութիւն մի կը վայելես, յիշէ՛ որ այդ գեղածաղիկ հասակդ՝ ընդ փթթելն պիտի գօսանայ. անզգալապէս կենացդ փոփոխիլը պիտի տեսնես. գեղածիծաղ շնորհք, բերկրալից զուարճութիւնք, կորով, առողջութիւնք եւ խնծիղք պիտի անցնին իբրեւ երազ գեղեցիկ, եւ նոցա տխուր յիշատակը միայն պիտի մնայ քեզ. հաճոյից թշնամի եւ անզօր ծերութիւնը պիտի գայ դէմքդ խորշոմեցունել, սրտիդ մէջ ուրախութեան աղբիւրը ցամքեցունել եւ անզգայ գործել զքեզ ամէն բանի բաց ի վշտաց։ Այս ժամանակն հեռի կը թուի քեզ։ Բայց, կը խաբուիս դու, որդեակ իմ. կ'աճապարէ նա, կը հասնի ահա. այն որ այնպէս արագ կ'ընթանայ չէ հեռի ի քէն. այլ հեռի է իքէն այն վայրկեանն որ կ'անցնի. քանզի կ'անհետի նա ի վայրկենին իսկ՝ յորում կը խօսիմք, եւ ոչ եւս կը դառնայ։ Մի՛ ուրեմն վստահիր ներկային վերայ, որդեակ իմ, այլ ականկառոյց յապագայն՝ քայլէ առաքինութեան խիստ ու ժեռուտ ճանապարհին մէջ։ Անբիծ վարուք եւ արդարութեան սիրով վայր մի պատրաստէ քեզ խաղաղութեան երանաւէտ օթեւանին մէջ։*

**Ֆենելոն** (Տելեմաք)

## Յ. ՑԼԱՄԱՐՏ

*Դաշտի մի մէջ կրկէս մի կայ լայնածաւալ զոր բազում սամիճաններ կը շրջապատեն. հոն օգոստափառ Թագուհին, որ ժողովրդեան հաճոյք հայթայթելով անոր սիրտը յինքն գրաւելու քաղցր արուեստին մէջ շատ յաջողակ է, կը հրաւիրէ յաճախ իւր զօրքերն՝ ի*

Հանդէս ցլամարտի, որ Սպանիացւոց ամէնէն սիրելագոյն տեսարանն է։ Անդ, երիտասարդ զօրավարներ, անզրահ, պարզ մետաքսեայ զգեստ մի կրելով, եւ միայն մէկ նիզակաւ զինեալ՝ ի նիւս արագաշարժ նժուգից աշտանակեալ՝ կու գան յարձակիլ ամեհի ցլուց վերայ եւ յաղթել։ Հետեւակ զինուորներ, աւելի եւս դիւրաշարժ, իւրեանց մազերն մի ցանցակերպ հիւսուածի մէջ ամփոփած, միով ձեռամբ ծիրանի քօղ մի, միւսովն սայրասուր սլաքներն են բռնած։ Դատաւորը կը կարդայ այն օրէնքն՝ որ կը հրամայէ չօգնել եւ ոչ մէկ պատերազմողին, ուրիշ զէնք չթողուլ նմա՝ բայց միայն նիզակ մի՝ սպաննելու, եւ ծիրանի մի՝ ինքզինքը պաշտպանելու համար։ Թագաւորք, իւրեանց բոլոր պալատականներէն շրջապատեալ՝ այսպիսի արիւնոտ խաղերու կը նախագահեն, եւ ողջոյն բանակն, ընդարձակ ամփիթատրոնները գրաւած՝ հաճոյից եւ խնդութեան ցոյցերով՝ կը յայտնէ իւր կատաղի սէրն՝ այն վաղեմի խաղերուն համար։

Նշան կը տրուի, վանդակը կը բացուի, ցուլը կրկէսին մէջ կը խոյանայ. բայց հազարաւոր նուագարանաց խառնաշփոթ ձայներէն, հանդիսականաց աղաղակներէն ու տեսիլէն շփոթած ու խռոված՝ զկայ առնու, իւր ռունգերէն ծուխ կը ծաւալի, իւր բոցավառ նայուածքով ամփիթատրոնը կը դիտէ, թուի թէ որս եղած է ապշութեան եւ մոլեգնութեան։ Յանկարծ կ'ոստնու ձիաւորի մի վերայ, որ կը վիրաւորէ զայն եւ կրկէսին միւս ծայրը կը փախչի։ Ցուլը կը զայրանայ, կը հալածէ զայն ի մօտուստ, կրկնակի հարուածները կը ծեծէ զերկիր, եւ կը դիմէ այն փայլուն քօղին վերայ՝ զոր հետեւակ զինուոր մի կը ներկայացունէ իւրեան։ Ճարտիկ Սպանիացին, այն

վայրկեանին, ցուլին առջեւէն խոյս կուտայ, Թեթեւ քօղը կը կախէ նորա եղջերաց վերայ, նորա կուշտն կը մխէ սրածայր տէգ մի եւ գամ մի եւս արիւն կը հոսեցունէ։ Ընդ հուպ բիւրաւոր տէգերէ ծակոտեալ, վիրաւորեալ այնպիսի նետերէ՝ որոց ծայրի կոր երկաթը վէրքին մէջ կը մնայ միշտ, կենդանին կ՚ոստոստէ կրկէսին մէջ, ահեղ մռնչիւններ կ՚արձակէ, սաստկատանջ կը յուզի շրջան ընելով հոն, կը թօթափէ այն բազմաթիւ սլաքներն որք իւր լայն վզին մէջ խրած են, միշրեալ գայլախազներ, արիւնաթաթաւ ծիրանեաց ծուէններ, բոսորագոյն փրփրոյ կոհակներ յերկինս կը ժայթքէ, եւ հուսկ ուրեմն՝ հիւծեալ յոգնած բռնկելով ալ ալէկոծ կը ժամուրակ արեան գույնէն ու արցունքէն.

Ցյուրիան

## 3. ՎՇՏԱՀԱՐ ԱՄՈՒՍԻՆՆ

### ԱՌ ՎԱՂԱՄԵՌԻԿՆ ՆԱԶԵԼԻ

Եկո՛ւր. այս սպածառ լուսնին տակ
 Ի՛նչ անոյշ է երազել.
 Մի տրտմիր, դեռ շատ մատաղ ես.
 Մեռնիլ չէ այդ, այլ ննջել։
Եկո՛ւր. նստինք ծովափին մօտ.
 Ձեռքըդ թող ձեռացըս մէջ,
 ԲԷՄՊԷ, ըսէ անուրջներդ ինձ՝
 Ամփոփէ վարսքդ յետ եւ էջ։
Ըսէ՛, ԲԷՄՊԷ, ծովեզեր քով
 Կը տեսնչա՞ս ապարանքներ,
 Որոց սեանց օդաթռիչ շարքը
 Կրկնեն կապոյտ ալիքներ։
Կը բաղձա՞ս, անմեղ աղջիկ դու,
 Նորաթեւ իմ քովս եկած՝

Լուսարձակ սրահներու մէջ՝
Ականջել տրտում նըւագաց։
Կամ ի նիւս հրաշունչ նաւու մը՝
Ալեհերձ արշաւելով
Այգեւէտ տեսնել կըղզեակս
Յանծանօթ ուրեք ի ծով։
Կամ կ՚ուզե՞ս առջի օրուան պէս
Դիմաղէմ հետըս նստած,
Ես ըսեմ թէ կը պաշտեմ քեզ՝
Եւ դու ժպտիս ամօթխած։
Կամ ննջես՝ ճերմակ ճակտիդ վրայ
Ոլորուն վարսքդ ցանուած,
Ու ձեռն ի ծնօտ քովդ հսկեմ ես՝
Հեշտ ցնորօք յափշտակուած։
Այլ վա՜հ, այդ կիսատ ժըպիտը
Որ այտիդ վրայ կը պլպլայ,
Երկնաթռիչ հոգւոյդ մէկ հետքը
Մէկ ցոլմունքն ինձ կ՚երեւայ։
Այլ դու դեռ ա՛յնչափ մատաղ ես,
Այնչափ դալար ու սիրուն,
Ո՛ր չէ մահու՝ այլ քընոյ մէջ
Ընկըղմեալ թուխս համբուն։
Եւ աղէխարշ կ՚ըսպասեմ ես
Ոտնաձայնդ սանդուխն ի վեր,
Եւ արծաթիկ քնքուշ ծիծաղդ որ
Հրեշտակաց արձագանգն էր։
Կը դիմեմ անձկաւ սենեակըդ՝
Սրտաբեկ դէտակն ընդ դուռն՝
Ո՛հ, Աստուա՜ծ իմ... հոս էր բոյնըդ
Բայց դու ո՞ւր ես, ո՞ւր՝ թռչուն։
Գլխիկոր՝ օրօրոցին վրայ
Դեռ մանկիկդ չը պագիր՝

Որ հետն երկինք տանելու զքեզ
Կարծես իջաւ լուկ յերկիր։
Եւ խապա՛ռ մինակ թողեր զիս.
Գիրկս անշունչ մարմինըդ կայ,
Եւ երկնից դալուկ կապոյտը
Այտերուդ վրայ կը ցոլայ։
Սէրդ այն ծիածան կամուրջն էր,
Որ երկրէս յանհո՜ւն սլացած՝
Անրջոց աշխարհներուն մէջ
Կ'առաջնորդէր իմ մտաց։
Այլ փշրեցաւ, ու ստուերաց մէջ
Կը դանդաչեմ՝ թշուա՜ռ կոյս,
Արիւնոտեցան քայլերս ալ
Ընդ ժայռ եւ փուշ թաքթաքուր։
Կաթնելով ապառաժի մը
Յոգնած ու անյոյս կը խորհիմ՝
Թէ ինչո՞ւ երբ դու գնացեր ես՝
Քաղցր հոգի, ես դեռ կ'ապրիմ։
Ի՞նչ. կենաց յանդնդախոր վիհ
Հազիւ բոյնդ ոլորեցիր՝
Լո՛յս ճակատ հրեշտակ՝ մրրիկ մը
Քայքայեց զայն ցան եւ ցիր։
Ի՞նչ. Հիւրի, երբ վարդերով լի՝
Պատմուճան քո օդային,
Թռչտէիր զուարթ՝ կայծակ մը
Իջաւ կապոյտ քո ճակտին։
Ի՞նչ, Բէմպէ՛, կարօտցած սիրտըս
Երբ կոչէ զքեզ, մըթաքող՝
Երբ ըզքեզ խնդրեն աչքերըս։
Դարձընե՞մ պէտք է ի հող։
Եւ ամպի սրահներուն մէջ
Որ քեզմէ զուրկ մըթընցան

Երբ յեղ յեղեմ քաղցր անունըդ՝
Շիրմէ՞ն տի գայ պատասխան։
Դեռ երէկ դալկահար դէմքըդ
Բաղկացըս մէջ հանգուցած՝
Մայր կուսան, կը ժպտէիր ինձ՝
Հոգիդ սիրով առ լցուած։
Եւ կ'ըսէիր ինձ. «Գարուն Նոր
Երբ վարդեր ցանէ չորսդին՝
Դու, զաւակս ու ես մէկ բոյն մը
Առանձնանանք միասին,
Նստինք հեռու ու հեշտ ցնորից մէջ
Մեր հոգին թող ընկղմի,
Ու երկնախօս թոթովանօքը
Թող մանկիկս ինծի ժպտի...։
Թէ գոնէ անշունչ մարմինըդ
Գրկերուս մէջ թողուին,
Խաբէի թերեւս ինքզինքըս
Թէ դու իմս ես տակաւին։
Բայց զքեզ՝ ո՜վ անպատում ցաւ՝
Կը տանին ինձմէ Բէյմալէս,
Ա՜հ կըզգա՞մ թէ սեւ հողին տակ
Մենիկ մինջիկ կը ննջես...։
Եւ շիրմէդ անօսր ամպի պէս
Դուրս կը խուժեն յիշատակք,
Իրենց վարդաներկ այտերն
Ըսքօղած 'ի մութ դիմակ։
Եւ գլխուս վերեւ պատոյտքին շուրջ
Իբրեւ ծիծառունք տարմատարմ,
Ու զմայլած կարծեմ հոգւոյդ հետ
Դեռ ապրիլ մի քանի ժամ։
Թէ անջինջ է այս վճիռը
Թէ անդարձ գնացեր ինէ,

Թէ հովիդ հրեշտակներու հետ
Ու մարմինկդ 'ի սեւ հողն է։
Թէ ողջամբ երթ... ո՛ր աստղիկն ալ
Քնքուշ տեսքդ արդ կը վայլէ,
Տրտմակոծ նոճիներուն տակ
Քունդ անուշ ըլլա՛յ՝ Բէմալէ՛։
Թէ չիրմին պաղ ըստուերաց մէջ
Զը չիջանիր հոգւոյն ջահ,
Թէ նորէն կը հիւսուին տեղ մը
Կապք սիրոյ զոր փշրեաց մահ։
Ո՛հ Բէմալէ՝ դու խմս ես հոն-ալ,
Քուկդ եմ ես՝ սրտիս հատոր.
Այս աշխարհս անգութ երազ մ'էր.
Թող ծագի սեւ լուծաւոր։
Իսկ թէ անյատակ վըհի մը
Քարէ մուտքն է գերեզման,
Քու անունդ յեղ յեղելով միշտ
Պիտի մտնեմ ընդ դուռն այն։
Առկայծեալ մըտքիս հուսկ շողը՝
Այդ վըհից մէջ կայլակած՝
Լուսաւորէ՛ վերջին հեղ մ'ալ
Ինձ քո պատկերդ անմոռաց։

**Թ. Թէրզեան**

## 4. ԲՈՅՆՔ ԹՌՉՆՈՑ

Հիանալի նախախնամութիւն մի կը տեսնուի թըռչնոց բոյներուն մէջ։ Մարդ, առանց յուզուելու, չկարէ նկատել զայս բարութիւնն աստուածային որ ակարին ճարտարութիւն եւ անհոգին նախատեսութիւն կու տայ։

Այն ինչ ծառերն կը բանան իւրեանց ծաղիկներն, անթիւ գործաւորներ իւրեանց աշխատութիւնները

կ՚սկսին։ Ոմանք հին պատի մի ծերպին մէջ երկայն յարդի շիւղեր կը բերեն, ոմանք եկեղեցւոյ մի պատուհաններուն մէջ շինուածներ կ՚որմեն, այլք ձիոց քաշէն ձար մի կը գողնան, կամ կը բերեն բրդի ծուէն մի զոր ոչխարը մորենւոյն վերայ ձգած է։ Փայտահարներ կան որ ծառոց գագաթին վերայ ոստեր կը կցորդեն իրարու. մանողներ ալ կան՝ որք ուղտափուշէն մետաքս կը հանեն։ Բիւրաւոր ապարաններ կը բարձրանան, եւ մէն մի ապարան բոյն մի է. իւրաքանչիւր բոյնի մէջ սիրուն փոփոխութիւնք կը տեսնուին. փայլուն ձու մի՝ աղուամազով ծածկեալ ձագի մի կը փոխուի, ձագը փետուր կ՚զգենու, իւր մայրը բոյնին մէջ յառն ելնել կը սովրեցունէ։ Ընդհուպ ձագը մինչեւ իւր որրանի եզրը կը հասնի, եւ անտի բնութեան վերայ առաջին ակնարկ մի կ՚արձակէ։ Իսկոյն երկիւղախառն հիացմամբ իւր եղբարց մէջ կ՚իյնայ՝ որք դեռ այս տեսարանը բնաւ չեն տեսած. բայց, ի կոչ իւր ծնողաց, միւսանգամ բոյնէն կը մեկնի օդոց այն թագաւորիկն, որ մանկութեան պսակը դեռ իւր գլխոյն շուրջը կը կրէ, այսուհետեւ կը համարձակի լայն երկնից կալ ի գնին, անվեհեր շրձեաց ալեծածան գագաթանց, եւ հայրենի կաղնոյն ստորոտը գտնուած խորաձոր մարգերուն։ Սակայն եւ այնպէս, մինչդեռ անտառք կը հրճուին խրբեանց նորեկ հիւրն ընդունելով, անդին ծեր թռչուն մի կ՚զգայ իւր թեւերուն պարտասումն, կու գայ կ՚իջնէ յեզր վտակի մի։ Անդ տխուր եւ մենիկ, մահուան կ՚սպասէ հանդարտիկ այն վտակին քով ուր երբեմն իւր հաճոյքներն երգեց, եւ այն ծառոց մօտ որ տակաւին կը կրեն իւր բոյնը եւ իւր քաղցրաձայն սերունդն։

**Շաթոպրիան**

## Ե. ՄԱՅՐԻԿՆ ՈՒ ՄԱՆԿԻԿ

Արագաթռիչ ահա սլանա՜յ Նաւինան․
Կապոյտ ալեաց վրայ ծիր կաթին գըծէ նաւն․
Եւ փոքր Աննան նայի ժըպտուն լոյս շաւղին․
Ըստի՛նք կարծէ նաւակն, եւ կաթ՝ ճերմակ ծիրն։

Մանկան այտից վրայ մօրն համբոյր թըրթռա՜յ դեռ․
Եւ մօր լանջաց վրայ ծածանի՛ դեռ ըստուեր
Գիրգ թաթիկին, որ արդ գըգուէ ստինք ու ծոց,
Որ վրայ դըրոշմ վաղիւ դիցեն շըրթունք բո՛ց։

Թըռչի՛ նաւակն․ երկարի ծիրն ու՚նդլայնի․
Հեղուկ ուղւոյն վրայէն կաթնեայ, փըրփրալի,
Գորովակաթ սեաւ ակնարկիք ելեքտրեա՛ն՝
Հըրճուանք բերեն, համբոյր տանին եթերեա՛ն։

Խայտա՜յ մանուկն․ եռալուսնա՛կ տակաւին՝
Չունի բարբառ, այլ աղու ձայն սըրտագի՛ն․
Մըրմընջէ՛ նա՝ ձըգեալ ըզթեւսն առ նաւակ,
Որ կէս մ'արդէն է փոքր՝ հեռո՛ւն՝ սեւորակ։

Հեռացա՛ւ մայրն, եւ ծածկի ծիրն ալ կաթին
Ընդ կոհակօք — կապոյտ թըռչո՛ւնք ալտաղտին —․
Այլ ակնապի՛շ կայ մանուկն յար ի լաստակ․
Մագնիս հըզօ՛ր են մայրական սիրտն եւ աչք։

Գընա՛ց մայրիկն․ էր ի խընջոյս՝ հրաւիրեալ․
Վեհ ակըմբոց-յինել կոչուած է նա միայլ․
Այլ մինչ համայնք ըզհըմայի՛չ միայն կինն այն
Տեսանէին, նա զիւրն Աննան տեսնէր միա՛յն։

Եւ ամեն ժամ, եւ ամեն տեղ, փոքր Աննան
Խընդրէր թեւօքն, աչօքն, ըզմայրն աննըման․
Ծառոց տերեւքն յուշիկ շարժող հեզ հովիկ
Գոգցե՛ս քաղցրիկ մօր բանսն հըծծէր առ մանկիկ․

Չի հողմաշարժ առ դալար թերթս ակնարկեալ

Ժըպտէր Աննան, եւ զիւրն երես լուսափայլ
Դարձուցանէր այսրէն՝ ուր ճանճն (1) ըսպիտակ
Փոխեալ ի կաթ էր զգաւն ալիս կապուտակ.
Եւ ուստի մայրն՝ ամպոց մէջէն (2), ջուրց վրայէն,
Դալարագեղ դիւթիչ ափանց ընդմէջէն,
Ցառեալ առ նա, ձայնեալ «Աննա՛, բարեա՛ւ մնա.»
Աներեւոյթ էր եղած, ո՛հ, ակամայ։

**Եղիա Տէմիրճիպաշեան (Գր. եւ Իմաստ. Շարժում)**

## Ե. *ՄԻՋԱՏՔ*

*Դարձունենք աչքերնիս բնութեան ստեղծած յոյժ ակար բաներուն, այն չնչաւոր չամանդաղներուն վերայ, որոց համար ծաղիկ մի աշխարհ մի է եւ կաթիլ մի ջուրն՝ ովկէանոս մի։*

*Վեհաշուք պատկերներ պիտի մոգեն մեր ուշն եւ ուրուշն։ Ոսկին, սուտակն ու շափիւղայն առատ առատ շնորհուեցան այն աներեւոյթ միջատներուն։ Ոմանք՝ կը փայլին ճակատնին զարդմանակօք զարդարուած, թմբուկ կը զարնեն եւ գոգցես պատերազմի համար զինեալ են, այլք գոհարակապ ապարօշ կը կրեն եւ իւրեանց հանդերձը լուրջ ու ծիրանի գոյներով կը շողշողայ։ Երկայն ակնոցներ ունին, իբր թէ իւրեանց թշնամիները տեսնելու համար, եւ վահան՝ նոցա դիմագրաւելու։ Են ոմանք՝ որ ծաղկանց հոտ կը բուրեն եւ հաճոյից համար ստեղծուած են։ Կը տեսնուին շղարշեայ թեւերով, արծաթեայ սաղաւարտօք, երկաթանման սեւ սուինօք, ալիքները շօշափելնին, մարգաց վերայ թեւածելնին եւ յօդս խի-*

(1) Mouche, ճանճանաւ կամ շոգենանճ :
(2) Շոգենաւին ծխոյն կ՚ակնարկուի :

զախելնին։ Աստ ամէն ճարտարութիւն ամէն արուեստ ի գործ կը դնեն, պզտիկ աշխարհ մի է որ իւր ոստայնակներն, որմնադիրներն ու ճարտարապետներն ունի. անդ՝ հաւասարակշռութեան օրէնքներն ու երկրաչափութեան գիտուն ձեւերը կը դիտեն։ Կը տեսնեմ նոցա մէջ ճամբորդներ՝ որ գիւտ ընելու կ'երթան, նաւուղիղներ՝ որ առանց առագաստի եւ կողմնացուցի, կաթիլ մի ջրոյ վերայ նոր աշխարհ գրաւելու համար կը նաւարկեն։ Ո՞վ է զանոնք լուսաւորող իմաստունն, նոցա ուսուցանող գիտնականն, նոցա առաջնորդող եւ հրամանատար դիւցազն։ Ո՞վ է այն Լիկուրկոսն որ այսչափ կատարեալ օրէնքներ տուաւ։ Ո՞վ է այն Որփէոսն որ ներդաշնակութեան կանոններն ուսոյց նոցա։ Ունի՞ն արդեօք աշխարհակալներ որ խողխողեն կամ փառաւորեն զնոսա, միթէ երկրիս մակերեւութին վերայ սողալնուն համար, զինքեանս տէր տիեզերաց կը կարծե՞ն։ Զմայլինք ակնկառոյց լինելով այս տեսակ թագաւորութեանց, հասարակապետութեանց եւ Արաբաց նման հրոսակներուն վերայ, եւ ուտիճ մի կարող պիտի լինի մատեղաց մեծութիւնը չափող միտքն զբաղեցունել, յուզել սիրտ մի որ ոչ իւիք կը լնու, եւ հրաշալեաց վարժ զարմացում մի յարուց կրթել։ Ահաւասիկ զազիր միջատ մի, որ մետաքսեայ հիւսկէնով կը պատատի եւ կը հանգչի վրանի մի տակ. ուրիշ մի կը գրաւէ օդէ պղպջակ մի, կը սուզի ի խորս ջուրց եւ օդակառոյց պալատան մէջ կը ճեմէ։ Ուրիշ մի ալ կայ որ խեցեաւ իւիք կը յօրինէ մի անձաւ հողմածփիկ եւ կը սպասէ զայն մի կանանչ ցօղունով։ Մանուկ մի տերեւներու տակ ոսկիէ, կապոյտ եւ ծիրանի թեւեր կը ձգէ, որոց երփն երփն ցոլացումն՝ ծիածանին կը նմանի։ Բայց յանկարծ ինչ փայլ կը տարածուի այս կենդանի հիւլէնե-

րու բոյլին մէջ։ Այս ճոխութեանց այլ ճոխութիւնք կը յաջորդեն։ Ահա միջատներ՝ որոց նուիրած է՝ արշալոյսն իր քաղցրանոյշ ճաճանչներն. սոքա ջահեր են կենդանի որք կը սփռին մարդոց մէջ։ Տես սա ճանճն՝ որ լուսնանման նշուլագեղ կը փայլի, ընդ իւր կը կրէ իւրեան առաջնորդ փարոսն։ Մինչդեռ կը խոզախէ յօդս, մի որդ իւր տակը կը սողայ, կը կարծես թէ ստուերի մէջ հետակորոյս պիտի լինի. յանկարծ երկնից բնակչի մի պէս լոյս կ'զգենու եւ յառաջ անդր կը խաղայ իբրեւ որդի աստեղաց։

Էմէ Մարթէն

## Դ. ԼՈՒՍՆԿԱՅՆ ԳԵՐԵԶՄԱՆԱՑ

Ո՛յ խմլուսնակ գեղեցիկ, աստուածավառ դու լապտեր
Զոր առաջնորդ գիշերոյ դըրաւ յերկինս ինքըն Տէր.
Կոյր մըթութեան աչք անփակ, սըրտիս այլ դու աչք
կուտաս

Երբ շողշողուն շըղթայով կախուած շարժիս յիմ վըրաս.
Քօթելն՝ երկնից արծաթ էին հիւսած, պատրոյգդ ալ ոսկի
Ադամանդէ կայծակներ սփռես զաստղերըդ չորս դի.
Եղի մեղրի նըման կաթ մի յամանէն յիս թափած
Կու խաղաղէ կըրքերս զինչ ալիք լըճիս հանդարտած։
Ո՜հ, ո՜նց պայծառ էիր դուն կենացդ երկրորդ գիշերին՝
Երբ նոր քաշուած Աստուծոյ ճախարակէն ընդ երկին.
Ո՜հ, ո՜նց փայլուն էր քո լոյսն՝ երբ առաջին այն անգամ
Գիշերազուարճ սըլըպուլիկըն ձըգեց ձայն երկնահամ.
Շունչըն պայծառ քեզ նըման հովտէ հովիտ կու խաղայր
Հեզիկ հովով թունդ ելած մաքուր առուակըն հեւայր,
Զըկայր ականջ հողեղէն որ զայն լըսէր ու փառք տայր,
Միայն հրեշտակք լըսէին եւ շարժէին ըղձեղ վայր.
Եւ դուն լըռիկ չափեցիր զանամպ երկնից կէս բոլոր,
Ծով՚ու ցամքի վարագոյր բացիր, ներքեւ մըտաբխոր,

Երբ արեգակըն կուգայր հրեղէն ոտօքն յօղս ի վաղ
Զարշալուսոյ ցօղ սփռէր եւ զառաւօտն հըրամազ:...
Կացի՛ր, արեւ, յետ կացի՛ր, մ՚ելներ յերկինքըդ կապոյտ
Թող լուսնեկիդ իման գալ դեռ ի մէջ թուխ ամպերոյդ.
Կա՛ց, կա՛ց, լուսնակ դու յառաջ, լեռնէ ի լեռ սարէ սար,
Մէջ ձորերուս, խորերուս անցի՛ր յուշիկ հաւասար.
Հետ քեզ ունիմ ես գանգատ, քեզ նահապետն ունի բան
Սիրտըն յերկուս է ճըղքած եւ ցաւերն, ո՛հ, զանազան.
Պայծառ լուսնակ, մի՛ փախչիր թէ տրտմութեան լը-
սես ձայն,
Ցաւած սրտի մխիթարանք եղուկանգնել յերկինքն այն
Ման գաս յերկիրն Եղեմայ, բայց ոչ ի հինն այն գիշեր,
Երբ երջանիկ էր դեռ մարդ, լոկ սէր ու կեանք կու յիշէր
Ձերմակ ճաճանչդ յայնժամ տաք էր ջըրերուն ու ծաղ-
կանց.
Ուր որ կաթէր քու շաղի՛կ՝ կենդանութիւն էր անանց.
Դարձի՛ր նայէ՛ հիմ՝ ի վայր, նայէ ի փէշ սարերուս,
Նայէ ի տափ տաճարիս, եւ ի հողրանք գեղերուս...
Ա՛հ, գերեզմանքն են Անոնց՝ որ ոչ եւս են յաշխարհի,
Մաշած նըշխարք մեր հարանց՝ թաղուած ի խորխաւարի.

Հ. Ղ. Ալիշան (Նուագք. Երգք Նահապետի)

## 8. ՆՈՐԱՀԱՍ ՄՏՔԵՐՆ

Ներկայիս մէջ ընդհանրապէս խորհող եւ տիրող անձինք խնամք չեն տանիր այն հանճարեղ· երիտասարդաց՝ որք խոհուն եռանդեամբ եւ անյողդողդ համբերութեամբ արհեստական ամէն ճիւղերու մէջ կը նետուին: Այս դեռատի մտքերն՝ որ մթոյ մէջ կ'եռան եւ կը յուզին, բաց դուռներու, օդոյ, լուսոյ, աշխատութեան եւ հորիզոնի պէտք ունին: Քանի՛ յաղթանակներ կրնար կանգնել մարդկութիւնն, եթէ ուզէ, այս հանճարներու լծկնով: Քանի՛ ջը-

րանցքներ կան բացուելու գիտութեան մէջ, քանի ճանապարհներ հարթուելու։ Քանի՜ քաղաքներ կան արհեստից մէջ նուաճուելու, քանի՜ աշխարհներ գըտնուելու։ Բայց ո՛չ, ամէն ապարէզները փակուած են կամ խափանուած։ Թող կու տան այսքան գործունեայ անձանց՝ որք օգտակար կարէին լինել, երթալ, խըռնուիլ, դիզուիլ, խեղդուիլ նեղ ու անել փողոցներու մէջ։ Կրնային բանակ մի ձեւացունել անոնք, այժմ թող եւ բոհ մի են լոկ։ Ընկերութիւնք դէհ դրից մէջ է նորամուից մասին։ Սակայն ամէն ոք միշտ իրաւունք ունի ապագայ մի յուսալու։ Ցաւալի բան չէ՞ արդեօք տեսնել բոլոր այս դեռահաս մուքերը մթին ափանց վրայ դիզուած, նման Վիրգիլեայ ստուերաց․ աչքերնին հեռո՜ւն դէպ 'ի լուսաւոր եզերքներ յառած, ուր փառք, փայլ, պերճութիւն, պատիւ եւ գանձեր կան կուտակեալ։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . շրջապատk Տխunîr աչեօf ղիճն աեէղի, եւ իննեկի hnuեաղ ըՍsիւfu Ըզնnfof խոչ արկանk....։

Անծանօթ եւ թշուառ արհեստաւորին համար Ստեւքօր գրավաճառն է որ ձեռագիրն առ նա վերադարձունելով՝ կ'ըսէ․ «Գնա՛ համբաւ ստացիր»․ թատրոնն է որ կ'ըսէ, «Գնա՛ համբաւ ստացիր»․ թանգարանն է որ կ'ըսէ, «Գնա՛ համբաւ ստացիր»։ Բայց Տէ՛ր Աստուած, թո՛յլ տուք որ նախ սկսին, օգնեցէ՛ք նոցա։ Միթէ հոյակապ անձինք ալ անծանօթ չէի՞ն, եւ ի՞նչպէս հնար է նոցա՝ որչափ հանճար ալ ունենան, հռչակել իւրեանց անունն, երբ չկայ թանգարան իւրեանց պատկերներուն համար, թատրոն՝ իւրեանց խաղուց համար, գրավաճառ՝ իւրեանց գրոց համար։ Բաւ չեն թաչնոյն թեւեր որ թռչտանու․ օդ պէտք է։

Մեք կը կարծեմք թէ արհեստի մէջ մանաւանդ, յորում մի անշահախնդիր նպատակ պարտի ոգեւորել բոլոր հանճարներն, պարտաւորութիւնն է նոցա որք արդէն հասած են, ճանապարհ հորդել նոցա՝ որք կու գան: Սարահարթին վերեւն էք, լաւ եւս, ձեռք կարկառեցէք նոցա՝ որք կը մագլցին: Ըսեմք 'ի փառս գրագիտաց թէ ընդհանրապէս այսպէս եղած է: Չկարեմք հաւատալ թէ արդարեւ կարենան գտնուիլ, որպէս կ'ըսեն, մատենագրական այնպիսի սարդեր որք իրենց ոստայնները թատրոններու դրանց վերայ կը հիւսեն եւ անկարեկիր՝ կը յարձակին աղքատ աննշան երիտասարդին վերայ որ կ'անցնի անտի, ձեռագիրն ընդ անթով. թէ այսպէս կը խլեն ճանճին թեւերն, համբաւն, գործն, մինչեւ իսկ ստակն անծանօթ եւ անզօր քերթողին, կ'ուզեմք յիրաւի չգիտնալ զայս 'ի պատիւ նոցա որք կը գրեն: Գալով այն տողերը գրողին, նուիրական է իւր համար ամէն նոր սկսող բանաստեղծ: Որչափ ալ փոքր է իւր տեղը մատենագրութեան մէջ, բայց եւ այնպէս միշտ մեկուսի պիտի քաշուի ճամբայ տալու նորեկ բանաստեղծի մի: Ո՞վ գիտէ թէ սա խեղճ ուսանողն որ քեզ մօտ կեցած է, օր մի Շիլլէր չպիտի լինի: Ըստ իս ամէն դպրոցական որ պատին վերայ շրջանակներ ու բոլորակներ կը գծէ, թերեւս Բասքալ մի է: Ամէն տղայ որ աւազին վերայ ուրուագրելով կ'զբօսնու, թերեւս Ճիօթօ մի է:

Վ. Հիւկօ (Իմպէր Կայլուա)

## 9. ԿԱՌՔ ԱՄՓԻՏՐԻՏԵԱՅ

Մինչդեռ զայսօրիկ Ագայէլ եւ Մենտոր ընդ միմեանս խօսէին, եւ ահա դլփինք թեփամորթք, ոսկեճաճանչք եւ կարմրայտք խաղային ընդ ծով՝ ամբառնալով փրփրադէզ զալիս: Զհետ նոցա գային Տրի-

տանք, զխեցիսն գալարափողս հնչեցուցանելով, շուրջ պար ածել զԱմփիտրիտեայ կառօքն՝ զոր ձգէին ծովաձիք. ձիւնափայլք հրացայտ աչօք եւ ծխաշունչ ռընգամբք, եւ որ հերձեալ զաղտաղտուկ ալիս՝ ակօս զհետ իւր թողոյր լայնատարր 'ի ծովուն, կոնք հրաշաղան ծովածին՝ սպիտակափայլ քան զփրփուր, յեց-յանիւս ոսկիս՝ որք ընդ խաղաղ մկանունս ջուրց թեթեւ սլանային: Գնային զհետ կառացն ի լոյղ յաւերժհարսունք ծաղկապսակք գունդագունդ, եւ վարսք նոցա զուսովքն ի շունչ հողմոց գեղածփեալ: Իսկ դիցուհւոյն զաւազան ոսկի յաջումն ի սաստ կոհակաց, եւ ի ձախմէ զծնդօք նորա ի ծուծ ստեանցն կախեալ որդեակն իւր, մանկիկ աստուածն Պալեմոն: Դէմք նորա զուարթատեսիլ, եւ մեծավայելուչ քաղցրութիւն ցածուցանէին զամպրոպս հողմայոյզս եւ զսեւաւ մրրիկ: Տրիտոնք զոսկեսանձ երիվարսն երասանակէին. լայնալիր 'ի վերոյ կառացն ծածանէր 'ի թուխս ծիրանեփայլ առագաստ, զոր առեալ 'ի քաղցրասիք շնչմանց զեփիւռից՝ որ թեւապարէին զնովաւ: Անդ Եւոլոս ժիրաժիր դայր երեւէր ընդ օդս եռանդուն եւ անհանդարտ, դէմք նորա տխուր եւ խոյշոմ, բարբառ սպառնալից, յօնք թաւք 'ի վայր անկեալք, եւ աչք նորա հրացայտք աղօտաձաձանչք եւ խոժոռք կարկէին զհիւսիսականս ամէհիս եւ ընկրկէին զամպրոպս: Անդ եւ կէտք անհեթեթք եւ նհանգք առ հասարակ անդնդայինք ծծեալ եւ զդայռեալ ընդ ռնգունս իւրեանց զաղտաղտուկ ալիս, խուժէին ճեպ 'ի ճեպ ի խորոց վհից 'ի զնին դիցուհւոյն

Տելեմաք (Թարգ. Հ. Ե. Հիւրմիւզ)

## 10. ԱՂՔԱՏ ՀԱՆՃԱՐԵՂ ՊԱՏԱՆԻՆ

Ի՜նչ կրակոտ է աս պատանին. իւր խուշոր աչերն

հանճարի հուրն ունին. եռանդուն է եւ խոհուն. գիշերոյն աստղերն ունի իր ճակտին վերայ եւ խոհքն մթին։ Աղքատիկ է բայց հարուստ պաւկին նախանձն կը գրգռէ։ Դասարանի գրասեղանին վերայ, իր ճակատըն, մի անդիմադրելի ձգողութեամբ, յինքն կը ձգէ միշտ դաստիարակին աչերն. այդ պայծառ եւ լուրջ երկնքին վերայ մի ապագայ կը կարդայ նա. մի մեծ բան կը նախազգայ այդ խարտեաշ գլխոյն մէջ։ Ինչպէս աստեղց անթիւ բազմութեան մէջ ոմանք, որ մի կենդանի լոյս ունին եւ ինքնաբուխ, յերկին եկած ամէն նայուած նախ նոքեանք կը գրաւեն, նոյնպէս անթիւ ուսանողներու մէջ մի անծանօթի հայեցուած առաջինն կանգ կ'առնու այդ պատանւոյ դէմքին վերայ. մի գաղափար է կենդանի, որոյ վերայ կը հանգչի ամէն միտք։ Վսեմ հետաքրքրութիւններ ունի. ծաղկին ցօղալից բաժակն նուազ անյագութեամբ կ'ըմպէ արփենի ճաճանչքն քան այս մատաղ ոգին դասատուին խօսքն։ Իւր տղայական խորհրդածութեանց մէջ մի նոր հոգւոյ բոյրն կ'զգացուի։ Տղայ, կը սիրէ պչնուլ ի գեղեցիկն, եւ ճշմարիտն խիստ հաճոյքներ ունի իւր համար։ Կ'զգամք թէ մի կաղնի կը բովանդակի այդ խոզկաղնոյն մէջ, թէ այդ արշալոյսն մի արեւ կ'ազդարարէ եւ թէ մի մեծ մարդ կայ այդ տղուն մէջ. «մի վսեմ տղայ է», որպէս Շաթոպրիան կ'անուանէր զՀիւկօ մանուկ։ Բայց աւա՜ղ, իւր հայրն աղքատ է. տղան տասնեւչորս տարեկան է. ինքն տկարացած է, թէպէտ դեռ երիտասարդ, զի կեանքն խիստ եղած է իւր համար, եւ մարդ շուտով կը ծռի այդ բեռին տակ. մի նեցուկի պէտքն ունի. այլ հարկ է որ գոնէ տղայն սկսի իւր կեանքն շահիլ։ Հրաժեշտ կուտայ պատանին իւր ուսումներուն. վարժարանին կը յաջորդէ կրպակն. մի գրքի տեղ մի գործւոյ վերայ կը-

*քած է, միտք չէ յղկածն՝ այլ երկաթ. այլ ամէն օր լսած ձայնն թերթերու թղթատման եւ գրիչներու թղթին վրայ շփման խորհրդաւոր շշունջն չէ, այլ մրճին գոռիւնն սալին վրայ: ի՜նչ անկում, խորտակում ապագայի, խաւարում աստեղ: Չանարգեմ արհեստն, չանարգեմ աշխատութիւնն, բայց ամէն ոգւոյ մի գործ. մին նիւթոյ գործաւոր, միւսն՝ հոգւոյ. սմա՝ գործի, նմա՝ գրիչ. միոյն երկաթ դարբնել, միւսոյն՝ միտք յօրինել: Աւա՜ղ, երբ հանճարն մեքենայ կը լինի..: Եւ քանի՜ հանճարներ, որք կարէին իւրեանց շուրջն աստուածային լոյս մի ծաւալել, կը խաւարին այսպէս, կը կորնչին թշուառութեան անդնդոյն մէջ, կը ջախջախին կը փշրին աղքատութեան ծանր երկանաքարին տակ:*

*Ա՜հ թշուառութիւն...:*

**Ռ. Ց. Պէրպէրեան** (Թշուառ. եւ Գութ)·



## ՎՍԵՄ ԿԱՄ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ ՈՃ

**1**. *Հ. Վսեմ կամ բարձրագոյն ոճոյ նկարագիրն ի՞նչ է.*

*Պ. Երբ բորբոքած է ոք ի կրից, այլ յայլմէ կը լինի և իւր գաղափարաց ու զգացմանց սովորական սահմանէն անդին կ՚անցնի, յայնժամ իւր երեւակայութիւնն ու սիրտը գրգռեալ և յափշտակեալ վիճակի մի մէջ են որուն պարտի պատասխանել ոճոյ մի նոր տեսակ. այս ոճն է վսեմն. ուստի վսեմ ոճն է՝ լեզու բորբոքեալ երեւակայութեան*

*և սաստկայոյզ կրից. յայն սակս բոլոր բարձրագոյն յատկութիւնք կը պատշաճին ոճոյ այս տեսակին. զգացմանց ուժգնութիւն, բացատրութեանց կորովութիւն, ձեւերու վեհութիւն, պատկերներու գեղեցկութիւն, չիք ինչ կարի մեծ, չիք ինչ կարի բուռն, չիք ինչ կարի մեծապայծառ այս ոճոյ համար։*

*Մովսէս, Իսրայելացիները Կարմիր ծովէն անցունելէ յետոյ, Աստուծոյ սքանչելեաց վերայ հիացած, հետեւեալ վսեմ օրհնութիւնը կ'երգէ առ Նա.*

## ՕՐՀՆՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԵՍԻ

(Ելից. ԺԵ. 1)

Յաղթական օրհներգութիւնք այնմ, որ փառօք փառաւորեալ.
Զձիեծեալըս թըշնամեաց եւ զերիվարս ընկէց ի ծով:
Օգնական ընդունելի եղեւ ինձ տէր ի փըրկութիւն.
Սա է Աստուած իմ, օրհնեցից զսա եւ բարձր արարից.
Սա է Աստուած հօր իմոյ, երգըս սըմա նըւագեցից.
Տէր խորտակէ զպատերազմունս, եւ տէր է յոյս անուն նորա.
Զկառս ըզզէն եւ զզօրութիւն Փարաւոնի ընկէց ի ծով.
Ընտիրք հեծելոց եւ սպառազէնք բըռնաւորին
Կորեան անդընդաստոյգ, ընկըղմեցան ի ծով Կարմիր.
Խորք ծածկեցին զնոսա. ընկլան յանդունդս իբրեւ զվէմ.
Աջ քո տէր, աջ քո հըզօր, փառաւորեալ է զօրութեամբ.
Աջ քո տէր, աջ քո հըզօր հար խորտակեաց զթըշնամին.
Եւ ի ճաճանչ փառաց քոց զընդդիմամարտըս մանրեցեր:
Առաքեցեր զբարկութիւն քո, եւ եկեր զնոսա
Որպէս բոց՝ զի ճարակի ծախէ զցամաք եղէգնաշամբ.
Եւ հողմով սըրտմըտութեան քո պատառեալ ալիք ծովուն
Պաղեցան որպէս պարիսպ, պաղեցան ջուրք վիմատառեալ:
Ասաց թըշնամին. Հալածեցից եւ հասից,
Բաժանեցից զկապուտ, լըցուցից զանձն իմ աւարաւ.
Սատակեցից սըրով իմով, տիրեսցէ ձեռն իմ ի նոսա:
Առաքեցեր զհողմըն քո, եւ ծով ծածկեաց զթըշնամիս.

Ընկըղմեցեր ըզնոսա որպէս կապար ի խորս ալեաց։
Ո՞վ է Աստուած իբրեւ ըզքեզ փառաւորեալդ ի մէջ սըրբոց,
Որ սքանչելի փառօք սաստես, եւ հնազանդին քեզ համագոյք,
Ձըգեցեր զաջ քո եւ եկուլ երկիր ընկլոյզ ըզնոսա.
Ածեր արդարութեամբ ըզժողովուրդ քո զայս փըրկեալ,
Եւ զօրութեամբ քո սփռեցեր ի բանակետըղ ասուրբ քոյին։
Լըւան ազգք եւ բարկացան, երկունք կալան ըզ հեթանոսս.
Ցայնժամ իշխանք մովաբացւոց եւ դատաւորք Եդովմայ
Ահիւ մեծաւ տագնապեցան, անկաւ դողումն ի նոսա.
Եւ բնակիչք քանանացւոց ըլքան լուծան վըհատեցան։
Անկցի զնոքօք ահ եւ երկիւղ, ի սաստ բազկի քո քարացին,
Մինչեւ անցցէ տէր ժողովուրդ քո այս աջովըդ քով փըրկեալ,
Մինչեւ անցցէ անվըտանգ ժողովուրդ քո՝ զոր ըստացար.
Տարեալ ի լեառն անդր ըզնոսա ժառանգութեան քո տընկեսցես
Ուր պատրաստեալ քո բնակութիւնդ է խոեղւոջըն սըրբութեան,
Զոր ձեռք քո տէր պատրաստեցին, զոր արարեր տէր սրբութիւն
Տէր թագաւոր յաւիտեան, եւ յաւիտեանս անդր ի յեւեւս.
Զի երիվարք Փարաւոնի հանդերձ կառօք եւ հեծելովք
Եւ սպառազէնք նորա ընտիրք ընկղմեցան անդրնդախոր.
Ած ի վերայ նոցա տէր ըզլեռնացեալ ջուրըս ծովուն,
Գնալով որդւոցն Իսրայելի ցամաքաբեւ ի մէջ ալեաց։

Հ. Ող. Հիւրմիւզ (Տաղաչափեալ)]

*Հ. Վսեմ ոճն ինչ նիւթերու կը պատշաճի,*

*Պ. Վսեմ ոճը կը պատշաճի բանաստեղծութեան, պատմութեան և փիլիսոփայութեան, երբ մի մեծ և բարձր նիւթ է զոր կը ճառեմք, այսինքն Աստուած, մարդ և բնութիւն։ Պիւֆոն ըսած է.*

*«Իմաստասիրին բարբառն կարէ լինել վսեմ ամէն անգամ երբ պիտի ճառէ զօրինաց բնութեան, զհամագոյից, զմիջոցէ, զնիւթոյ, զշարժմանէ եւ զժամանակէ, զհոգւոյ, զմարդկային մտաց, զզգայութենէ, զկրից. այլ նիւթոց մէջ, շատ է եթէ ազնիւ եւ բարձր լինի։ Բայց պերճախօսն եւ բանաստեղծն, երբ մեծ է*

*նիւթն, պարտի լինել միշտ վսեմ, զի ձեռնհաս են նոքա յաւելուլ իւրեանց նիւթոյն մեծութեան այնքան երանգ, այնքան կենդանութիւն, այնքան երեւոյթ որքան հաճոյ է նոցա։»*

**3Դ.** ***Ո՞րք են վսեմ ոճոյ պատշաճագոյն յատկութիւնք,***

***Պ. Վսեմ ոճոյ պատշաճագոյն յատկութիւնք են.*** 1) ***Կորովութիւն*** (l'Energie). 2) ***Ուժգնութիւն*** (la Véhémence). 3) ***Պերճութիւն*** (la Magnificence) ***և*** 4) ***Բուն Վսեմ*** (le Sublime proprement dit).

---

## ԿՈՐՈՎՈՒԹԻՒՆ

**1.** ***Հ. Ի՞նչ է Կորովութիւնն,***

***Պ. Ոճոյ կորովութիւնն այն յատկութիւնն է որ զգացումը կամ գաղափարը կը սեղմէ քիչ բառերու մէջ, զայն աւելի զօրեղ և աւելի սաստիկ բացատրելու համար։ Ուստի կորովի են բացատրութեան կարճ ու հզօր կերպեր, քիչ բառերու մէջ հակադիր իմաստներ պարունակող ասացուածներ, և բառեր՝ որոց վերայ կը գումարի զգացմանց և գաղափարաց յորդութիւն մի։***

***Ահաւասիկ օրինակներ ոճոյ կորովութեան սոյն իւրաքանչիւր կերպերուն.***

*— Հանրի Դ. սա խօսքերը կ'ուղղէ ճակատամարտի օր մի առ իւր զօրս մերձ ի կռիւ «Ես ձեր թագաւորն եմ, դուք Գաղիացի էք, ահա թշնամին։»*

*— Գաղիոյ 89ի յեղափոխութեան ժամանակ երբ*

մարքիզ մը գալով Թագաւորին կողմանէ հրամայեց ժողովրդեան կուսակից Երեսփոխանաց որ ցրուին ժողովատեղիէն, Միրապոյ պատասխանեց. «Դացէք ըսէք ձեր տիրոջ, թէ մենք հոս եկած ենք ժողովրդեան կամօք. ուրիշներու զօրութեամբ միայն կարելի է վանել զմեզ աստի։»

— Մեծն Նաբոլէոն իւր յաղթական բանակին գլուխն անցած երբ կը հասնի յԵգիպտոս, բրգանց ստորոտը, քաջալերելու համար իւր զօրքերն հետեւեալ խօսքերն կ'ուղղէ առ նոսա «Զօրականք, դուք այսօր Եգիպտոսի տիրապետաց դէմ պիտի պատերազմիք. խորհեցէք որ այս յիշատակարանաց բարձունքէն քառասուն դարեր զձեզ կը դիտեն։»

— Միլտոնի Դրախտ կորուսեալին մէջ, Սատանան իւր յուսահատութեան մէջ կը գոչէ.
«Լաւ ի դժոխս է տիրել՝ քան թէ յերկինս լինել գերի.»

— Մասիլեօն իւր ճառերէն միոյն մէջ հետեւեալ կորովի աղաղակը կ'արձակէ. «Ամէն ինչ կը փոխուի, ամէն ինչ կ'անցնի, ամէն ինչ կը ջնջուի. Աստուած միայն կայ եւ մնայ անփոփոխ։ Դարուց հեղեղն՝ որ բոլոր մարդկային ազգը կը յափշտակէ կը տանի, կը հոսի նորա աչաց առջեւ, եւ ցամաքը կը տեսնէ որ այս արընթաց հոսանքէն յափշտակուած տէր մանկանցուք, յանցանելն իւրեանց կը թշնամանեն զինքն՝ այս մեծ վայրկեանն իւրեանց երջանկութիւն համարելով, եւ յեղանելն անտի՝ կ'իջնան նորա բարկութեան եւ արդարութեան յաւիտենական ձեռաց մէջ։»

— Ազգային վաղամեռիկ բանաստեղծ, Պ. Դուրեան, քանի՜ն կորովի է երբ իւր դեռածաղիկ կենաց յետին վայրկեաններուն մէջ հետեւեալ վսեմ աղօթքը կը բառնայ առ Աստուած։

## ՏՐՏՈՒՆՋՔ

Է՜հ, մընաք բարով, Աստուած եւ արեւ՝
Որ կը պըլպըլաք իմ հոգւոյս վերեւ…։
Աստղ մ'ալ ես կ'երթամ յաւելուլ երկնից,
Աստղերն ինչ են որ՝ եթէ ոչ անբիծ
Եւ թշուառ հոգւոց անէծք ողբագին՝
Որք թըռին այրել ճակատն երկնքին.
Այլ այն Աստուծոյն՝ չանթերո՜ւ արմատ՝
Ցաւելուն զէնքերն ու զարդերն հըրատ…։
Այլ, ո՜հ, ի՞նչ կ'ըսեմ… չանթահարէ զ'իս,
Աստուա՛ծ, խոկն հըսկայ փշրէ հիւլէիս՝
Որ ժայռըհի ձգտել՝ սուզիլ խորն երկնի,
Ելնել աստղերու սանդուխքն անալի…։
Ողջոյն քեզ, Աստուած դողդոջ էակին՝
Շողին՝ փըթիթին՝ ալւոյն ու վանքին,
Դու որ ճակտիս վարդն եւ բոցն աչերուս
Խըլեցիր թրթռուն չրթանց թռիչն հոգւոյս,
Ամպ ըրիր աչացս, թեւք ըրիր սրտիս,
Ըսիր մահուան դուռն ինձ պիտի ժպտիս,
Անշուշտ ինձ կեանք մը կազմած ես եռքի,
Կեանք մ'անհուն շողի՝ բոյրի՝ աղօթքի
Իսկ թէ կորնչի պիտի իմ հծւակ շունչ,
Հոս մառախուղի մէջ համր անշըշունչ,
Այժմէն թո՛ղ որ շանթ մ'ըլլամ դալկահար՝
Պլլուիմ անուանըդ մռընչեմ անդադար,
Թող անէծք մ'ըլլամ քու կողըդ խըրիմ,
Թող յորջորջեմ քեզ «Աստուա՛ծ ոխերիմ։»
Ո՜հ կը դողդոջեմ, տժգոյն եմ տժգո՜յն,
Փըրփըրի ներսըս դըժոխքի մ'հանգոյն…։
Հառաչ մ'եմ հեծող նոճերու մէջ սեւ,
Թափելու մօտ չոր աշնան մէկ տերեւ…։

Ո՜հ, կայծ տուէ՛ք ինձ, կայծ տուէ՛ք, ապրիմ...
Ի՛նչ, երազէ վերջ գրկել ցուրտ շիրիմ...
Այս ճակատագիրն ինչ սեւ է, Աստուած,
Արդեօք դամբանի մուրո՞վ է գծուած...
Ո՛հ, տուէ՛ք հոգւոյս կրակի մի կաթիլ,
Սիրել կ՚ուզեմ դեռ ւ՚ապրիլ ու ապրիլ՝
Երկնքի աստղե՛ր, հոգւոյս մէջ ընկէ՛ք,
Կայծ տուէ՛ք՝ կեանք՝ ձեր սիրահարին հէք։
Գարունն ո՛չ մէկ վարդ ճակտիս դալկահար՝
Ո՛չ երկնի շողերն ժըպիտ մ՚ինձ չ՚են տար,
Գիշերն միշտ դագաղս, աստղերը ջահեր,
Լուսինն յար կուլայ խուզարկէ վըհեր։
Կ՚ըլլան մարդիկ որ լացող մը չ՚ունին,
Անոր համար Նա դըրաւ այդ լուսին.
Եւ մահամերձն ալ կ՚ուզէ երկու բան,
Նախ կեանքը, վերջը՝ լացող մ՚իր վըրան։

Դդ. Հ. Ոճոյ կորովութեան մօտ թերութիւնն ո՞րն է.

Պ. Ոճոյ կորովութեան մօտ թերութիւնն է չափազանցութիւնն և յոռի ճաշակն։ Չէ պարտ կորովի համարել անհեդեդ բացատրութիւններ և տարօրինակ ու կարի յանդուգն ու անըմբռնական ձեւեր։

## ՈՒԺԳՆՈՒԹԻՒՆ

Հ. Ի՞նչ է Ուժգնութիւնն.

Պ. Ուժգնութիւնն է վերին աստիճան կորովութեան, կրից սաստկութենէն ոգեւորեալ. և յա-

ռաջ կուգայ ոչ այնչափ խօսքերուն զօրութենէն որչափ բացատրութեան բուռն կերպէն և ընթացքէն. հոյլ մը է գաղափարաց և զգացմանց որք կը յաջորդեն միմեանց հապըշտապ և կը դիզուին յուզեալ պերճախօսին մտաց և սրտին մէջ և ապա դուրս կը զեղուն նորա շրթունքէն։ Ուժգնութիւնն է, կ'ըսէ Ռոլէն, որ կը յափշտակէ զարմանք և ծափ. նա է որ կ'որոտայ, որ կը շանթէ, և որ, նման արագահոս և բուռնընթաց գետոյ, կ'առնու կը տանի և կը տապալէ զամէն դիմակաց։

Հետևեալը գեղեցիկ օրինակ մի է ոճոյ ուժգնութեան։

Վիկտոր Հիւկօ, Փարիզու պաշարման ժամանակ, ի մարտ կը հրաւիրէ գերմանական մահաշունչ լէգէոններուն դէմ, իւր համայն հայրենակիցներն, փրկելու համար Գաղիան, իւրեանց հայրենիքն։

«...Թող համօրէն քաղաքացիք յոտն ելնեն, թող համայն գիւղեր ի հուր դիմեն, եւ բոլոր անտառները զոռան ձայնիւ որոտընդոստ։ Հնչեցուցէ՛ք, զանչեցուցէ՛ք զանգակներն. Թող ամէն տուն մի զինուո՛ր ելնէ. ամէն արուարձան մի գո՛ւնդ թող լինի, թող ամէն քաղաք մի ճամբա՛ր լինի։ Ութ հարիւր հազար են Բրուսիացիք, դուք քառասուն միլիօն էք։ Յոտն կացէք, եւ փչեցէ՛ք ի նոսա։ Լիլ, Նանթ, Թուր, Պուրժ, Օրլէան, Տիժոն, Թուլուզ, Պայեօն, պնդեցէ՛ք ձեր մէջքն։ Ի չո՛ւ։ Լիո՛ն, ա՛ռ հրացանդ. Պորտօ՛յ, ա՛ռ քո կարբինն (carabine). Ռուէ՛ն, քաշէ՛ սուսերդ, եւ դո՛ւ, Մա՛րսէյլ, երգէ՛ քո երգն եւ ե՛կ ահաւոր։ Քաղաքնե՛ր, քաղաքնե՛ր, քաղաքնե՛ր, Նիզակախուռն

անտառներ կազմեցէք, ձեր սուինները խիտ առ խիտ կուռ գործեցէք, լծեցէք ձեր թնդանօթներն, եւ դու, աւան, առ քո երկժանին (fourche)։ Զունին վառօդ, չունին ռազմամթերք, չունին հրետանի։ Սխա՛լ, ունին ամենայն ինչ։ Թո՛ղ գայս. Զուիցերացի գիւղացիք կացին միայն ունէին, Բոլոնիացի չինականք գերանդի լոկ ունէին, եւ Բրիտանացի գեղջկայք բիր եւ եթ ունէին։ Եւ ամէն ինչ աներեւոյթ կը լինէր նոցա առջեւ։ Ամէն ինչ ձեռնտու է որում բարի կը գործէ։ Մեք առ մեզ եմք։ Ոչ եղանակէն երկիւղ ունիմք, ոչ սառնաշունչ հովմերէն եւ ոչ ալ անձրեւէն. Պատերազմ կամ Ամօթ։ Կամեցողն է կարող։ Մի յոռի հրացան ընտիր է երբ սիրտն է արի. մի հին բեկոր կացնի է անպարտելի երբ բազուկն է քաջարի։ Սպանիացի չինականք էին որ դիր եւ տար ըրին զՆապոլէոն։ Հապ՛ օն, ձեզ տուք, առանց օր մի, ժամ մի կորուսանելու. թող իւրաքանչիւր ոք, հարուստ, աղքատ, գործաւոր, քաղաքացի, երկրագործ, առնու իւր տունէն կամ ժողովէ գետնէն ամէն ինչ որ կը նմանի զինու կամ ռմբի։ Ժայռեր թաւալեցէք, խիճեր դիզեցէք, խոփերն՝ ի տապար եւ ակօսներն ի փոս փոխեցէք. պատերազմեցէք այն ամէն բանով որ ձեր ձեռաց տակ կ՚իյնայ. առէք քարերն մեր Նուիրական երկրին, քարկոծ ըրէք յափշտակիչներն ոսկորներով մեր մօր Գաղիոյ։ Ո՛ քաղաքացիք, ճանապարհին կոպիճներուն մէջ, ինչ որ նետէք նոցա երեսին, հայրենիքն է այն։

Թող ամէն մարդ Գամիյլ Տէմուլէն լինի, թող ամէն կին՝ Թերուանեը եւ ամէն պատանի՝ Պարա։ Ըրէ՛ք ինչպէս ըրաւ յովազորսն Պոնպոնէլ, որ, հնգետասան արամբք, սպաննեց քսան Բրուսիացի եւ երեսուն գերի տարաւ։ Քաղաքաց փողոցները թող լափլիզեն զթշնամին, պատուհանը թող բացուի մոլե-

գին, տունը թող նետէ իր կարասին, եւ տանիքն իր կղմինտրն, թող պառաւ մայրերն սրտմտած ցուցունեն իրենանց մազերն աղերէկ : Թող շիրիմք աղաղակեն, թող ամէն պարսպի ետեւ կարծուի ժողովուրդն եւ Աստուած, թող բոց մի ելնէ ամենուրեք գետնէն, թող ամէն մացառ լինի մորենին բոցավառ : Ի նեղ արկէք ատա թշնամին, շանթակոծեցէք անդ զայն · հասէք, բռնեցէք պաշարաբարձ սայլերն, խորտակեցէք վառօդակիր եւ գնդակատար սայլակներն, քանդեցէք, փլուցէք կամուրջներն, խանգարեցէք ճանապարհներն, խորագոյնս բրեցէք հողն, եւ թող Գաղիա Բրուսիացւոյն տակ անդունդ լինի : . . . Զտիւ եւ զգիշեր պատերազմ տալով մարտնչինք, պատերազմ լերանց, պատերազմ դաշտաց, պատերազմ անտառաց : Արի՛ք, արի՛ք : Ոչ եւս գինադուլ, ոչ եւս հանգիստ, ոչ եւս քուն : Բռնակալութիւնը կը յարձակի ազատութեան վերայ, Գերմանիա սպաննել կ'ուզէ զԳաղիա : Թող մեր հողոյն մթագին տալըն ձեան պէս հալի այս բանակն մեծատարած : Թող եւ ոչ մի կողմն Գաղիոյ պարտազանց գտնուի : Հա ընեեաց զահանդելի ճակատամարտն յարդարենք : Ո՛ արձակաղէնք (franc-tireur), գնացէք, մացառաց թաւուտներէն եւ հեղեղներէն անցէք, խաւարէն եւ վերջալուսէն օգուտ քաղեցէք, օձասողիկ սպրդեցէք խոխոմից մէջ, ի սող գնացէք, յարդարեցէք հրացանն, արձակեցէք, բնաջինջ բնաբարձ ըրէք ասպատակն : Պաշտպանեցէք Գաղիան դիւցազնութեամբ, յուսահատութեամբ, խանդաղատանօք : Ահարկու լերուք, ո՛վ հայրենակիցք : Ցայնժամ զկայ առէք միայն, յորժամ անցնիք հիւղակի մի առջեւէն, որպէս զի համբուրէք ճակատը մանկան՝ որ կը ննջէ անդ :

Զի մանուկն ապագայն է : Զի ապագայն Հասարակապետութիւնն է :

## ՊԵՐՃՈՒԹԻՒՆ

**1.** Հ. Ի՞նչ է Պերճութիւնն.

Պ. Պերճութիւնն է ճոխութիւն զոյգ ընդ մեծութեան. պարտի ուրեմն ընծայեցունել մեծ գաղափարներ մեծաշուք պատկերներով արտայայտուած։

Ահաւասիկ օրինակ մի պերճ ոճոյ.

### ՀՐԱԲՈՒԽ ԼԵՐԱՆ ՄԻ ԺԱՅԹՔՈՒՄԸ

Եւ ահա յեղակարծումն, գիշերային խոր լռութեան մէջ, ահագնաձայն թումբիւն մի լսելի եղաւ. ի հեռուստ կը լսուէին ծովուն փարազագոչ մռնչիւնն եւ դէզզադէզ լեռնակարկառ կոհակաց թաւալումներն ափանց վերայ. ստորերկրեայ եւ խորափիտ վայրերն կը բաղխէին յերկար խիտ առ խիտ հարուածով. Երերակոծ կը տատանէր երկիրն ոտից տակ մարդկան որք զարհուրած՝ այսր անդր կ'ընթանան աղջամղջից մէջ թանձրամած։

Մօտակայ լեռ մի, փեռեկելով կը պատառէր ճգամբ, եւ այերց մէջ կ'արձակէ սիւն մի տարաշէկ որ, ի մթան անդ խաւարամած գիշերոյ, շուրջանակի կը սփռէ լոյս մի շառագոյն եւ տխրանշոյլ։ Անարգել վէմեր կը թռչին. կը սուրան յընդհանուրս. շանթն կը ճայթէ եւ կ'իյնայ. հրեղէն ծով մի, յառաջ խաղալով արշաւասոյր, կ'ողողէ անդերն. ահա կը մօտի, եւ ամէն բոցաձորակ կ'այրին անտառք. Երկիրն ոչ այլ ինչ կ'ընծայէ ի տեսիլ աչաց բայց միայն պատկեր լայնածաւալ հրդեհի զոր վառ եւ բորբոք կը պահեն հրդեհակէզ նիւթոց յաղթ չեղջակոյտներ եւ զոր հողմերն սաստկաշունչ եւս քան զեւս կը բորբոքեն։

Ցո՛ կը փախչիք. վատաբախտիկ մահկանացուք. յո՞ր վայր եւ դիմէք ապաստանի մի ի խնդիր, մինչպէս պիտի ճողոպրիք մահուանէն որ մօտ առ կուրծս կայ ձեզ: Նորանոր անդունդներ կը բացուին ձեր ոտից տակ, նորանոր մրրիկներ բոցոյ, ժայռից, աճեանց եւ ծխոյ փաթթուելով կը սուրան դէպ ի ձեզ լերանց գագաթներէն. եւ ծովն փրփրակուտակ, շանթից շառայլէն շողացած, իւր ափունքէն վեր կը բարձրանայ եւ յառաջ կը խաղայ կլանելու համար զձեզ.

Սակայն այս ահարկու երեւոյթներն կը ցածնուն տակաւ առ տակաւ, հրատք կը շիջանին, ծովն, կէս ինն հանդարտացած, առ ինքն կը քաշէ միահամայն իւր ալիքներն յորձնեռանդն, երկիրն անդրէն կը կայկայի, կը լռեն աղմուկք եւ վարդամատն այգ ճաճանչէ ի շող: Ո՛րպիսի ողորմ եւ տխուր տեսարան կ'ընծայէ աչաց դաշտն այրեցուեր: Անդ այլ եւս կը տեսնուին միայն խանձողներ, յաղթ խարոյկներ՝ յախուռն մի զմիով շեղջակուտուած, յորդահոս հեղեղներ տապետանդն հրափրփրոյ, ծառեր որք տակաւին կ'այրին բոցատոչոր, եւ տխուր նշխարներն այն չարաբաստից որք ի կորուստ մատնուեցան այս դառնաղէտ Թըշուառութեանց մէջ:

Ամպամած երկինք մի, այս սգատեսիլ իրաց վերայ, աղօտ եւ նսեմ փայլ մի կ'արձակէ միայն. մահահամբոյր լռութիւն մի օդոյ մէջ կը տիրէ. բոցական թնդիւնք նորանոր աղետից են ազդարար, եւ ծովը խուլ մըռընչմամբ կը պատասխանէ տխրահնչակ գոռմանց զորս լսելի կ'ընեն երկրի անդնդախոր քարայրներն:

Մարդիկ սրտատրոփ եւ սրտաթունդ, խռնուած միահամուռ այն միակ վայրին մէջ որ բոցերէն զերծ մնացած էր, բազկատարած յերկինս, ի միակ ապաւէն իւրեանց, կ'ողբեն յայնժամ իւրեանց ջերմեռանդն

աղօթներն առ նա որ կը հրամայէ ծովուն եւ չանթին։ Իւրեանց աղօթքն համառօտ է այլ խանդաղատիչ. կը կրկնեն եւ կ'երկրկնեն զայն, եւ, ի մէջ մի նուագ, եւս քան զեւս ազդեցիկ եղանակաւ. գոգցես իմն գուն կը գործեն հասցունել իւրեանց ձայները մինչեւ առ էն զորոյ գթութիւնը կը հայցեն. բոլոր նշանները այն կրից որք կը յուզեն զանոնք, սոսկման, բուռն տագնապի եւ թաղծանաց, կը խառնուին այն մրմնջոց հետ զորս մեծաւ ճգամբ լսելի կ'ընեն։

**Լասեպէս**

Քանի՜ն պերճ է նաեւ Սաղմոսին հետեւեալ բացատրութիւնն.

«Խոնարհեցոյց զերկինս եւ էջ, եւ մէգ ի ներքոյ ոտից նորա։ Եւ ի քերովբէս, թռեաւ սլացաւ նա ի թեւս հողմոց։»

Ձդ. Հ. Պերճութեան մէջ ի՞նչ խութերէ պէտք է զգուշանալ.

Պ. Պերճութեան մէջ զգուշանալու խութն է փքանք (Enflure) որ կը կայանայ սխալ գաղափար մի պերճաշուք ասացուածով բացատրելու կամ փքացուցեալ բառերու կիրառութեամբ գաղափարներն քան զոր ենն մեծ երեւցնելու մէջ։ Այսպէս կ'ըսէ պատմագիր մի խօսելով Պոմպէոսի մահուան վրայ.

Երկիրն որ իւրեան պակսեցաւ իւր յաղթութեանց համար, պակսեցաւ նաեւ իր շիրմին համար։

Այնքան սխալ գաղափար որքան ուռուցիկ է բացատրութիւնն։

## ԲՈՒՆ ՎՍԵՄ

*Հ. Ի՞նչ է Բուն վսեմն։*

*Պ. Բուն վսեմն ամէն սեռերու մէջ ընդարձակութեան, մեծութեան և բարձրութեան այն յետին աստիճանն է որում մարդկային միտքը կարէ ժամանել. յապուշ կը կրթէ և կը յափշտակէ կը տանի զմեզ անդր քան զսահմանս իսկ երեւակայութեան։ Հետեւեալ օրինակները լաւագոյն ևս պիտի սահմանեն զայն։*

*Սկիպիոն ժողովրդեան երկու տրիբուններէն ամբաստանուած էր իբր հարստահարիչ, փոքր միւս եւս պիտի ընկճէր ատելութեան եւ նախանձու խարդաւանաց տակ, երբ ժողովրդեան ատենին մէջ ներկայացաւ եւ ի բեմ ելնելով՝ ի պաշտպանութիւն անձին ըսաւ միայն.*

«Հռովմայեցիք, այսպիսի օր մի էր որ ընդ լծով ձեր օրինաց կացուցի զԿարքեդոն. երթանք շնորհակալ լինել դից ի Կապիտոլ։

*Բոլոր քաղաքացիք հետեւեցան նմա, երկու չարախօս տրիբուններն իսկ, եւ մեր սրտերն, կ՚ըսէ Վոլթէր, դեռ կը հետեւին նմա։ Վասն զի Սկիպիոն վսեմ եղած էր, եւ վսեմին տրուած է տիրել ամէն սրտի եւ մտաց։*

*— Նախկին ամիրապետաց զօրավարներէն մին, Տէրար, տեսնելով որ տաճիկները կը փախչին, կը գոչէ.* «Ո՞ւր կը վազէք, հոն չէ թշնամին։ Ձեզ ըսին թէ ամիրապետը սպաննուեցաւ, էհ, ինչ փոյթ նա կենդանի լինի թէ մեռեալ. Աստուած կենդանի է, եւ զձեզ կը դիտէ։»

**2դ.** Հ. Վսեմը կարէ՞ սովորական և տեւական լինել.

Պ. Այս տեսակ վսեմն հարկաւ անօսր և վայրկենական կը լինի, զի ինչ որ ծայրայեղ է չկարէ սովորական և տեւական լինել. խօսք մի, բառ մի, շարժում մի, ձեւ մի է. փայլակի կամ շանթի տպաւորութիւնը կ՚ընէ այն և այնքան անկախ է արուեստէն զի կարէ արուեստին բնաւին անտեղեակ անձանց վերայ իսկ գալ յերեւան։ Ահաւասիկ օրինակ մի.

Մայր մի իւր միամօր որդին մահամերձ վիճակի մէջ տեսնելով կը վշտանար անմխիթար. քահանայ մի կը ջանայ սփոփել զայն ըսելով նմա թէ Աստուած առ ինքն կը կոչէր իւր զաւակը, եւ օրինակ յառաջ կը բերէր Աբրահամու անձնուիրութիւնն, որ, Տիրոջ կամքը կատարելու համար, պիտի զոհէր իւր Իսահակ որդին։ «Ո՛հ, գոչեց կինն, Աստուած այդպիսի զոհ մի չպիտի պահանջէր մօրմէ մի։»

Այս խօսքը մայրական զգացման վսեմն է։

**3դ.** Վսեմը կարէ՞ լռութեան մէջ ալ պատահիլ.

Պ. Այո՛, վսեմը կարէ լռութեան մէջ ալ լինել, և ինչ ինչ դէպքերու մէջ պերճախօս է քան զխօսս։ Այսպէս է լռութիւնն Այաքսայ, երբ Ոդիսեւս կը պատահի նմա դժոխոց մէջ (յայտ է թէ Ոդիսեւս յաղթած էր Այաքսայ ի կռուին յորում կը յափշտակէին յիրերաց Աքիլլեայ զէնքերն)։

«Դիւցազն Այաս, ձայնեմ աղու, դե՞ռ եւս յիշես ի մահուն
Անջինջ ընդ իս է խէթ ցասմանդ վասն այն զինուց մահաբոյն.

Դիք զայն Յունաց ետուն աղետք. եւ դու նոցուն կուռ պատուար
Անկար, եւ մեք զերբ զԱքիլլեայն ըզմահդ ողբամք հիքաբար.
Մեղ չիք ումեք, Զեւսն ոխերիմ քաջաց Յունաց. քեզ մահ ետ.
Արի, արքայ, ի լուր բանիս, ջնջեա ով քաջ, զոգւոյդ խէթ։
Զայն չետ, գրնայր. ընդ այլ մեռեալս խառնէր յերեբն ընդ հոգիս։

Հոմ. Ոդիս. Հագն. ԺԱ.

*Վսեմ է նաեւ լռութիւնն Դիդէի.*

*Փիւնիկն ի մէջ նոցա Դիդէ արդի վիրօքըն դեգերէր*
*Ի մեծի անտառին. ում տրովացին մերձեալ դիւցազն,*
*Իբրեւ այն ինչ ծանեաւ ըզնա խռայլ մըթին ըստուերաց,*
*... եւ քաղցրագութ սիրով առ նա բարբառեցաւ...*
*Իսկ նա խոժոռ զայրագին ակընկառոյց սիրըընդ երկիր*
*Անդստին ի սկըզբանէ բանիցըն կայր անշարժ ի լուր,*
*Որպէս վէմ որձաքար, որպէս ըզժայռ մարպեսական.*

Իլիակ. Երգ Զ. 453

*Դիդէի, ինչպէս նաեւ Այաքսայ լռութիւնն, զայրու-թի եւ արհամարհանաց վսեմն է։*

*Իդոպոսի լռութիւնն նուազ վսեմ չէ։ Երբ կը տեսնէ սա որ Ցոկաստէէն ունեցած որդիքը կը մօտենան, կ'ըսէ նոցա.*

*«Մosեgkf, nrղեակf իմ, եւ qrկեgkf ձեr...»*
*եւ դժբախտ հայրը չհամարձակիր աւարտել իւր խօսքն։*

*Ա. Հ. Վսեմն սահման ունի՞.*

*Պ. Ինչ որ գեղեցիկ, ինչ որ մեծ, ինչ որ ուժգին է, կարէ առաւել կամ նուազ սահման մի ունենալ, բայց վսեմն սահման չունի, կամ թէ ըսենք, ամենէն բարձրագոյն սահմանն ունի։ Եթէ փորձենք աւելի յափշտակիչ բան մի երեւակայել քան Ակիպլոնի խօսքերն, աւելի ուժգին բան մի քան Տէրարի խօսքերն, և աւելի հոգե-*

*յոյզ խօսք մի քան վշտացեալ մօրն, միշտ ստորին պիտի մնամք և միշտ ի խոնարհ պիտի սողի մեր բացատրութիւնն։*

**5դ.** *Հ. Քանի՞ տեսակ Վսեմ կայ.*

*Պ. Երեք տեսակ Վսեմ կայ. 1) Պատկերի վսեմ* (le Sublime d'image). 2) *Գաղափարի վսեմ* (le Sublime de pensée) 3) *Զգացման վսեմ* (le Sublime de sentiment)։



## I. ՊԱՏԿԵՐԻ ՎՍԵՄ

**1.** *Հ. Ի՞նչ է Պատկերի վսեմն.*

*Պ. Պատկերի վսեմը կը նկարէ մեծ առարկաներ հիացուցիչ մեծութեամբ և ահաւոր գոյներով. զոր օրինակ,*

*Հոմերոս գաղափար մի տալու համար դից երագութեան վերայ որով տեղէ մի կը դիմեն նոքա ուրիշ տեղ, այսպէս կը նկարէ*

Զայս ասաց, չյամեաց Հերա սպիտակաձգին աստուածուհի.
Մըտրակեաց զերիվարսն որ մըտադիր սըլանային
Ընդ երկրի եւ 'նդ աստեղեայ երկնից գընդին միջասահմանս։
Եւ որչափ ինչ արկանէ յակն ոք ընդ օդ լուսաքաղանք՝
Որ նըստեալ ի դիտանոց շուրջ յածիցէ զաչս ընդ ծով լուրթ,
Նոյնչափ վազս առեալ ոստնուն որոտաորոփ դից երիվարք։

**Իլիակ. Ե. 770**

*Հոմերոս աւելի հեռուն երթալով՝ նկարելու համար Հերայի արագութիւնն, կ'ըսէ.*

Որպէս սլանան առն միտք՝ որ ընդ բազում երկիր շրջեալ,
Ապա մտեալ ի խորհուրդ ի հանճարեղ սըրտի իւրում,

Ասա, ասէ, եղէ կամ անդ, եւ ածէ շատ ինչ ըզմտօք .
Նոյն գունակ ճեպով սրացեալ բըռչէր Հերա շըքեղաշուք :

*Վիրգիլիոս, երբ ուզէ նկարել Արամազդայ խօսից ազդեցութիւնը, կ'ըսէ.*

Յայնժամ հայրն ամենակալ, այն որ բնաւից իշխէ իրաց,
Առնու խօսել. եւ ի խօսել նորա՝ լըռէ դիցըն տաճար
Երկնակառոյց, եւ սասանեալ դողայ երկիր խոր ի հիմանց.
Լըռէ եթեր բարձրակամար, ըզկայ առնուն յայնժամ զեփիւռք,
Եւ ծով ծայրածաւալ ի հարթարդակ դառնայ ի դաշտ ։

Իլիակ. Ժ. 106

*Եւ Բագրատունին քանի՛ն վսեմ կը յօրինէ պատկերն յորում յոտն կ'ելնէ Աստուած և կ'երդնու պաշտպանել արդարոյն.*

Յաքռոոյն ադամանդեայ յարեաւ անմահն եւ յոտն եկաց
Հինաւուրցն յաւիտենից աստիքն ալեօքըն պսակեալ .
Գունտ վերին խորան զումբեթ բարձըր զանուն սասանեցաւ ,
Եւ երկիրըս պատուանդան դըղըրդեցաւ 'ղոտիւք նորա.
Ի սըրտմըտեալ երեսացն՝ արփիցըն բոյլք փախեան ի դող :
Տարածեալ ըզթեւըս իւր ընդ քառակողմ անհուն եզերս՝
Բուռն եհար կալաւ զընութիւն անպարագիծ, յանձն իւր երդուաւ,
Երդուաւ յանմահութիւն իւրոյ կենացըն յաւերժից.
«Զօրութիւնք երկնից, ասէ յահեղ բարբառ, վըկայ լերուք» —
Եւ կացին աստեղք անշարժ եւ մըտադիւր ի կայս իւրեանց —
«Դուք վըկայք, ո՛ն եւ ո՛ն՝ կամաց չարին մի տաց յագուրդ,
Ի բազում փորձութեան պաշտպան եղէց ես արդարոյն» ։
Բազմեցաւ, տիեզերաց սիւնք սաղխք երկրի հանդարտեցին։

Հ. Դիւց. Բ. 876

### 2. ԳԱՂԱՓԱՐԻ ՎՍԵՄ

*Հ. Ի՞նչ է Գաղափարի վսեմն.*

*Պ. Գաղափարի վսեմը սովորաբար կը ներկայա-*

Պ. «Այն առաջին յատկութիւնը զոր պարտ է ենթադրել մեծ ճարտարախօսի մի մէջ, այն է զի բնաւ երկրաքարշ եւ գետնասող միտք չունենայ» կ'ըսէ Լոնգինոս։ Ստուգիւ, մարդ մի որ իւր կենաց մէջ միայն գձուձ և վայրաքարշ զգացումներ ունեցած է, չկարէ երբեք յառաջ բերել հրաշալի ինչ և արժանի ապագայից։ Մեծ և զօրաւոր նկարագրի տէր մարդիկ միայն կարեն մեծ ու վսեմ խօսքեր ընել։ Ուստի պարտ է աշակերտին մեծ ճշմարտութեամբք սնուցանել իւր միտքն, ազնիւ և վեհ իրեր միայն ընծայել իւր երեւակայութեան, ազնուական զգացմամբ լնուլ իւր սիրտն, և վսեմն իսկոյն առանց ճգան և արուեստակութեան պիտի հոսի իւր հոգիէն։ Ամենէն վսեմ մատենագիրք ուրիշ գաղտնիք չունեցան երբեք։

Աշ. Հ. Ոճոյ այս երեք տեսակներն այսինքն Պարզն, Միջակն, և Վսեմն բոլորովին իրարմէ բաժանեա՞լ են և բնաւ չկարե՞ն յիրեար խառնուիլ։

Պ. Ոչ. ընդհակառակն, շատ անգամ իրարու հետ խառնուած կը տեսնուին միեւնոյն նիւթին մէջ և միեւնոյն էջին վրայ. նիւթին մասերուն համեմատութեամբ ոճն ալ կարէ բարձրանալ կամ խոնարհիլ, և նոյն իսկ ոճոյ այս ելեւէջը նորա գեղեցկագոյն հրապոյրներէն մին կը կազմէ։ Լաֆոնթէնի առակներն այս մասին շատ օրինակներ կ'ընծայեն մեզ։

## ՀՐԱՀԱՆԳ 1.

Աշակերտը պարտի հետեւեալ հատուածոց պարունակած բուն վսեմներուն տեսակն որոշել.

1

*Էնն էից Մասեացն ի գահ յոսկեճաճանչ ամպ փայլակեալ*
*Ի հարաւ կոյս որոտաց, եւ հրախաղաց տեղաց շանթիս .*
*Եւ ընդ գլուխ իւր զահեղ եւ զկորովի ուլան կամար*
*Շարժեալ, դողացոյց զայրարատեան բարձր բարձունս*
*Եւ զՄոկաց եւ զկորդուաց դըղըրդեցոյց լերինս եւ բլուրս,*
*Եւ անդունդք ընդնունական զերդ կոնք մի ջուր տատանեցաւ ։*

Հ. Դիւց. Ա. 25

2

*«Եկաց, եւ շարժեցաւ երկիր. հայեցաւ, եւ հալեցան ազգք. լերինք խորտակեցան բռնութեամբ, եւ բլուրք յաւիտենականք հալեցան»։*

Ամբակում մարգարէ

3

*Փոթորիկը կը սաստկանայ. կը պեղէ երկրին մինչեւ հին հիմերն, եւ անապատին բոցակէզ աղիքները մինչեւ երկինք կը բարձրացունէ ։*

Տաքսայրեան

4

*Վատաբախտ Թզուկը խորասուզեցաւ խաւարչուտ ջրվէժին փրփուրներուն մէջ, արձակելով առ իս անէծք մի զոր չլսեցի եւ որ իւրեան հետ անդնդոյն մէջ գլորեցաւ ։*

Վ. Հիւկօ

5

*Թատերաբեմին բարձրէն երբ քարավազէ մի հեշտ*

կարկաջմամբ կ'իջնի. ցիր եւ ցան գետնայարկին վրայ՝ ալեակն իմաստից՝ որ կը բերէ բարոյական դաս, կեն-ցաղօգուտ խրատ, գրական եւ իմաստասիրական ճա-շակ, սաս անձնիւր հանդիսական կ'առնու իւր մասն ու կը ծաւալէ իր ընտանեաց ծոցն։

Ռուսինեան

## 6

Քրիստոս մեծ էր. Անոր սիրտը ահաւոր ժայռ մ'էր աշխարհիս արկածներուն մէջտեղը զետեղուած՝ որուն վրայ ամէն ալիք՝ ձախողութիւն եւ յաջողութիւն, հարստութիւն եւ աղքատութիւն կը փշրուէին ու կը խորտակուէին. ինքն անշարժ ու անխախտ կեցած էր։

Ն. Արքեպիս. Վարժապետեան

## 7

Յառաջ քան զլինել ամենայնի, քանի՜ն ամուլ ան-ծին էր ոչինչն, զի չէր այլ ինչ բայց եթէ անխառն ոչինչ։ Այլ դու, Տէր, որ էիր եւ կը բովանդակէիր զամենայն քո կարողութեան մէջ, բացիր միայն քո ձեռն, եւ ցուցիր օրհնութեամբ զերկինս եւ զերկիր։

Պոսիւէ

## 8

Կրօնքն այն ոսկեղէն շղթայն է որ զերկիր կը զօդէ ընդ երկինս։

Պոսիւէ

## 9

Խօսէր էն ինքնաբուն, լռեաց երկինք, երկիր եւ ծով,
Արփիաճեմ կամարաց երկնից գնդլին կացին անիւք,
Եւ պարք լուսաւորաց եւ երաժիշտք դադարեցին։

Հ. Դիւց. Ա. 61

## 10

Բնութիւնը կամ տիեզերք ամբողջութիւնն է այն

*արարածոց՝ զոր ցանեց ցրուեց Աստուած ժամանակի եւ տարածութեան մէջ։*

**Տէգիւէ**

**11**

*Ճշմարտութիւնը դշխոյ մի է՝ որ յաւիտենական գահն է յերկինս, եւ որոյ իշխանութեան աթոռն է ի գիրկս Աստուծոյ։*

**Պոսիւէ**

**12**

*Դարձաւ հիւսիս՝ հիւսիս առջեւն իւր անկաւ.*
*Դարձաւ հարաւ՝ հարաւ չղթայն իւր առաւ.*

**Խ. Արք. Նար-Պէյ** (Ոս. Հայկ.)

**13**

*Ընկերութեան պէտք չունենալու համար, կամ Աստուած լինել պէտք է կամ անասուն։*

**Արիստոտել**

**14**

*Ամէն ինչ Աստուած էր, բաց յԱստուծոյ, եւ աշխարհ զոր Աստուած ստեղծած էր յայտնելու համար իւր կարողութիւնը, կը թուէր կռոց մեհեան մի լինել։*

**Պոսիւէ**

**15**

*Ինչո՞ւ համար արեան մէջ ձայն մի եւ քարին մէջ խօսք մի կայ։*

**Տարգայրիան**

**16**

*կոհակն՝ որ զայն բերաւ, զարհուրած յետս կ՚ընկրկի։*

**Ռասին**

**17**

*Ասաց եւ ակնարկեաց կապոյտ յօնիւքըն Զըրուանեանն.*
*Ցանմահ գլխոյ թագաւորին աստուածեղէն շարժեցան վարսքն,*
*Եւ ըզմեծըն տատանեալ դըղըրդեցոյց զՈլիմպոս։*

**Հոմեր. Իլի. Ա.**

## 18

Ի ԲՐԳԱՁԵԻ ՏԱՊԱՆ

ՅՈՎՀԱՆՆՈՒ

ՈՐԴԻՈՅ ՏԻՒԶԵԱՆ ՅԱԿՈԲԱՅ

*Զի՞նչ իցես դու բոցատիպ բուրգն ընդ երկին ամբարձական....*
*Յակոբայ միտքն եմ Տիւզեանց առ իմս Յոննիկ սըլացական։*

**Հ. Արս. Կ. Բագրատունի**

## 19

*Մարդս փոքրիկ արարած մ'է, բայց ոտքերն երկրիս ամէն կողմն ալ կրնան կոխել. երկու ձեռքովը կրնայ ծայրէ 'ի ծայր աշխարհակալել. սրտին՝ սլատիկ կուգայ տիեզերաց սահմանն. միտքն՝ անսահմանութեան մէջ ճամբայ կը բանայ. հոգին կը տիրէ երկնից. սէրն՝ կու հանէ Արարչին առջեւ, եւ կ'ըսէ. Ահաւասիկ եմ։*

**Հ. Ղ. Ալիշան**

# ՎՍԵՄ ՈՃՈՅ ՕՐԻՆԱԿՆԵՐ

## 1.

### ԱՏԵԱՆ ԴԻՑ

ԵՒ

ՈԳԱՌՆԱԼԻՔ ԱՐԱՄԱԶԴԱՅ

Առաւօտըն քըրքմազգեստ տիեզերաց սփռէր յոլորտս,
Եւ ժողովեաց Արամազդ փայլակնազուարճ ըզդիցն ատեան
Անդր ի գլուխ ի բարձրածայր սարաւանդեալն Ոլիմպոսի։
Նա նոցա ճառ արկանէր, համօրէն դիք դընէին միտ ։
Ունկն ինձ մատուցէք, դիք ամենայն եւ դիցանոյշք,
Զի խօսեցայց յոր ի լանջըս իմ հոգիս յորդորէ զիս.
Մի ոք արդ յաստուածոց, եթէ յիգաց եւ թէ յարուաց,

Հեարեսցի խըզել զպատուէրս . այլ միաձոյլ հաւանութեամբ
Ձեռն յիս տուք, զի վաղագոյն գործոյս ժաման եղեց յամբովկ։
Իսկ զոր ի դից ոք տեսից ժըտեալ ի կամս ինչ ինքնօրէն,
Դիմել երթալ յօգնութիւն տրովաղացւոց կամ աքայեանց,
Հարուածեալ նըշաւակ դարձցի այսրէն նա յՈլիմպոս.
Կամ բուռն հարեալ ընկեցից ի Տարտարոսըն խաւարչուտ,
Քաջ ի բաց, ուր խորխորատ է յանդընդո՛ց սանդարամետս,
Ուր դըրունք են երկաթիք, սեամք եւ դըրանդք պըղընձակուռք,
Ի դըժոխոց այնչափ ի խոր, որչափ երկինք բարձր են յերկրէ,
Անդ ի միտ առցէ, քանի դից բընաւից եմ բըռնագոյն։
Օ՛ն արիք, դիք, ի հանդէս, զի զփորձ առջիք ամենեքեան.
Առէք խաղացուցէք յերկնուստ շըղթայ մի ոսկեղէն,
Բուռն հարեալ յայն դիք բոլոր եւ դիցանոյշք կախեցարուք,
Սակայն ոչ բաւեսջիք դըրդուել բընաւ յերկնից յերկիր
ԶԱրամազդ վեհն հանճարեղ, թէեւ սաստիկ դընիցէք զուն։
Իսկ թէ ես ինչ կամիցիմ յօրդոր փութով ձըգել ի վեր,
Երկրաւ հանդերձ միալուծ, հանդերձ ծովուն քարշեալ հանեմ,
Եւ ապա զՈլիմպեայ գագաթանէն պըրկեմ զշըղթայն,
Եւ կախեսցի բովանդակ տեսիլ ընդ օդս ըզբօսուցիկ:
Այսչափ ես քան ըզդիս եւ քան զմարդիկ եմ վեհագոյն։

Հոմերոս. Իլիակ. Ը. 1

## Ձ. ԼԱՕՈԿՈՆ

Մեծ եւս ինչ անդ եւ առաւել յոյժ ահարկու պատահար
Դիպեալ նիքացըն՝ զանըզգոյշ սիրտըս նոցա խըռովեցոյց.
Լայոկոն վիճակաւ ընտրեալ ի քուրմ Պիսիդոնի,
Ցորժամ եզն ի բագնի զենոյր ըստուար հրապարակաւ,
Ահա վիշապք երկու, (սոսկումն է ինձ պատմել) ի Տենեդեայ
Ընդ ծով հողմախաղաղ վերաբազմեալ ի մըկանունս
Լայնասփիւռ ոլորտիւք զան զուգահետ յեզերըս կոյս
Ուղղաբերձք ի ծուփս անդ լանջք, գեր ի վերոյ քան զալիս
Բաշք հարթուցեալք արիւնաներկք, այլովք մասամբքըն յեցք իծով,
Զանհեթեթ ըզտըրտունսըն պատ ի պատ զալարելով.
Հընչէր սօսափիւն ընդ փըրփրադէզ ալիս ծովուն :
Եւ ահա հասեալ յերկիր՝ բոց ի հրացայտ յարիւնըռուշտ
Սրփունն յաչաց, եւ ըզշըչող շըրթամբք ճապուկ ճօճեն լեզուս:
Խոյս ի տեսոյն տըւաք ի ցուրտ հարեալ սարսափ. նոքա դիմեն
Դէպ ուղիղ ի Լայոկոն, եւ ըզմատաղ նախ ըզ մարմնով

Որդեկացն երկուց պատեալ՝ զանդամս հիւքացըն խածատեն.
Ապա եւ յինքն յարձակեալ, մինչ զէն առեալ գայր յօգնութիւն։
Կապեալ ըզնա ի պարոյրըս մեծամեծըս կաշկանդեն,
Երկիցս ընդ մէջըս նորա, երկիցըս շուրջ զուլամբն արկեալ
Ըզքըրնբըռնոցսըն թեփամորթ, եւ զպարանոց ի վեր ցըցուեալ
Գըլխովին: Նա ըզհանգոյցըս մերթ խըզել ճըգնի ձեռօք,
Վարսակալքըն թաթաւին ի ժահըր թուխ եւ ի շարաւ,
Եւ մերթ սոսկալի բառնայ յաստեղս աղաղակ.
Որպէս պոչիւն զըւարակի փախուցելոյ խոց ի բագնէ,
Ըզդերեւեալն ի հարուած հերքեալ ըզսակր յուլանէն:
Ապա վիշապքըն երկոքին սողոսկելով բարձր ի դըղեակ
Աննըւիրին տրիտոնեան աստուածուհւոյն դիմեալ ի վեր
Առ ոտըս նորա ընդ ասպարաւն ապաւինին ։

**Վիրգ. Ենէ. Բ. 200**

## 3. ԱՌԱՒՕՏՈՒ ԱՂՕԹՔ Ի ԴՐԱԽՏԻՆ

«Քոյ են այս հրաշակերտք, ծընօղ բարւոյն, Ամենակալ,
Քոյ է այս տիեզերացըս յօրինուած չըքնաղագեղ։
Զի՞ սքանչելի դու ինքնին իցես էակդ անճառելի՝
Որ ի վեր քան զերկինս նըստեալ հանգչիս աներեւակ,
Կամ ընդ աղօտ ինչ նըշմարեալ մեզ ի տըրուպս արարածոցդ,
Որ եւ անդր իսկ քաջ ի բաց քան զամենայն մըտաց հասումն
Ըզքո փայլեն բարութիւն եւ զզօրութիւնդ աստուածեղէն։
Որ հըմուտ եւս էք ի բան, որդիք լուսոյ, դուք հրեշտակք,
Խօսեցարուք. քանզի զնա տեսանէք դուք, եւ խումբ առեալ
Բոլորեալ կայք զաթոռովն յերգ պարաւոր հընչմանց յերկինս,
Անգիշեր եւ բերկրալից տուընջեան ի լոյս մեծապայծառ։
Ըզնա յերկրի արարածք փառատրեսցեն համաբոլոր,
Զինքն առաջին, զինք վերջին, զինքըն միջին, զինքն անվախճան։
Դու յաստեղսն ամենագեղ, ցայգոյն յետինդ յուղարկաւոր,
Եթէ ոչ առ աշալուշըն պատշաճիս դու մանաւանդ,
Տըւընջեանն առհաւատչեայդ, որոյ բոլոր քո լուսալիր
Զայգ պըսակէ գեղածիծաղ, ըզնա գովեա ի քում շըրջանդ՝
Ցելս անդ առաւօտուն, յայն նախընծայ ժամ գեղեցիկ։
Արեգակն, աչք եւ հոգի մեծամարմին տիեզերացս,
Եւ դու զնա մեծ ծանիր քան զքեզ, եւ զգովութիւնսըն բարձրացո՛
Ցարշաւանդ յաւէժընթաց, ի վերանալդ յերկինս ի վեր,
Ի բարձունսըդ ժամանել ի միջօրէ, եւ կարճատել։

Դու լուսին, որ հանդիպիս հապ յարեգակն ընդ արեւելս,
Հապ փախչիս անշարժ արփեօքն ի սրավար ճախրըն պընդելովք.
Օ՛ն եւ դուք միւս հրեղեքին մոլորահետ բոցք թափառիկ,
Որ յօրինէք խորհրդաւոր պար իմն անխուլ գեղայարմար,
Երգեցէք զնորին գովեստ որ զլոյս կոչեաց ի խաւարէն։
Օդք եւ տարերք, անդրանիկք ծոցոյ բնութեան չորեքդիմիք,
Ընթացեալք քառաձոյլով ի շըրջանակ յաւերժական,
Ո՛վ դուք բազմակերպիք, որ զբնաւս յօդեալ եւ սնուցանէք,
Ցեղմունքդ անզրաւ՝ փոփոխեսցեն մեծի Հաստչին նոր նոր գովեստ:
Եւ դուք մէգ եւ շամանդաղ, որ յայս կէտ թուխ եւ խըրթներանգք
Ի բըլրոց ուի ծըխաշունչ լըճէն ելեալ վերասլանայք,
Մինչեւ արեւ՝ ոսկեզոյն ներկանէ զծոպսըդ ասրակերպ,
Հապ՝ օ՛ն արիք ի պատիւ տիեզերաց մեծ Արարչին :
Եւ իցէ զի թէ յարկչիք ամպովք զերկին այլագունեալ,
Կամ իցէ թէ արբուսչիք զերկիր պասքեալ ի տեղ տարափ,
Ցեղանելդ եւ յիջանելդ՝ հանչիք յաւէժ զնորա գովեստ ։
Զգովեստ նորա, դուք իքառից ծագաց երկրի շընչեալ հողմունք,
Հընչեցէք մեղմ կամ ուժգին, խոնարհեցէք ըզգլուխսըդ, շոճք ,
Տունկք ազգի ազգի, եւ դուք ճօճեցարուք յերկըրպագել:
Դուքեւս, աղբերք յընթացըս ձեր կարկաչասահք, քաղցր ի մըմունջ
Օ՛ն առեալ ի ձեր խոխոջսըդ պատմեցէք զնորա գովեստ :
Խառնեցէք ըզձայնսդ ի մի, առ հասարակ շունչք կենդանիք,
Թըռչունք որ երգ ի բերան յերկնից ի դըունսըն վերանայք,
Ի ձեր թեւս եւ յօրհնութիւնս բարձր արարէք զնորա գովեստ:
Որ ի ջուրսըն գնաուք, եւ որ յերկիր շըրջիք ի ճեմ,
Որ կոխէք զայն սիգապանծ եւ որ սողիքըդ նուաստաբար,
Վըկայ լերուք զի չըլըռեմ, ոչ վաղորդայն, ոչ ընդ երեկս։
Բըլրոյն զբարբառս իմ կամ հովտին, եւ աղբերաց կամ հովանւոյն
Տամ ի փոխ, եւ եղանակըս ուսուցանեն զնորա գովեստ :
Խընդա, Տէր տիեզերաց, լեր միշտ բարեաց առատաշնորհ.
Եւ թէ գիշեր գումարեաց եւ կամ թաքոյց ինչ չար, ցըրուեա,
Զոր օրինակ ըզխաւարըն պւասիկ արդ հալածէ լոյս » :

**Միլտոն** (Կորուստ դրախտին)

## Դ. ՋՐՀԵՂԵՂ

*Ցարեաւ (Տէր) զայրագին յամենավայր իւր աթոռոյն,*
*Դողացան արարածք. քըստմընեցին երկինք երկիր.*

Եղ ի կառս իւր բոցեղէն, եւ ի մըրրիկ սըրսմըռութեան
Ընթանայր որոտընդոստ հրաշէկ անուոցըն շառաչմամբ
Վառեալ զաջ իւր ահեղ ի վրէժխնդիր ապըստամբացն:
«Շանթընկէց փայլատակամբ նետք յաղեղանց գնային ամպոց,
Խաւարեցան տիեզերք, անձրեւաց զետս հեղին ամպրոպք·
Անարկու սաստ հրամանին՝ որ կայր ունէր ըզծովուն սանձ.
Կոչեաց Տէրն առ ինքըն զայն յաւազակապըն սահմանաց :
Իւր ինքնին ցասմամբ մեծաւ դիմեալ եբաց զերկնից սահանս
Եւ միով տոփեալ ոտամբն յերկրիս հարաւ՝ շեղեաց ըզգօտնեն,
Որ յառաջ իւրով գօտւով կըշիռ հայէր յարփւոյն կամար,
Կային ժամք եւ ժամանակք տեղակալք ընդ տիեզերս :
Թիւրեցաւ եւ 'ւս արտուղի ելեալ անկաւ ի տարակոյս,
Առին ժամք եւ ժամանակք անդ ընթանալ փոխանակաւ:
Ցայն Թինդ ոտին պատառին անդունդք աղբերց ի սիրտ երկրի,
Ելանէ գոչէ ալեօք ծով խաղացեալ կլանել զաշխարհ :
«Զայնեաց յանուանէ յանդընդախոր երկնից վըհէն
Ճեպեցոյց տագնապեցոյց իջոյց զահեղ վիշապ վարսամ,
Սպասաւոր սաստիկ վրիժուց քինախընդիր սըրսմըռելոյն,
Բոցաշունչ հըրդեհիւ ի լոյս տուընջեան երեւելի,
Թօթափեալ զահն եւ ըղհոյն յաչս եւ ի սիրտ պատժապարտից,
Աստաշէկ սըփռեալ տըտուն ի կապուտակ դաշտն ահագին.
Որ հասեալ յամպախաղաց ի պարունակ օդոյս ճօճեալ,
Բորբոքեալ հրատին շաչիւն լուծաւ ի Թօնս հեղեղասաս,
Եւ բոլոր զօգցես երկինք ի ծով յեղեալ հեղաւ յերկիր:
«Ընկլան յանդունդս ամենայն բարձունք լերանց յաւիտենից,
Սարք երկնապիշք դաշտանան, եւ լեռնանան յատակք ծովուց,
Աշտարակք հըզօրաց եւ հովուաց հիւղք, լինին մի հարթ,
Եւ սպիտակ դիքն ուռուցեալ սեաւ ագռաւուց տատանին զէշ :
Հեղձաւ բնութիւն, ծածանէր յերկինս երկիր գունդ մի ջրեղէն,
Երերէր նաւն ի մկանունս վիշապաձայն ջուրց կոհակաց:
Եւ յոր կոյս սահեալ կոծեալ աստանդեցաք զտարւոյն բոլոր
Ի մըրրկածուփ փոթորկաց զազանացեալ ալեացըն Տեառն,
Ցերեւելիս եւ յական տեսանելեաց բաւականի
Համակ յուղխից տեսաք ծագեալ զաստեղս երկնից եւ զարեգակն
Եւ ի նոյն անկեալ յորձանս. երկինք եւ եթ էին ծովափն:
Ագին միայն սուրբ մընաց յաշխարհաւեր բարկութենէն,
Ի հրազէն քերովբէիցըն պատնիշէն զարհուրեալ ջուրց :

**Հ. Արսէն Բագր**, (Հ. Դիւց. Դ. 862)

## 5. ԽՐԱՏ ԱՌ ՀԱՅԿԱԿ

*Ահա վերջին խարոյկն է որ կու մխայ մեր հայրենական հսկմանց վառարանին անկիւնը, ո՜վ Հայկակ․ եւ այս ճաթռտող ու վառվռուն մախրիքս՝ վաղը առտու․ պիտի գտնուին ցուրտ մոխիրք․ եւ այնպէս միայն, մինչեւ որ տարւոյն երեք եղանակներն ալ դառնան լրանան, եւ նորէն գայ չորրորդն։ Եւ երբ նորէն դառնայ գայ այս եղանակս, արդեօք մենք ալ նորէն պիտի գտնե՞նք զիրար՝ մեր վառարանին քով։...*

*Ահա գարնանաբեր լուսնին նորարծարծ ճառագայթները՝ պատուհանաց ապակիներէն ներս ցայտելով, կու հրաւիրեն զմեզ բանալ փականքը, ելնել դուրս, տեսնել նորէն զբնութիւն։ Բնութիւն նորոգեալ, իբրեւ իր ստեղծմանը առաւօտուն, իբրեւ առաջին իրիկունը, յորում նոր վառած լուսնին ճաճանչից տակ՝ կու հանգչէր խաղաղիկ, ինչպէս սպիտակազգեստ մոր մը շղարշից մէջ՝ անդրանիկն անուշաքուն։...*

*Այլ մինչդեռ հոս այսպէս պայծառ ծագէ եւ ծիծաղի լուսնակս, միթէ երկրիս ուրիշ կողմեր ալ չե՞ն թաղուած թաթղուած մթութեան մէջ։ Միթէ երկրիս քրոջ՝ ծիածաւալ ծովուն ծուփ ծուփ ծոցերուն մէջ՝ չկա՞ն ալէկոծ նաւեր՝ որ անդունդէ անդունդ սահելով՝ գոնէ ինկնելու վհին յատակը տեսնելու համար՝ աստղիկ մը, լուսիկ մը կը մուրան վերէն, եւ չեն տեսներ։...*

*Այսպէս է կենաց ընթացքն․ երբեմն լոյս եւ երբեմն մութ․ եւ միշտ հարկ է երթալ, ինչուան որ հասնինք արարչադիր կէտը։ — Սակայն ով որ զերկիրս յատակ մը կու ճանչնայ այն տաճարին՝ որոյ վերնայարկն է երկին, միշտ անխռով կ'երթայ, խաղաղ կ'ապրի։*

*Քանի որ սրտի սիւնակն շիտակ է, եւ հոգւոյն*

Սակայն ինչ ալ որ ըլլայ քու վիճակդ կամ գործդ, յիշէ Հայկակ, որ գործն՝ իրմով չէ՛ ազնիւ կամ մեծ, այլ ընողն է որ կ'ազնուացընէ կու սրբացընէ զգործը։ — Առանց գործողի՝ գործք մեռեալ սոսկ անուն մ'են. մարդս՝ զանունը բան կ'ընէ, բանը գործ, գործը՝ կենդանութիւն, եւ զկենդանութիւնն՝ անմահութիւն։

Յաջողութիւնն շատ հեղ երկնից շնորհք մ'է. բայց առանց երկրիս վրայ աշխատելու՝ վերէն յաջողութիւն չիջնէր։ Մանաւանդ թէ յաջողութիւնն պատրաստ է իբրեւ զարեւ եւ զանձրեւ. բայց եթէ ագարակն սերմանուած չէ՝ ի՞նչ բուսցնեն երկնից շողն ու ցօղն։

Մարդս փոքրիկ արարած մ'է, բայց ոտքերն երկրիս ամեն կողմն ալ կրնան կոխել. երկու ձեռքովը կրնայ ծայրէ 'ի ծայր աշխարհակալել. սրտին՝ պըզտիկ կու գայ տիեզերաց սահմանն. միտքն՝ անսահմանութեան մէջ ճամբայ կու բանայ. հոգին կու տիրէ երկնից. սէրն՝ կու հասնի Արարչին առջեւ, եւ կ'ըսէ. Ահաւասիկ եմ։

Փոքրիկ արարածն այն մարդ՝ մեծ աշխարհք մ'ալ է ինքնին. վասն զի Աստուծոյ դաստակերտ է, Աստուծոյ պատկեր է, թէ եւ աղաւաղեալ. եւ ունի սկզբնատիպին զօրութիւնը։

Արարչագործ մատանց բարձրագոյն կերտուածքն՝ չեն Այրարատեան կատարքն կամ գագաթն Եմաւոնի, այլ ուսերուդ վերեւ կանգնած իմաստից տաճար՝ գըլուխդ է. բարձր եւ բարակ բանուած։ Չկայ ծաղիկ արժանաւոր այդ որոյ պսակ ըլլալու. ոչ ոսկին եւ արծաթ՝ որ հողէ կ'ելնեն, ոչ ծիրանի ծովերէ խայսած բուստ եւ մարգարիտք։ Ո՛հ. գեղեցիկք են մայիսի առաւօտուն ցօղակաթ վարդակարմիր փնջիկքն այլ՝

դալար ճակտի մը բոլորած . սակայն շատ աւելի պայծառ է ամօթխածութեամբ խայծեալ երեսն . եւ աւելի ազնիւ՝ անոր վրայ չարուած աշխատութեան կայլակներն ։

Կենաց կարեւոր 'եւ վայելուչ պիտոյքը լեցընելէն աւելորդ երկրաւոր շահք եւ վաստակք՝ անարգ եւ անիրաւ են այնպիսի գլխոյ մը, որ երկնից եւ հայրենեաց մաքուր իմաստներովը լցուած է ։

Լալով կու ծնանիմք, խաղով կու մեծնամք. աշխատութեամբ պէտք է մարդ ըլլանք. մէկ ձեռքով մեզի նմանեանց օգնեմք. սրտով կենակցինք, պատուով ապրինք, յուսով ծերանամք, գոհութեամբ մեռնիմք. սրբութեամբ աւանդենք միշտ ոգին՝ մեր շունչը. թաղուինք օրհնութեամբ. մնամք 'ի հայրենիս՝ հայրենեաց չափ, եւ յերկինս՝ Աստուծոյ չափ ։ . . .

Ա՛ռ եւ դու ուրեմն, ո՛վ Հայկակ, քու վիճակիդ յարմար աշխատութեան գործիդ, 'վերցո՛ւր յերկինք, օրհնել տուր. եւ աշխատէ ։ Աշխատէ յերկրի ; միտքդ յերկինս, սիրտդ հայրենեացդ վրայ ։

Հ. Գ. Ալիշան. Յուշիկք

## Ե. ՈՂՋՈՅՆ ԱՌ ԲԱՆԱՍՏԵՂԾՍ

Ողջո՜յն ձեզ, ո՛ անմահ եւ փառապսակ ոգիք, որ կ'անուանիք Վիազա, Հոմեր, Եսայի, Վիրգիլ, Անթար, Ֆիրդուզի, Տանդ, Շէյքսփիր, Քամօէնս, Թասսօ, Կէօթէ, Շիլլէր, Պայրըն, Միցքիէվիչ, Լամարթին, Պէշիկթաշլեան, Ալիշան, Հիւկօ, ողջո՜յն ձեզ, բանաստեղծք ամէն աշխարհաց, եւ ամեն ժամանակաց, ո՛ գեղեցկին սիրահարք, ո՛ գաղափարականին արուեստաւորք. ձեր քնարաց՝ սխրացմամբ ունկնդրած է մարդկութիւն եւ պիտի ունկնդրէ յաւէտ ցորչափ գեղեցիկն պաշտուի երկրի վերայ, ցորչափ մարդն, ա-

րեւածաղիկ բարոյական, դառնայ բնազդմամբ առ արեգակն կատարելութեան։ Երկինք իւր համայն խորհուրդներով, բնութիւն իւր համայն սքանչելիքներով եւ մարդկային սիրտն իւր համայն ծալքերով եւ խղձերով ձեր տաղից մէջ է։ Մանուկն ձեր տաղերով կ'օրօրի, ձեր տաղերով կ'ուսնի աղօթել, հայրն ձեր քերթուածներով իւր ընտանեկան խորանին սրբութիւնն ու հրապոյրն կը յաւելու եւ կը մեկնէ, ծերն ձեր գեղօններուն մէջ կը գտնէ իւր յիշատակներն, իւր սփոփանքն եւ, գերեզմանին անդունդին վերայ ծռած, յաւիտենական աշխարհին յոյսն ու զմայլմունքըն։ Ձեր մէն մի ժպիտն, հառաչն, արտօսրն մի երգ է որ կը փթթի ծաղկատիպ, կամ կը բուրէ խնկահոտ եւ կամ կը բիւրեղանայ մարգարտափայլ։ Ի՛նչ ոգիներ էք դուք որ մենէ վեր կ'ապրիք, եւ երբ ձեր նայուածքն յերկիր խոնարհեցնէք՝ ճառագայթներ կը թօթափին անտի. կ'անցնիք, եւ ձեր քայլեր լուսատիպ կը դրոշմին միջոցին մէջ. կ'անցնիք լոյս սփռելով ուր մութ կայր, կայծ վառելով ուր սառ կայր, երգ նետելով ուր լռութիւն կայր։ Միշտ նոր են էջերն զոր մի աստուածային գրչով գրեցիք. ամեն սերունդ կուգայ իւր ճակատն կքել մտախոհ նոցա վերայ, կամ գիշերուան լուսնոյն հետ հսկելով կամ ընկողմանած մի ականակիտ աղբեր եզրն, եւ այդ էջերուն մէջ, խորին իբր զբնութիւն, միշտ նորանոր իմաստներ կը գտնէ, մանաւանդ թէ ձեզմով լուսագոյն կը հասկնայ զբնութիւն, երբ ձեր մատեան ի ձեռին կամ ի մտի — զի ամեն սերունդ ի բերան կ'ուսանի զձեզ — ման կուգայ լերանց, ծովուն կամ դաշտաց վերայ։ Երկնային բնազդմամբ մի ոգեւորեալ մեղուներ, կը քաղէք հիւթն ամէն գեղեցիկ իրաց, եւ երբ այն կը կերպարանափոխի կը կազմի ձեր հոգ-

ւոյն կրակով ու բոյրով՝ ի՜նչ մեղր է հեշտահամ եւ անապակ, որով ամէն դար կուգայ սնանիլ, հեշտանա՜լ։ Նիւթոյն գձձութեանց, վշտաց մրրիկներուն, անիրաւութեան յաղթանակներուն, իմաստակութեան մոլորութիւններուն մէջ հոգին կը սիրէ ապաստանիլ այն աշխարհն, յորում կը բնակիք եւ յորում ամէն ինչ մեծ է, լայնատարր եւ լուսաւոր, եւ սիրտն ազատ շունչ կ'առնու, եւ ոգն՝ զոր կը ծծէ՝ բուրումներ ունի որք այս աշխարհէն չգան։ Թէ երբ Լամարթին կոչուիք եւ քնարերգէք բնութիւնն ու Աստուած, սէր եւ անմահութիւն, թէ երբ Միլտոն լինիք եւ վիպասանէք երանութեան դրախտի մի գրգանքն, առաջին ամոլից տարփանքն եւ երկնից փառքերն, թէ երբ Շէյքսփիր լինիք եւ մի դիւթական տեսարանի վերայ պատկերէք բարւոյն ու չարին, նիւթոյն ու ոգւոյն կռիւն որ կեանք կ'անուանի, թէ երբ Յոբնաղ լինիք եւ մի երգիծաբան հրաշէկ գրչով դատապարտութեան խարանն դրոշմէք թագապսակ մոլութեանց ճակտին վերայ, թէ երբ Մարտիալէս լինիք, եւ մի քանի փախստեայ տողերու մէջ մի կայծ ծրարէք, եւ թէ երբ Հիւկօ լինիք, հանճա՛ր բազմաձեւ, եւ մի սրտի մէջ զգայք ամենայնի սիրտն եւ մի մտքի մէջ խորհիք ամենայնի խորհուրդն եւ մի անծայրածիր երեւակայութեան մէջ ցոլացնէք տեսանելի եւ անտես աշխարհաց պատկերն, եւ մերթ քնարերգուին քնարն, մերթ վիպասանին բամբիռն, մերթ Սոփոկլեայ սոլերքն եւ մերթ երգիծաբանին խարազանն առնուք ի կիր եւ լինիք միշտ մեծ, միշտ վսեմ, դուք, ո՛վ երկնազդեցիկ ոգիներ, դուք միշտ ճշմարտութեան եւ արդարութեան քահանայներն էք, գեղեցկին կրօնն ունիք, մարդկութեան մարգարէներն էք։

Ռ. Ց. Պէրպէրեան (Գեղեցիկն եւ Գեղարուեստք)

## Դ. ՀԱՅ ՄԱՅՐ ՄԸ

O l'amour d'une mère!

VICTOR HUGO

### Ա.

Ձըմրան տըխուր այն գիշեր
Սեփ սեւ մըթնած էր երկին.
Ցուրտ մէկ քամի կը փըչէր,
Եւ սառ պատեր էր գետին։
Ծառոց ճիւղեր մերկ ու չոր՝
Անպատըսպար դողալով,
Ճառաչէին սըգաւոր
Սոսկումն ի սիրտ ազդելով։

Ձըմրան տըխուր այն գիշեր
Երկնի ծագեալ էր արեւ.
Ձըմրան տըխուր այն գիշեր
Հրեշտակ՝ մարդիկ՝ թեւ ի թեւ,
ԶԱստուածորդւոյն տօնէին
Վայրաբերել ի յաշխարհ,
Փարեալ ի գիրկ սուրբ Կուսին՝
Իբր ըզմանո՛ւկ մի խոնարհ։

Ձըմրան տըխուր այն գիշեր
Տըներ բոլոր մութ էին,
Բայց տաճարին լուսանցեր
Բոցաճաճանչ շողային։
Բոլոր տըներ լուռ կային
Իբրեւ մէյմէկ գերեզման,
Բայց բարձրագոչ թընդային
Յարկք տաճարին աստուածեան։

Հաւատացեալք այն գիշեր
Իբրու զաշխարհ մոռնալով,

Ամէն հասակ էր վազեր
Երկնից մանկան մըսրին քով։
Կէօք զըւարթնոց երգակից
Աղաղակեն ովսաննայ.
Եւ այլք հովուաց դասակից՝
Սըրտե՛ր բերեր են յընծայ։

Ձըմրան տըխուր այն գիշեր
Ամենուն սիրտ էր ուրախ.
Փայլ շընորհաց երկնաբեր
Մերժեալ էր ցաւն ու ախվախ։
Կարծես յայն սուրբ տաճարին
Զերկրի սփոփմանց անապակ
Մահկանացուք ըղձային
Զոգեպարար ըղձաչակ։

Բ

Այլ հրեշտակային երգոց զուգահեռ.
Եւ եկեղեցւոյն օրհնից բերկրաւէտ՝
Նաեւ վըշտալից ձայն մը այն գիշեր
Հիւղի մը մէջէն կը թըռչէր ի վեր։

Ձայն մըն էր՝ մոռցվա՛ծ բոլոր մարդկանցմէն...
Բայց ո՛չ ընդհատ քաղցր ալէլուներէն
Եւ զայն ձա՛յն բեկբեկ կըլըսէր յերկնից
Այն՝ որ միակ յոյսն է կոտրած սըրտից։

Որ խընկոց անո՛ւշ անուշ բուրմունքէն՝
Որք ամպ ամպ ծըխին ի սուրբ Սեղանէն,
Առաւել սիրով յեթերց հոտոտի
Ի դա՛ռըն զըմուռ թշուառ մէկ սըրտի։

Թըշուա՛ռ մէկ սըրտի մըրմունջ էր եւ այն,
Մօր մը հառաչա՛նք էր կողկողաձայն,

Որ քըսան տարուան ի ծաղիկն հասակ
Այրի մընացած էր որդւով միակ։

Արդ եւ այն մատաղ գեղաբոյս որդին,
Մօրը բոլոր գանձ եւ յոյս սըրտեկին,
Դեռ հազիւ գարունն ըսկըսեր կենաց՝
Ընկած էր գինչ վարդ ի չունչ փոթորկաց։

Մանկանն օրօցքին քով ծունկ ընկած մայր,
Պաղեալ անդամոց նորա չունչ կուտայր.
Փափկիկ նորա թաթ ի ծոցին ծածկէր,
Ջերմիկ արցունքովն ըզնա ողողէր։

Թէ չունչ զիւր համայն լինէր կարելի
Սըրտէն անցընել յայն սիրտ փարելի,
Ո՛չ, ոչ դանդաղէր մայրն այն տալ զոգին,
Շա՛տ էր թէ ապրէր խանդակաթ որդին։

Ո՛հ, ինչո՞ւ զաւկին՝ մայր մը բարեխնամ
Կարող է տալ կեանք միայն մէ՛կ անգամ...
Ինչո՞ւ տաք չընչուն՝ տաք արցունքներու
Չըտըւաւ Աստուած ոյժ կենդանատու...—

Մէյ մ՚ալ անդինէն մօրն այն ցաւագին
Ցականջ հասաւ թինդ ժամու զանգակին.
Կարծես հրեշտակին լըսէր ըզհրաւէր,
Արթընցա՜ւ... ցաւէն ըզտօն մոռցե՜լ էր։

Ծածկեց ըզճակատն ի քող սըգապատ,
Ցանձնեց լուր մանկիկն Աջոյն երկնաւատ,
Եւ դողդոջ քայլիցն ուժ տալով յետին՝
Հասաւ ու մըտաւ սուրբ Եկեղեցին։

Տեսաւ որ երկիր ու երկին բոլոր
Երանի՜ կու տան Մօր մը երկնաւոր.
Ինքն ալ ցանկացաւ ասել բան մ՚ուրախ,
Խե՜ղճ մայր, ու սըրտէն թըռաւ սուր մէկ ա՜խ...*



«Մայր երկնաւոր, քեզմէ լաւ ո՞վ կրնայ՝ ո՞վ
Մօր մը սրտին ըզգալ ցաւեր ու խորով...
Ո՞վ քեզմէ զատ կարող է, Մա՛յր որդեսէր,
Չորցընել մօր մ'արցունքներ։

«Որ դո՛ւ այլ նո՛յն վիշտ ու վէրքեր քաշեցիր.
Որ դո՛ւ այլ նոյն լեղի արցունք թափեցիր...
Որ դո՛ւ այլ քո Որդւոյդ տեսար մահն ի խաչ...
Մօր մը լըսէ դո՛ւն հառաչ։

«Քո մայրենի սրտիդ խօսի մօ՛ր մը սիրտ,
Քաշածներէդ իմ քաշածներս ա՛ռ ի միտ.
Դու՝ որ Որդւոյդ վերայ ա՛յնչափ դողայիր,
'Ի Աստուծո՛յ մը մայր էիր։

«Ըղքեզ՝ զւարթունք կ'ըսփոփէին մըտերիմ,
Ես ի՞նչ ընեմ, խե՜ղճ կինս որ մէ՛կն ալ չ'ունիմ.
Մէ՛կն այլ չունիմ՝ բայց զերկնատուր այս որդիս,
Եւ մահ փութայ զըրկե՛լ զիս։

«Մի՛, ո՜հ Մա՛յր, մի՛. դու որ գիտես ի՞նչ անբաւ
Մօր մը սրտին որդւոյն իւր մահ կուտայ ցաւ.
Քո մայրութի՛ւնդ ինձ բարեխօս ու ցաւեր,
Մանկիկս ինէ մի՛ բաժներ։

«Եթէ անմահ Որդիդ վըճռած է յերկին՝
Որ հրեշտակաց հետ քովս առնու զիմ որդին,
Ո՛վ մայր, դո՛ւ այլ ողորմէ՜ մօր մը վերայ,
Զաւկիս հետ չո՛ւնչս այլ երթայ։

«Թէ չըկրցայ սովորեցնել ըղքայլել,
Գէթ ցուցընեմ նըմա յերկինըս թըռչել.
Հո՛ն քու անուանդ յօրհներգութեանց ալէլու՝
Աւելնամք հեզ ձայնք երկու»։

Դ.

Ա՛յսպէս հառաչեց մայրն այն վըշտակիր,
Եւ արցունքներով ողողեց զերկիր.
Եւ երբ բաւական հեծեց ու լացաւ,
Տըխուր էր եկած՝ ըսփոփեալ դարձաւ: —

Աղօ՛թք . . . ոհ, ի՛նչպէս հէգ մահկանացուի
Դու ըսքանչելի պարգեւ ես երկնի.
Ո՞ր ցաւ է սրտի զոր ոչ բըժըշկես,
Ո՛ր բեռն այնչափ ծանր զոր ոչ թեթեւես:

Այո՛, ի դահէն մինչ յորբն ու աղքատ՝
Ի քո գիրկ դիմեն գըթած եւ առատ.
Եւ երբ Թըշուառին յոյս կըտրի ամէն,
Ո՛վ Աղօթք, յետին ես դու ապաւէն: —

Ե

Ձըմրան տըխուր այն գիշեր
Անցաւ, եւ նոր ծագեց օր.
Օրն այն ձըմրան տըխուր չէր,
Արեւ փայլէր անսովոր:

Ձի երկրէ ճիչ մը պակսած,
Ու մայրենի մէկ հառաչ,
Բայց էր յերկին՝ աւելցած
Երկու ոգւոց քաղցր աւաչ: —

Իրիկուան դէմ վառեցան
Մեռելոց մութ լապտերներ.
Ու հանգըստեան լըռվեցան
Շարականներ, սաղմոսներ:

Եկեղեցւոյն առաջեւ
Սեւ մէկ դագաղ անցուցին,
Երկու զուարթունք թեւ ի թեւ
Անուշ հոն քուն լինէին:

*Մէկ մէկու գիրկ պըլըլված*
*Ելեր էին դէմ մահուան,*
*Մահ նոյն սըրով էր կըտրած*
*Վարդն ու կոկոն անբաժան։*

*Ո՛հ, անբաժա՛ն իրարմէ*
*Երկուքն ի նո՛յն հանգչին հող.*
*Զերկուսն այլ նո՛յն խոտ ծածկէ,*
*Երկուքն այլ նո՛յն կ'ըմպեն ցող։*

**Խ. Գալֆայեան. Նար-Պէյ** (Ստ. Հայկ.)

## 8. ԱՆՁՆԱՍՊԱՆՈՒԹԻՒՆ

*Դադրի՞լ կուզես ապրելէ։ Բայց կ'ուզէի գիտնալ թէ սկսա՞ծ ես ապրելու։ Ի՞նչ, միթէ բան չգործելո՞ւ համար երկրի վերայ կը գտնուիս։ Երկինք զոյգ ընդ կենացչտուա՞ քեզ գործ մի ի կատարել։ Եթէ նախ քան զերեկոյն կատարեցիր քու աշխատութիւնն ցերեկեայ, հանգիր օրուան մնացեալ ժամերուն մէջ, բայց տեսնենք գործդ։ Ի՞նչ պատասխան պատրաստած ես տալ այն գերագոյն դատաւորին որ պիտի պահանջէ ի քէն ժամանակիդ հաշիւն։ Թշուառական, գտիր ինձ այն արդարն որ պարծենայ թէ բաւական ապրած է, որպէս զի ուսանիմ ի նմանէ թէ ո՞րպէս պարտ է կրել զկեանս՝ զայն թողլու իրաւունք ունենալու համար։*

*Դու մարդկութեան յոռութիւնները կը հաշուես եւ կ'ըսես, կեանքը չարիք մի է։ Բայց տես, փնտռէ իբաց կարգին մէջ, զի գտնես բարիք մի որ խառնուած չլինի չարութեամբ։ Հա՞րկ է ուրեմն ըսել թէ չիք ինչ բարի յաշխարհի, եւ կարե՞ս միթէ չփոթել զայն որ չար է ի բնէ, ընդ այնմ որ պատահմամբ եւեթ է չար։ Մարդոյ կեանքը չէ այլ ինչ եթէ ոչ մարմին մի յորմէ ընդ հուպ պիտի ապատի։ Բայց գործունեայ եւ բարոյական կեանքը՝ որ պարտի ներգործել իւր բոլոր է-*

ութեան վրայ, իր կամաց գործադրութեան մէջ կը կայանայ։ Կեանքը չարիք մի է այն չարին համար որ կը յաջողի, եւ բարիք՝ պարկեշտ ու աղքատ մարդոյն համար. քան զի ոչ թէ վաղանցուկ փոփոխութիւն մի՝ այլ իր առարկային հետ ունեցած յարաբերութիւնն է, որ զկեանս բարի կամ չար կը ցուցունէ։

Կը ձանձրանաս դու ապրելէ եւ կ՚ըսես, կեանքը չարիք մի է։ Վաղ կամ անագան պիտի մխիթարուիս եւ պիտի ըսես. կեանքը բարիք մի է։ Աւելի ճշմարիտ պիտի ըսես առանց լաւագոյն եւս խորհելու, զի բաց ի քէն ոչինչ պիտի փոխուի։ Փոխուէ ուրեմն յօրէ յայսմանէ, եւ քանզի քու հոգւոյդ յոռի տրամադրութեան մէջ է զի չար է ամէն ինչ, ուղղէ խառնակեցիկ ցանկութիւններդ, եւ մի այրեր տունն՝ զայն կարգադրելու նեղութիւնը չկրելու համար։

Ի՞նչ են տասն, քսան, երեսուն տարիներ անմահ էակի մի համար։ Վիշտ եւ հաճոյք կ՚անցնին ստուերի նման, կեանքը կը սահի ի միում վայրկենի, նա ըստ ինքեան չէ ինչ. իր արժէքն իր գործածութենէն կախեալ է։ Բարին եւեթ՝ զոր կ՚ընէ ոք, կայ եւ մնայ եւ այնու միայն կեանքն է ինչ։ Մի՛ ըսեր ուրեմն թէ՝ քեզ համար՝ ապրիլն մի չարիք է, որովհետեւ ի քէն միայն կախումն ունի զի մի բարիք լինի այն, եւ, եթէ ապրած լինելը մի չարիք է, մի ըսեր նաեւ թէ ներուած է քեզ մեռանել. զի միեւնոյն բանն է ըսել թէ ներելի է քեզ մարդ չլինել, թէ ներելի է քեզ ստամբակիլ գոյութեանդ արարչին դէմ եւ ճակատագիրդ խաբել։

Անձնասպանութիւնը գողացիկ եւ ամօթալից մահ մի է, գողութիւն մի է մարդկային ազգէն։ Ձեւ թողած զմարդիկ, հատո նոցա զոր ինչ նոքա ըրին քեզ համար. — Այլ արժէք մի չունիմ ես. . . . . անօգուտ

եմ յաչխարհի....— Ո՛վ առօրեայ իմաստասէր, մի՛թէ չգիտե՞ս թէ երկրի վերայ չկարես քայլ մի առնուլ առանց գտնելու պարտք մի ի լնուլ, եւ թէ ամէն մարդ, այնու զի կայ՝ օգտակար է մարդկութեան։

Յակամիտ երիտասարդ, եթէ սրտիդ խորն առաքինութեան լաւն ինչ զգացում մի կայ, եկ, զի ուսուցանեմ քեզ սիրել զկեանս: Ամէն անգամ որ փորձուիս մեկնիլ ի կենաց, ըսէ յանձին քում «Չեւ մեռած բարի գործ մի եւս գործեմ։» Յետոյ գնա փընտռել չքաւոր մի՝ կարօտ օգնութեան, դժբախտ մի՝ կարօտ մխիթարութեան, հարստահարեալ մի՝ կարօտ պաշտպանութեան։ Եթէ այս մտածութիւնն զքեզ պահպանէ այսօր, պիտի պահպանէ վաղիւ եւս, միւս օր եւս; եւ բովանդակ կենացդ մէջ։

**Ժան-Ժագ Ռուսոյ**

## 9. ԱՆԱՍՏՈՒԱԾԻՆ ՄԱՀՆ

Անաստուածին կ'իմացունեն թէ պարտի մեռնիլ։ Այս վերջին վայրկենին մէջ ի՞նչ կ'անցնի նորա մտքէն։ Կուզեմ որ, գրեթէ անկարելի բան, խեղդած լինի խղճին խայթն, եւ բնաւ տարակոյս մի չահաբեկէ իւր թերեհաւատութիւնը. սակայն, սորա համար, ազատ է ի սոսկմանց եւ յանձկութեանց։ Հարցէք նմա որ տեսած է զանաստուածն իւր մահուան անկողնոյն մէջ, ոչ թէ բռնուած այն սաստիկ հիւանդութիւններէն մէկէն որոց արդիւնքն է դադրեցունել հոգւոյն պաշտօններն, այլ տակաւին այնպիսի վիճակի մի մէջ յորում կատարելապէս կը վայելէ իւր բարոյական կարողութիւններն, եւ գիտէ թէ ընդ հուպ հոգին պիտի փչէ։ Կենդանատիպ պատկերն անոր զոր պիտի կորուսանէ, կը գրաւէ օրհասականին միտքն։ Նա յարաբերութիւններ եւ սովորութիւններ ունէր, հազարաւոր կապե-

րով որք արդ միահաղոյն կը լուծուին, միացած էր կենաց. խորտակումն ահաւոր որ յանկարծ անջատելով զհոգին այն ամէն բաներէն զորս կլլած կաթոգին էր, կը թողու զայն միայնակ եւ կարեվէր՝ անծայրածիր դատարկութեան մը մէջ: Այն անյատակ անդունդն ուր պիտի իջնէ նա, այն յոգնատխուր միայնութիւնն, այն յաւիտենական լռութիւնն, այն ցրտասարսուռ քօղն, այն գիշերն անարշալոյս, այն զրկումն յամէն բարեաց, հանդերձ երջանկութեան մը անընկճելի տենչանօք. այս ամէն գաղափարներն եւ այլք բազումք ոչ նուազ թախծալիցք, կը ծանրանան այս եղկելի հոգւոյն վերայ, վեր ի վայր կը յուզեն զայն, կը կեղեքեն եւ չարալլուկ տանջել կ'սկսին զայն: Այլ ի՞նչ ըսենք գիւր վիճակէն, եթէ դոյզն տարակոյս մը ունենայ այն սկզբանց վերայ զորս ինքն իրեն ստեղծած էր: Ի՞նչպէս կարելի է նկարել այն անձկութիւններն, առ անյուսութեան կիսահեղձիկ վիշտերն, եւ այն ահարեկ նայուածքն որ ամենուրեք ուրիշ բանի չհանդիպիր բայց միայն անմխիթար անցելոյ մը եւ անյոյս ապագայի մը: Յայնժամ ոչ եւս կը տարակուսի զոչընչէն. ընդ հակառակն զայն կը կոչէ իւր բոլոր իղձերովն, եւ ընդ վայր կը կոչէ զայն. յաւիտենականութիւնն եւեթ կը պատասխանէ նմա: Զգենք վարագոյրն այս քստմնելի տեսարանին մնացած մասին վերայ, եւ դժոխոց թողունք իւր գաղտնիքն:

**Լամընէ**

## 10. ԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆ

Գիտակցութիւնը մեր հոգւոյն անմահութեան երկրորդ ապացոյց մը կ'ընծայէ: Անցնիւր մարդ իւր սըրտին մէջ ատեան մը ունի ուր կ'սկսի նախ ինքզինքը դատել, սպասելով որ գերագոյն դատաւորը վճիռն

հաստատէ։ Եթէ մոլութիւնը մի միայն մեր բնական կազմուածին արդիւնքն է, ո՜ւստի է այն արհաւիրքն որ մեղապարտ երջանկութեան մի օրերը կը պղտորէ։ Ի՞ր խղճին խայթն այնքան ահաւոր է, զի մարդիկ յաճախ նախամեծար կը համարին ծուժկալել աղքատութեան եւ համայն խստութեանց առաքինութեան, քան ապօրինաւոր բարիք ստանալ։ Առ իմէ՞ ձայն մի կայ յարեան եւ բարբառ մի՛ ի վիմի։ Վագրն յօշ յօշ կը պատառէ զիւր որսն եւ կը ննջէ. մարդը մարդասպան կը լինի, եւ անքուն կը հսկէ։ Ամայի վայրեր կը փնտրէ, եւ սակայն ամայութիւնը զայն կ՚ահաբեկէ. գերեզմանաց շուրջը կը յածի եւ սակայն կը զարհուրի ի գերեզմանաց։ Անհանգիստ եւ յարաշրջիկ է իւր նայուածքն, եւ խնջոյից տաճարին մէջ չիշխեր յառել որմոյն, առ ահի զի մի գուցէ մահագուշակ գրեր տեսնէ անդ։ Գոգցես իւր բոլոր զգայարանքները լաւագոյն եւս կը տանջեն զինքն. գիշերոյ մէջ սպառնական լոյսեր կը տեսնէ. նախճրի հոտէն շրջապատուած է յարաժամ. Թոյնի համ գտնել կը կարծէ իւր ձեռամբ իսկ պատրաստած կերակրոց մէջ. իւր ականջը, տարօրինակ նրբութեամբ մի, աղմուկ կը գտնէ անդ ուր այլք լռութիւն կը դանեն, եւ, զիւր բարեկամը գրկած ժամանակ, նորա հանդերձից տակ պահուած դաշոյն մի զգալ կը կարծէ։

Տաքապրիան

ՎԵՐՋ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԵՒ ՄԱՍՆԱՒՈՐ ՑԱՑԿՈՒԹԵԱՆՑ

ՈՃՈՑ

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

# ՎՐԻՊԱԿՔ

| էջ | տող | սխալ | ուղիղ |
|---|---|---|---|
| 11 | 14 | ... պէտք քաջ ըմբռնել... | պէտք է քաջ ըմբռնել... |
| 19 | 15 | մասնագիր | պատմագիր |
| 23 | 11 | (կը պակսի) | ոստրուն |
| 33 | 8 | յարաբերութեան | արբեցութեան |
| 35 | 9 | կը վարձատրէ բարիներն | կը վա՛րձատրէ բարիները |
| 35 | 23 | կանանչութիւնն ունի —, | կանանչութիւնն ունի , |
| 38 | 12 | զոր կ'ընենք | կը մեկնիմք |
| 42 | 16 | (կը պակսի) | քահանայն — վերայ յեցեալ |
| 46 | 17 | պատուհաներ | պատուհասներ |
| 50 | 15 | առագաստ բացին, անցագնոյն տեղեկացայ... | առագաստ բացին , տոմսակ մի գնեցի , անցագնոյն տեղեկացայ... |
| 62 | 20 | հոմանի | հոմանիչ |
| 65 | 14 | բառերով | բառերով |
| 75 | 25 | մասեանները | մատեանները |
| 76 | 14 | զմամոնայն | զամենայն |
| 77 | 16 | երջանկութիւնը | երջանկութիւնը |
| 81 | 5 | առաջին տօները բնութեան զարթման նշանն են. ծառերը կը... | առաջին տօները բնութեան զարթման նշանն են. ամենայն ինչ կը վերածնի. ծառերը կը... |
| 82 | 13 | բարեկամութիւնը զանոնք միացոյց | բարեկամութիւնը զանոնք միացոյց |
| 84 | 18 | հնարք | հնարք |
| 85 | 13 | երիտասարդութեան | երիտասարդութեան |

| | | | |
|---|---|---|---|
| 86 | 16 | խօսք | խօսք |
| 86 | 30 | ումանք | ումանք |
| 87 | 30 | (կը պակսի) | Հի՛մ բարիներն պիտի չօգնեն իրերաց՝ բարիք գործելու համար։ |
| 92 | 5 | երգ մը դարձած (կը խառնուի... | երգ մը դարձած — (կը խառնուի... |
| 205 | 29 | Մանուկ | Մամուկ |
| 215 | 1 | պարտի լինել միշտ վսեմ | պարտին լինել միշտ վսեմ |
| 217 | 18 | թեւք | հեւք |
| 226 | 22 | եւ ինչ ինչ դէպքերու | եւ այս լռութիւնն ինչ ինչ դէպքերու... |
| 227 | 16 | Իդոպոսի | Իդիպոսի |



ԸՆԴ ՄԱՍԼՈՒ

---

# ԳՐԱԳԻՏՈՒԹԻՒՆ
# ՏԵՍԱԿԱՆ ԵՒ ԳՈՐԾՆԱԿԱՆ

*ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ*

## ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

معارف عمومیه نظارت جلیله‌سنك فی ۲٦ رجب ۳۰۱ و ۱۰ مایس
۳۰۰ تاریخلی و ۲۰۱ نومرولی رخصتنامه‌سیله طبع اولنمشدر

Գին 10 ղուրուշ